ՊՐՈԼԵՏԱՐՆԵՐ ԲՈԼՈՐ ԵՐԿՐՆԵՐԻ, ՄԻԱՑԵ՛Ք

№ 10
ՀՈԿՏԵՄԲԵՐ
1963 Թ.

# ԼԵՆԻՆՅԱՆ ՈՒՂԻՈՎ

ՀԱՅԱՍՏԱՆԻ ԿՈՄՈՒՆԻՍՏԱԿԱՆ ՊԱՐՏԻԱՅԻ ԿԵՆՏԿՈՄԻ
ՏԵՍԱԿԱՆ—ՔԱՂԱՔԱԿԱՆ ԱՄՍԱԳԻՐ

ЛЕНИНЯН УГИОВ — ТЕОРЕТИЧЕСКИЙ И ПОЛИТИЧЕСКИЙ ЖУРНАЛ ЦК КП АРМЕНИИ

★

ՀՐԱՏԱՐԱԿՈՒԹՅԱՆ
42-ՐԴ
ՏԱՐԻ

## ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ

СОДЕРЖАНИЕ





# ԲԱՐՁՐԱՑՆԵԼ ԵՏ ՄՆԱՑՈՂ ԿՈԼՏՆՏԵՍՈՒԹՅՈՒՆՆԵՐԻ ՈՒ ՍՈՎԽՈԶՆԵՐԻ ԷԿՈՆՈՄԻԿԱՆ

Իրագործելով կոմունիզմի կառուցման հոյակապ ծրագիրը, Սովետական Միության կոմունիստական պարտիան մեծ աշխատանք է կատարում զարգացող հզոր արդյունաբերության հետ միասին առաջ մղելու նաև գյուղատնտեսությունը, ապահովելու ժողովրդական տնտեսության բոլոր ճյուղերի աննախընթաց ու համաչափ վերելքը:

Գյուղատնտեսությունը համարելով կոմունիստական շինարարության հարվածային ճակատը, վերջին տարիներս պարտիան, նրա լենինյան Կենտրոնական Կոմիտեն մի շարք նոր, արմատական միջոցառումներ իրականացրին կոլտնտեսություններն ու սովխոզները կազմակերպչորեն և տնտեսապես ամրապնդելու, նրանց էկոնոմիկան համակողմանիորեն զարգացնելու ուղղությամբ: Այնպիսի կարևոր միջոցառումներ, ինչպիսիք են՝ գյուղի աշխատավորների նյութական շահագրգռվածության բարձրացումը, ՄՏ կայանների վերակազմումը, գյուղատնտեսական արտադրության պլանավորման նոր, առավել արդյունավետ կարգի սահմանումը, ավելի քան 42 միլիոն հեկտար խամ ու խոպան հողերի յուրացումը, կոլտնտեսություններին ու սովխոզներին պետության կողմից տրված նյութական մեծ օգնությունը, գյուղատնտեսության ղեկավարման նոր օրգանների ստեղծումը և այլն, հնարավորություն տվին զարգացնելու գյուղատնտեսությունը և մեծ չափերով ավելացնելու բուսաբուծական ու անասնաբուծական մթերքների արտադրությունը: Այդ ուղղությամբ մեր ձեռք բերած հաջողություններն ակնառու են և քաջ հայտնի սովետական բոլոր մարդկանց, որոնք տարեցտարի ավելի շատ գյուղատնտեսական մթերքներ են գնում:

Տնտեսությունը նոր մեթոդներով ղեկավարելու, գյուղում կատարվող քաղաքական ու կազմակերպական աշխատանքն ուժեղացնելու շնորհիվ լայն ծավալ է ստացել կոլտնտեսականների ու կոլտնտեսուհիների, սովխոզների բանվորների ու բանվորուհիների, գյուղատնտեսության մասնագետների ստեղծագործական նախաձեռնությունը: Նրանցից շատ-շատերը հրաշալի օրինակներ են ցույց տալիս արտադրության մեջ գիտության նվաճումներն ու առաջավոր փորձը հետևողականորեն արմատավորելու, աշխատանքի նկատմամբ կոմունիստական վերաբերմունք ցուցաբերելու և հանրային տնտեսության եկամտաբերությունն ավելացնելու բնագավառում: Գյուղի աշխատավորների եռանդուն գործունեության շնորհիվ, անգամ անբարենպաստ կլիմայական պայմաններում, հանրային տնտեսությունը վերելք է ապրում: Այսպես, 1963 թվականի առաջին կիսամյակում, 1962 թվականի առաջին կիսամյակի համեմատությամբ, ռեսպուբլիկայի կոլտնտեսություններում ու սովխոզներում խոշոր եղջերավոր անասունների գլխաքանակն ավելացել է 5 տոկոսով (այդ

թվում կովերինը՝ 4 տոկոսով), այծերինն ու ոչխարներինը՝ 7, թռչուններինը՝ 9, ․ւեկ կովի կաթնատվությունը՝ 6 տոկոսով: Անասունների խնամքը բարելավելու և անկումները կրճատելու միջոցով այդ նույն ժամանակամիջոցում մսի արտադրությունը (սպանդանոցային քաշով) ավելացել է 6, կաթինն ու ձվինը՝ 8 և բրդինը՝ 9 տոկոսով:

Բազմաթիվ են այն առաջավոր կոլտնտեսություններն ու սովխոզները, որոնք հմտորեն օգտագործելով եղած հնարավորություններն ու ռեզերվները, ավելի բարձր ցուցանիշների են հասել: Այդպիսի տնտեսություններն ունեն համակողմանիորեն զարգացած էկոնոմիկա, արտադրում ու երկրին տալիս են ավելի շատ գյուղատնտեսական մթերքներ, ավելացնում են հանրային տնտեսության եկամտաբերությունը և դրանով իսկ բարձրացնում աշխատավորների կենսամակարդակը: Սակայն դրանց կողքին դեռևս կան տնտեսապես ետ մնացող կոլտնտեսություններ ու սովխոզներ, որոնք վատ են օգտագործում եղած հնարավորությունները, տարիներ շարունակ դոփում են տեղում և քիչ արտադրանք տալիս:

Ինչո՞ւմն է բանը: Ինչո՞ւ մեր որոշ կոլտնտեսություններ ու սովխոզներ տևականորեն ետ են մնում:

Որոշ տնտեսությունների ետ մնալու գլխավոր պատճառն այն է, որ պարտիական կազմակերպությունները դեռևս լրջորեն չեն զբաղվել կադրերի ընտրության հարցով և այդ տնտեսությունների ղեկավարներ են թողել այնպիսի մարդկանց, որոնք չեն կարողանում հմտորեն վարել հանրային բազմաճյուղ տնտեսությունը, անպատասխանատվություն են ցուցաբերում հանձնարարված գործի նկատմամբ, վատ են կազմակերպում աշխատանքը, չեն ապահովում հողի, տեխնիկայի ռացիոնալ օգտագործումը, խիստ պայքար չեն ծավալում լոդրերի, ձրիակերների, աշխատանքային կարգապահությունը ոտնահարողների դեմ: Օգտվելով անհրաժեշտ պահանջկոտության ու հսկողության բացակայությունից, նման ղեկավարները հաշտվում են ստեղծված վիճակի հետ, ձախողում գյուղատնտեսական կուլտուրաների բերքատվության և անասնաբուծության մթերատվության բարձրացման պլանային առաջադրանքների կատարումը:

Գորիսի արտադրական վարչության 50 կոլտնտեսությունից 15-ը երկար ժամանակ է, որ ետ են մնում: Ետ մնացած կոլտնտեսությունների նախագահներից Գ. Գաբիրովը (Վերին Գիրաթաղ), Ա. Ավագյանը (Արավուս), Գ. Գաբրիելյանը (Դավիթ-բեկ), Գ. Աթոյանը (Սևաքար) և ուրիշներ չեն ապահովում տնտեսության պատշաճ ղեկավարումը, վատ են կատարում իրենց պարտականությունը, սակայն շարունակում են մնալ ղեկավար աշխատանքում:

Փոխանակ այդպիսի ղեկավարներին աշխատանքից հանելու և տնտեսապես ետ մնացող կոլտնտեսություններն ու սովխոզները մասնագետ, կազմակերպչական ունակություններով օժտված լավագույն ղեկավար կադրերով ապահովելու, որոշ արտադրական վարչություններ ու պարտիական կոմիտեներ բավարարվում են ետ մնացող տնտեսությունների մասին ընդհանուր, երբեմն էլ մեկը մյուսին կրկնող որոշումներ ընդունելով: Բայց միայն որոշումներով գործը գլուխ չի գա: Մինչև վերջերս Արտաշատի արտադրական վարչության Բամբակավանի կոլտնտեսության մասին քիչ որոշումներ չէին ընդունվում, դրանից բացի արտադրական վարչության ու պարտիական կոմիտեի ղեկավար ընկերները հաճախ լինում էին կոլտնտեսությունում, ցուցումներ տալիս, պահանջներ ներկայացնում: Սակայն այդ բոլորից հետո էլ տնտեսությունը շարունակում էր ետ մնալ, որովհետև չուներ բանիմաց նախագահ: Վիճակը փոխվեց միայն այն ժամանակ, երբ կոլտնտեսության նախա-



Ընկ. Սարգսյանը սերտ կապ
գահ ընտրվեց գյուղատնտես Կարո Սարգսյանը:
ստեղծեց կոլտնտեսականների հետ, ճիշտ կոմպլեկտավորեց բրիգադաների կազմը.
հավասար պահանջկոտություն ցուցաբերեց բոլորի նկատմամբ. նա խիստ միջոցներ
ներ ձեռք առավ անկարգապահների ու լոդրերի նկատմամբ, բոլոր կոլտնտեսա-
կաններին ընդգրկեց ակտիվ աշխատանքի, արմատապես բարելավեց այգիների ու
բանջարանոցների մշակումը, հանրային անասունների խնամքն ու կերակրումը:
Եվ բնավ էլ պատահական չէ, որ տարիներ շարունակ ետ մնացող այս կոլտնտե-
սությունն արդեն բռնել է վերելքի ուղին—ընթացիկ տարվա առաջին կիսամյա-
կում կատարել ու գերակատարել է անասնաբուծական մթերքների արտադրության
ու վաճառքի պլանը, աճեցրել խաղողի ու բանջարեղենի լավ բերք: Հատկանշական
է, որ պարտիական կոմիտեն այս տարի ոչ մի անգամ չի անդրադարձել Բամ-
բակավանի կոլտնտեսության գործունեությանը և որևէ առիթով նրա հետ կապված
հարց չի քննարկել: Դրան հարկ չի եղել, որովհետև բանիմաց ու գործունյա նոր
նախագահը պատշաճ կարգ ու կանոն է մտցրել տնտեսության մեջ և սկսել բարձ-
րացնել նրա էկոնոմիկան:

Այսպիսի օրինակներ կարելի է էլի բերել ու ցույց տալ, թե ինչպես կադրերի
և, առանձնապես, ղեկավար կադրերի ճիշտ ընտրության շնորհիվ առաջներում ետ
մնացող շատ կոլտնտեսություններ ու սովխոզներ հավասարվել կամ արդեն հավա-
սարվում են առաջավորներին:

Չնայած այս հանրահայտ իրողությանը, առանձին արտադրական վարչու-
թյուններ և պարտիական կոմիտեներ դեռևս լրջորեն չեն զբաղվում կադրերի ընտ-
րության հարցով: Այլապես ինչով բացատրել, որ ետ մնացող մի շարք կոլտնտե-
սությունների նախագահների պոստում շարունակում են մնալ այնպիսի մարդիկ,
որ չունենալով անգամ միջնակարգ կրթություն, օժտված չեն կազմակերպչի կա-
րողությամբ ու տնտեսվարման հմտությամբ: Նման մարդիկ չեն կարողանում կոլեկ-
տիվին համախմբել, աշխատանքը ճիշտ կազմակերպել: Նրանք տնտեսությունը ղե-
կավարում են ընդհանրապես, առանց համապատասխան հաշիվներ անելու, ամբողջ
տնտեսության և նրա առանձին ճյուղերի գործունեության արդյունքները վերլուծելու
և այնպիսի միջոցառումների դիմելու, որոնց իրականացումը հնարավորություն
կտա ապահովելու առաջադրված խնդիրների կատարումը:

Որոշ կոլտնտեսություններում ու սովխոզներում անմխիթար վիճակ գոյություն
ունի նաև գյուղատնտեսական մասնագետ կադրերի օգտագործման և, առանձնա-
պես, ֆերմաների վարիչների, բրիգադավարների ու հաշվային աշխատողների ընտ-
րության գործում: Մինչդեռ գյուղում եղած միջնակարգ կրթությամբ, աշխատանքի
եռանդով լեցուն բազմաթիվ երիտասարդ կադրերի առկայության պայմաններում կա-
րելի է թարմացնել կոլտնտեսությունների ու սովխոզների միջին հրամանատարա-
կան կազմը, աշխատանքում իրենց չարդարացնող ֆերմաների վարիչներին ու բրի-
գադավարներին փոխարինել կրթված երիտասարդներով և պրակտիկ լավագույն
աշխատողներով, որոնք կապահովեն հանձնարարված գործի հաջող կատարումը:

Պարտիական կոմիտեների, արտադրական վարչությունների ու սկզբնական
պարտիական կազմակերպությունների խնդիրն է՝ վճռականորեն բարելավել կադ-
րերի ընտրության, տեղաբաշխման ու դաստիարակության գործը, աշխատանքում
իրենց չարդարացնող մարդկանց փոխարինել պատրաստված, փորձված ու կազ-
մակերպական ունակություններով օժտված երիտասարդ կադրերով, որոնք ունեն
նորի զգացում և կարող են առաջ մղել ետ մնացող տեղամասերը:

ՍՄԿԿ Կենտկոմի նոյեմբերյան պլենումի որոշումներից և տնտեսության պար-

տիական ղեկավարությունը վերակառուցելուց հետո գյուղական արտադրական վարչություններն ու պարտիական կոմիտեները քիչ գործ չեն կատարել գյուղատնտեսության հետագա զարգացման ուղղությամբ: Նշելով նրանց դրական աշխատանքը, միաժամանակ չի կարելի չտեսնել, որ նրանք դեռևս խոր չեն թափանցում ամեն մի առանձին վերցրած կոլտնտեսության ու սովխոզի գործունեության մեջ, տեղական ընկերներին ինչպես հարկն է չեն օգնում եղած ռեզերվները հայտաբերելու ու գործի դնելու, աշխատանքի կազմակերպումն ու վարձատրությունը կարգավորելու և նման մի շարք միջոցառումներ իրականացնելու, որը հնարավորություն կտա բարձրացնել ետ մնացող տնտեսությունների էկոնոմիկան: Այս տեսակետից վիճակը բարվոք չէ Ղուկասյանի արտադրական վարչությունում, ուր կոլտնտեսությունների գրեթե մեկ երրորդը երկար ժամանակ է, ինչ ետ է մնում: Դա պետք է լուրջ անհանգստություն պատճառի արտադրական վարչությանն ու պարտիական կոմիտեին. նրանք պետք է վճռական միջոցառումների դիմեն ու ետ մնացող կոլտնտեսություններին գործնական օգնություն ցույց տան՝ առաջավորներին հասցնելու համար:

Սպիտակի, Նոյեմբերյանի, Ապարանի և մյուս շրջանների տնտեսապես ետ մնացող կոլտնտեսությունների բազայի վրա ստեղծվել են սովխոզներ: Սովխոզներն ապահովված են տեխնիկայով, տրանսպորտով, մասնագետ կադրերով. նրանց բանվորներն ու բանվորուհիները պետությունից ստանում են աշխատավարձ, օգտվում բանվորներին տրվող բոլոր արտոնություններից: Չնայած այդ և մյուս պայմաններին, շատ սովխոզներ, մասնավորապես անասնապահական սովխոզները, վնասով են փակում տնտեսական տարին: Միայն Իջևանի սովխոզը անցած տնտեսական տարին փակել է 76,6 հազար ռուբլի վնասով և այդ այն դեպքում, երբ նույնանման հողակլիմայական պայմաններում գտնվող Կույբիշևի սովխոզը տվել է 102,0 հազար ռուբլու օգուտ: Իջևանի սովխոզի տված վնասը հետևանք է այն բանի, որ տնտեսության մեջ վատ են օգտագործվում ներքին ռեզերվները, խիստ հսկողություն չի սահմանված նյութական ու դրամական միջոցների ծախսման վրա, մեծ են անարտադրողական ծախսերը, լավ հիմքերի վրա չեն դրված աշխատանքի կազմակերպումն ու վարձատրությունը, դեռևս բարձր է արտադրանքի ինքնարժեքը:

Ինչպես կարելի է տնտեսության էկոնոմիկան բարձրացնել, երբ Գորիսի արտադրական վարչության սովխոզները 1962 թ. յուրաքանչյուր հեկտարից ստացել են միայն 6,5, Եղեգնաձորի վարչության՝ 4,9, իսկ Սևանի վարչության Հանքավանի սովխոզը՝ 3,94 ցենտներ հացահատիկ: Հանքավանի սովխոզում մեկ ցենտներ հացահատիկի ինքնարժեքը պլանով նախատեսված 7 ռ. 75 կ. փոխարեն կազմել է 37 ռ. 48 կ.: Չափազանց բարձր է եղել նաև կարտոֆիլի, բազմամյա և բնական խոտի, ինչպես նաև մսի, կաթի ու բրդի ինքնարժեքը:

Սովխոզներում լուրջ թերություններ կան, հատկապես, անասնաբուծության մթերատվության բարձրացման գործում: Կերի անբավարար պաշարի ու հոտի վատ խնամքի հետևանքով 1962 թ. տեղի են ունեցել մեծ թվով անասունների անկում և հարկադիր մորթ, իսկ ֆուրաժային մեկ կովի կաթնատվությունը նախորդ երկու տարվա համեմատությամբ փոխանակ ավելանալու, պակասել է: Այդ նույն թվականին սովխոզները թերակատարել են կաթի, մսի և ձվի արտադրության պլանը: Արտադրության պլանի թերակատարումը, ինչ խոսք, բացասաբար է անդրադարձել նրանց էկոնոմիկայի զարգացման վրա:

Ռեսպուբլիկայի ետ մնացող կոլտնտեսություններում ու սովխոզներում դեռևս լուրջ ուշադրություն չի հատկացվում անասնաբուծության կերի սեփական բազա



ստեղծելու, եղած կերային ռեսուրսների համաձայն անասունների գլխաքանակի ավելացումը պլանավորելու, քիչ կաթ տվող կովերը բարձրակիթ կովերով փոխարինելու, հանրային հոտում նրանց տեսակարար կշիռն ավելացնելու և նման մի շարք կարևոր հարցերի վրա, առանց որի հնարավոր չէ բարձրացնել անասնաբուծության մթերատվությունն ու ֆերմաների եկամտաբերությունը: Հանդուրժելի չէ, երբ առանձին տնտեսություններ տարիներ շարունակ անասնաբուծությունից վնաս են կրում և այդ վնասը ծածկում դաշտավարության հաշվին: Մինչդեռ, ինչպես ցույց է տալիս առաջավոր տնտեսությունների փորձը, եթե 100 հեկտար հողատարածության դիմաց պահեն անհրաժեշտ քանակությամբ անասուններ, նրանց ռացիոնալ կերակրեն, լավ կազմակերպեն հոտի վերարտադրությունն ու բուծումը, վերջ տան անկումներին ու անարտադրողական ծախսերին, անասնաբուծությունից կստացվի մեծ եկամուտ և կապահովվի հանրային տնտեսության այդ կարևոր ու վճռական ճյուղի հետագա զարգացումը:

Որոշ կոլտնտեսություններում ու սովխոզներում արտադրական պլանի թերակատարման և էկոնոմիկայի ետ մնալու գլխավոր պատճառներից մեկն այն է, որ գործը չի կազմակերպված այնպես, որպեսզի բոլոր կոլտնտեսականները, սովխոզների բանվորներն ու ծառայողները ընդգրկվեն ակտիվ աշխատանքի և շահագրգռված լինեն առաջին հերթին բարձրացնելու հանրային տնտեսության եկամուտները: Տեղական առանձին կազմակերպությունների և սովետական օրգանների թողտվությամբ սովխոզների ոչ քիչ թվով աշխատողներ, որոնք օգտվում են բանվորների ու ծառայողների արտոնություններից, արտադրության մեջ չեն արդարացնում իրենց, հասարակական հանրօգուտ գործ չեն կատարում և գլխավորապես զբաղվում են իրենց անհատական տնտեսության ուռճացումով: Այդպիսի մարդիկ ունեն տնամերձ հողամաս, մի քանի խոշոր եղջերավոր անասուն, երբեմն 20-ից ավելի ոչխարներ, խոզեր, բազմաթիվ թռչուններ և այլն: Նրանք իրենց ժամանակի զգալի մասը հատկացնում են տնամերձ հողամասի մշակմանը և սովխոզի կերի հաշվին պահում անձնական անասունները:

Մեր ամսագրի այս համարում տպագրված իր հոդվածում առանձին կոլտնտեսություններից նման փաստեր է բերում Գորիսի արտադրական վարչության պարտիական կոմիտեի քարտուղար Քր. Պետրոսյանը: Նա նշում է, թե ինչպես Շաբադինի, Գիրաթաղի, Փիրլուիի, Գեղիի կոլտնտեսականներն իրենց անձնական տնտեսության մեջ 1,5—3 անգամ ավելի շատ անասուններ ունեն, քան կոլտնտեսությունները: Մի՞թե պարզ չէ, որ այդպիսի պայմաններում ընդհանուրի, ամբողջ ժողովրդի շահերը խիստ տուժում են, որ հանրային տնտեսության հաշվին առանձին մարդիկ ուռճացնում են իրենց անձնական տնտեսությունը և դադարում կոլտնտեսությունում կամ սովխոզում սիստեմատիկ ու արդյունավետ աշխատանք կատարելուց: Այդպիսի անձինք իրենց գործելակերպով անհատական շահը բարձր են դասում ընդհանուրի շահից, որը միանգամայն անհարիր է մեր հասարակության բնույթին և բացասաբար է անդրադառնում մարդկանց կոմունիստական դաստիարակության վրա:

Գյուղական պարտիական կոմիտեները, արտադրական վարչությունները, բոլոր պարտիական, արհմիութենական, կոմերիտական կազմակերպությունները, սովետական օրգանները, մեր ողջ աշխատավորները պետք է հետևողականորեն պայքար մղեն այդ աննորմալ երևույթի դեմ, հասարակական պարսավանքի ենթարկեն և խիստ պատժեն այն մարդկանց, որոնք հասարակական հանրօգուտ աշխատանք չեն կատարում, զբաղվում են սպեկուլյացիայով, պետության ու ազնիվ աշխատող-

ների հաշվին ուռճացնում են իրենց անձնական տնտեսությունը: Դրա հետ միասին պարտիական կազմակերպությունները պետք է ուժեղացնեն կոլտնտեսականների, սովխոզների բանվորների ու ծառայողների շրջանում կատարվող քաղաքական-դաստիարակչական աշխատանքը, նրանց լայնորեն պարզաբանեն և կյանքից վերցրած կոնկրետ օրինակներով ցույց տան, որ յուրաքանչյուրի բարեկեցության հիմքը, հիմնական աղբյուրը, հանրային տնտեսությունն է, որի էկոնոմիկայի զարգացմանն ու եկամտաբերության ավելացմանը պետք է ծառայեցնել բոլորի ջանքերը:

Տնտեսապես ետ մնացող կոլտնտեսությունների ու սովխոզների էկոնոմիկայի բարձրացման գործում քիչ անելիքներ չունեն գյուղատնտեսական մթերքների արտադրության և մթերումների մինիստրությունն ու Հայգյուղտնտտեխնիկան: Նրանք պետք է գործուն օգնություն ցույց տան ետ մնացող տնտեսություններին, նրանց ապահովեն նյութատեխնիկական համապատասխան բազայով, աջակցեն ճշտորեն կատարելու գյուղատնտեսության պլանավորումն ու մասնագիտացումը, արդյունավետ օգտագործելու հողն ու տեխնիկան, աշխատանքի վերջնական արդյունքների նկատմամբ բարձրացնելու կոլտնտեսությունների ու սովխոզների բանվորների նյութական շահագրգռվածությունը, ամենուրեք տարածելու ու արմատավորելու առաջավոր փորձը:

Ռուսաստանի ֆեդերացիայի կոլտնտեսային-սովխոզային արտադրական վարչությունների պետերի ու պարտիական կոմիտեների քարտուղարների խորհրդակցությունում արտասանած իր ճառում Ն. Ս. Խրուշչովը նշեց, որ «ՄԵՆՔ ՈՒՆԵՆՔ ԿԱԴՐԵՐ, ՈՒՆԵՆՔ ՏԵԽՆԻԿԱ, ԲԱՎԱՐԱՐ ԹՎՈՎ ՓՈՐՁՎԱԾ ՄԱՍՆԱԳԵՏՆԵՐ: ԱՅԴՊԻՍԻ ՊԱՅՄԱՆՆԵՐՈՒՄ ԱՅԼԵՎՍ ՉԻ ԿԱՐԵԼԻ ՀԱՇՏՎԵԼ ՈՐՈՇ ԿՈԼՏՆՏԵՍՈՒԹՅՈՒՆՆԵՐԻ ԵՎ ՍՈՎԽՈԶՆԵՐԻ ԵՏ ՄՆԱԼՈՒ ՀԵՏ»: Դա ամբողջապես վերաբերում է նաև մեր ռեսպուբլիկային, ուր բոլոր պայմաններն ու հնարավորությունները կան ետ մնացող կոլտնտեսություններն ու սովխոզները առաջավորներին հասցնելու: Մնում է, որ գյուղական պարտիական կոմիտեները, արտադրական վարչություններն ու սկզբնական պարտիական կազմակերպությունները հմտորեն օգտագործեն եղած հնարավորությունները, հանձնարարված գործի նկատմամբ բարձրացնեն տնտեսությունների ղեկավարների, յուրաքանչյուր աշխատողի պատասխանատվությունը, քաղաքական ու կազմակերպական աշխատանքի միջոցով բոլոր կոլտնտեսականներին, սովխոզների բանվորներին, ծառայողներին ու գյուղատնտեսության մասնագետներին մոբիլիզացնեն՝ բարձրացնելու ետ մնացող կոլտնտեսությունների ու սովխոզների էկոնոմիկան: Դա պատվավոր ու պատասխանատու գործ է, որին պետք է ձեռնամուխ լինել հենց այժմվանից: Այդ գործի հաջողության համար շատ մեծ նշանակություն ունի ընթացիկ տնտեսական տարվա հաջող ավարտումը, որը պայմաններ կստեղծի գյուղատնտեսության հետագա վերելքի համար:

Ձեռնամուխ լինելով ետ մնացող կոլտնտեսությունների ու սովխոզների էկոնոմիկայի բարձրացմանը, պետք է միշտ հիշել Ն. Ս. Խրուշչովի ցուցումն այն մասին, որ «ԳՅՈՒՂԱՏՆՏԵՍՈՒԹՅԱՆ ԱՐՏԱԴՐՈՒԹՅԱՆ ՀԵՏԱԳԱ ՎԵՐԵԼՔՆ ԱՄԲՈՂՋ ՊԱՐՏԻԱՅԻ, ԱՄԲՈՂՋ ԺՈՂՈՎՐԴԻ ԳՈՐԾՆ Է: ԴԱ ԿՈՄՈՒՆԻԶՄԻ ԱՅՆ ՍԱՀՄԱՆԱԳԻԾՆ Է, ՈՐԸ ՄԵՆՔ ՊԵՏՔ Է ԳՐԱՎԵՆՔ ՍՈՎԵՏԱԿԱՆ ԻՐԱՎԱԿԱՐԳԻ ԱՄԲՈՂՋ ՀԶՈՐՈՒԹՅԱՄԲ»:

---

# ՀՈԴՎԱԾՆԵՐ

## ԼԵՆԻՆԻԶՄՆ ՈՒ ԴՈԳՄԱՏԻԶՄԸ ՀԱԿՈՏՆՅԱՆԵՐ ԵՆ

Կ. ՈՒԴՈՒՄՅԱՆ

Պատմական գիտությունների թեկնածու

*ՀԱՐՅՈՒՐԱՄՅԱԿՆԵՐԻ ընթացքում մարդկային միտքը երկնել է բազում ուսմունքներ ու թեորիաներ: Սակայն դրանք տեղի են տվել ժամանակի հետ ունեցած մրցավազքում, դուրս չեն եկել մի քանի ժողովուրդների կամ ազգերի շրջանակներից, ընդգրկել են միայն մարդկային որոշ հատվածներ: Միակ ուսմունքը, որի մեծագույն կենսունակությունը և վիթխարի դինամիկ ուժը բռնել է կյանքի ու ժամանակի բազմակողմանի քննությունը, տիրապետել է հարյուր միլիոնավոր մարդկանց մըտքերին ու դարձել հսկայական նյութական ուժ, մարքսիզմ-լենինիզմն է՝ աշխատանքի մարդկանց շահերի գիտական արտահայտությունը, նրանց գաղափարախոսությունը: Լինելով խիստ գիտականության և հետևողական ռևոլյուցիոնականության ներդաշնակ միացում, մարքսիզմ-լենինիզմը բացահայտում է մարդկային պատմության զարգացման օրինաչափությունները և օգնում մեզ կոմունիստական հասարակություն կառուցելու գործում:*

*Իր ամբողջ էությամբ ու բնույթով այն ստեղծագործական է և, ինչպես ամեն մի գիտություն, կանգնած չէ և չի կարող դոփել միևնույն տեղում: Հասարակության առաջընթացին համապատասխան նա զարգանում է, կատարելագործվում, հարստանում միջազգային կոմունիստական ու բանվորական շարժման և ազգային-ազատագրական պայքարի փորձով, սոցիալիստական ու կոմունիստական հասարակարգ կառուցող միլիոնավոր աշխատավորների պատմական ստեղծագործությամբ: Նրա առանձին դրույթներն ու եզրակացությունները ժամանակի ընթացքում փոխվում են պատմական նոր պայմաններին, նոր իրադրությանը, կյանքի կողմից առաջադրված նոր պահանջներին համապատասխան:*

*Մարքսիզմ-լենինիզմին խորապես խորթ են ամեն մի դոգմատիզմ, թալմուդիզմ, պահպանողականություն, վերացականություն: Ամեն գույնի ու տեսակի օպորտունիստական խմորվածքի դեմ մղվող անհաշտ պայքարում պաշտպանելով գիտական կոմունիզմի գաղափարախոսության անաղարտությունը,*

Մարքսը, Էնգելսը, Լենինը իրենց ուսմունքը միշտ դիտել են որպես գործողության ուղեցույց և ոչ երբեք մեկընդմիշտ սահմանած դոգմաների ու ֆորմուլաների հավատո հանգանակ։ Մարքսը դրել է անկյունաքարերն այն գիտության, նշում էր Վ. Ի. Լենինը, որ մենք պետք է առաջ շարժենք բոլոր ուղղություններով, եթե չենք ուզում կյանքից ետ մնալ։

Մարքսիստական-լենինյան ռևոլյուցիոն թեորիայի հենքը կազմում է դիալեկտիկական մատերիալիզմը, որը ելնում է թեորիայի ու պրակտիկայի, գիտության ու կյանքի միասնությունից, երևույթները դիտում է պատմականորեն, փոխադարձ կապի և պայմանավորվածության մեջ։

1916 թվականի նոյեմբերի 30-ին Ինեսա Արմանդին գրած նամակում Վ. Ի. Լենինը նշել է. «Մարքսիզմի ամբողջ ոգին, նրա ամբողջ սիստեմը պահանջում է, որ յուրաքանչյուր դրույթ դիտվի միայն (а) պատմականորեն. (в) միայն մյուսների կապակցությամբ. (у) միայն պատմության կոնկրետ փորձի կապակցությամբ» (Վ. Ի. Լենին, Երկեր, հ. 35, էջ 265)։

Սովետական Միության կոմունիստական պարտիան իր ստեղծման առաջին իսկ օրից բարձր պարզել ստեղծագործական մարքսիզմ-լենինիզմի դրոշը։ Նրա ամբողջ պրակտիկ քաղաքականությունը ստեղծագործական մարքսիզմ-լենինիզմն է գործողության մեջ։

Արդի էպոխայում մարքս-լենինյան տեսության ստեղծագործական զարգացման դասական օրինակ են ՍՄԿՊ XX, XXI և XXII համագումարների փաստաթղթերը, պարտիայի նոր ծրագիրը, որն ընդունվեց որպես մեր դարաշրջանի կոմունիստական պարտիայի մանիֆեստ։ Պարտիայի նոր ծրագիրը ժամանակակից ռևոլյուցիոն տեսական մտքի բարձրագույն նվաճումն է։

Այսօր, երբ Չինաստանի կոմունիստական պարտիայի ղեկավարները առանց խորանալու արդի դարաշրջանի կոնկրետ պայմանների ու առանձնահատկությունների մեջ, առանց հաշվի առնելու դասակարգային ուժերի ռեալ հարաբերակցությունը, ձեռնածություն են անում Մարքսի, Էնգելսի, Լենինի առանձին աշխատություններից դուրս կորզած ցիտատներով, դոգմատիզմի դեմ լենինիզմի մղած պայքարի փորձը առավել հրատապ նշանակություն է ստանում։



ՌԵՎՈԼՅՈՒՑԻՈՆ իր գործունեության հենց սկզբից Վ. Ի. Լենինը անողոք կռիվ մղեց դոգմատիզմի, մտքի կարծրության, թալմուդիզմի ամեն մի դրսևորման դեմ։ Եվ որպես դոգմատիկական սխալներից խուսափելու երաշխիք նա պահանջում էր խորապես ուսումնասիրել ռեալ իրականությունը, որն ավելի հարուստ է, բազմերանգ, քան ամեն մի ուսմունք։

Չոր է, բարեկա՛մ, ամեն տեսություն,
Կյանքի ծառն է միշտ դալար և սիրուն։

Գյոթեի այս տողերը նա հաճախ էր օգտագործում։ Դեռևս «Ի՞նչ են «ժողովրդի բարեկամները» և ինչպե՞ս են նրանք մարտնչում սոցիալ-դեմոկրատների դեմ» նշանավոր աշխատության մեջ Վ. Ի. Լենինը նշում էր, որ դոգմատիզմ չի կարող լինել այնտեղ, որտեղ դոկտրինայի գերագույն ու միակ չա-



փանիշը համարվում է նրա համապատասխանությունը հասարակական-տնտեսական զարգացման իրական պրոցեսին։

Մեկ այլ առիթով նա գրել է. «...պաշտպանել մարքսիզմի հին որոշումները, նշանակում է հավատարիմ լինել տառին և ոչ թե ուսմունքի ոգուն, նշանակում է հիշողությամբ կրկնել նախկին եզրակացությունները, չկարողանալով օգտվել մարքսիստական հետազոտության պրիոմներից՝ քաղաքական նոր կացությունը վերլուծելու համար» (Երկեր, հ. 6, էջ 583)։

Վ. Ի. Լենինը ոչ միայն տեսության, այլև պրակտիկ քաղաքական գործունեության մեջ վճռականորեն հանդես էր գալիս տակտիկական կանոնների շաբլոնացման, մեխանիկական հավասարեցման ու նույնացման դեմ, պահանջում էր տիրապետել ռևոլյուցիոն կռվի բոլոր ձևերին, սովորել առավելագույն արագությամբ մի ձևը լրացնել մյուսով, խուսանավել, թշնամիների միջև եղած հակասությունը օգտագործել հնարավոր (թեկուզ և ժամանակավոր, անհաստատ, երերուն, պայմանական) դաշնակիցների հետ համաձայնություն և կոմպրոմիսներ կնքել։

Հայտնի է, թե փետրվարյան ռևոլյուցիայի հաղթանակից հետո Ռուսաստանում ինչպիսի բարդ և յուրօրինակ իրադրություն ստեղծվեց։ Անհրաժեշտ էր մեծագույն խորաթափանցություն, կոնկրետ վիճակի ճշգրիտ վերլուծություն, դասակարգային ուժերի հարաբերակցության ռեալ գնահատում։ «Այժմ անհրաժեշտ է յուրացնել այն անվիճելի ճշմարտությունը,— գրում էր Վ. Ի. Լենինը 1917 թ. «Նամակներ տակտիկայի մասին» հոդվածում,— որ մարքսիստը պետք է հաշվի առնի կենդանի կյանքը, իրականության ճշգրիտ փաստերը և ոչ թե շարունակի կառչել երեկվա թեորիային, որը, ինչպես և ամեն մի թեորիա, լավագույն դեպքում միայն նշում է հիմնականը, ընդհանուրը, միայն մոտենում է կյանքի բարդությունն ընդգրկելուն (Երկեր, հ. 24, էջ 33)։

Հենց ելնելով ստեղծված կոնկրետ իրադրությունից, Վ. Ի. Լենինը 1917 թ. ապրիլ-հունիս ամիսներին հնարավոր էր համարում խաղաղ ճանապարհով իշխանության անցումը սովետներին։ Նա գրում էր. «...այսպիսի բացառիկ պատմական մոմենտին ռևոլյուցիայի խաղաղ զարգացումը հնարավոր է ու հավանական, ամբողջ իշխանությունը սովետներին անցնելու դեպքում» (Երկեր, հ. 26, էջ 25)։

Այդ պահին պարտիայի ներսում գտնվեցին մարդիկ, որոնք ժամանակավոր բուրժուական կառավարությունն անհապաղ տապալելու կոչ էին անում։ Վ. Ի. Լենինը դա որակեց որպես ավանտյուրիզմ, որովհետև սոցիալիստական ռևոլյուցիայի քաղաքական բանակը դեռևս չէր ամրապնդվել։ Երբ 1917 թ. հուլիսին ժամանակավոր կառավարությունն իր էսեռա-մենշևիկյան պնակալեզների օգնությամբ գնդակոծեց Պետերբուրգի բանվորների ու զինվորների խաղաղ ցույցը, և երկիշխանությունը վերջացավ հօգուտ բուրժուազիայի, Ռուսաստանում ստեղծվեց նոր իրադրություն։ Վերջացավ ռևոլյուցիայի խաղաղ զարգացման շրջանը, օրակարգի հարց դարձավ զինված ապստամբության կազմակերպումը։ Կոռնիլովշչինայի ջախջախումից հետո վերստին ստեղծվեց մի իրադրություն, երբ հնարավոր էր իշխանության հասնել խաղաղ ճանապարհով։ «Իրենց ձեռքն առնելով ամբողջ իշխանությունը,— նշում էր Վ. Ի. Լենինը,— սովետները կարող կլինեն դեռ այժմ էլ,— և, հավանաբար, այդ նրանց վերջին շանսն է,— ապահովել ռևոլյուցիայի խաղաղ զարգացումը...» (Երկեր, հ. 26, էջ 64)։ Սակայն մանրբուրժուական պարտիաների դավաճանությունն ի-

չիք դարձրեց այդ վերջին հնարավորությունը ևս։ Այն ժամանակ բոլշևիկները կազմակերպեցին ու գլխավորեցին Հոկտեմբերյան հաղթական զինված ապստամբությունը։ Ահա պայքարի բոլոր՝ խաղաղ և ոչ խաղաղ ձևերին տիրապետելու, պատմական կարճ ժամանակաշրջանում մի ձևը մյուսով ամենաարագ ու անսպասելի կերպով հմտորեն փոխարինելու դասական օրինակ, որը վճռական նշանակություն ունեցավ ռևոլյուցիայի հաղթանակի համար։

Բոլշևիկների պարտիան Վ. Ի. Լենինի գլխավորությամբ սովետական իշխանության առաջին իսկ օրվանից ակտիվ պայքար սկսեց խաղաղության համար, դիմելով գործնական քայլերի։ 1917 թվականի նոյեմբերի 20-ին սովետական կառավարությունը խաղաղ բանակցություններ սկսեց Գերմանիայի և նրա դաշնակիցների հետ։ Գերմանական իմպերիալիստներն առաջարկեցին թալանչիական և նվաստացուցիչ պայմաններ։ Երկրի ներքին և արտաքին իրադրությունը (տնտեսական փլուզում, հին բանակի անկարողությունը պատերազմելու, նոր բանակի բացակայությունը և այլն) այնպիսին էր, որ միակ ելքը ուժեղ և վտանգավոր թշնամուն տեղի տալն էր։ Անհրաժեշտ էր հաշտության ծանր պայմանների ընդունման գնով փրկել սովետների երիտասարդ ռեսպուբլիկան։

Գերմանիայի հետ անհապաղ հաշտության պայմանագիր ստորագրելու լենինյան գծի դեմ կատաղիորեն հանդես եկան Տրոցկին և Բուխարինը։ Սովետական իշխանության առաջին հաջողություններով արբեցած որոշ «ձախ» կոմունիստներ գնացին նրանց հետևից, պահանջելով ռևոլյուցիոն պատերազմ հայտարարել իմպերիալիստական Գերմանիային։

Վ. Ի. Լենինը նման վայ-կոմունիստներին նշավակեց որպես ռևոլյուցիոն ֆրազի հերոսներ և պահանջեց անողոք կռիվ հայտարարել ռևոլյուցիոն ֆրազին, այն համեմատելով քոս հիվանդության հետ։ «Ռևոլյուցիոն ֆրազը ռևոլյուցիոն լոզունգների կրկնումն․ է՝ առանց հաշվի առնելու տեղի ունեցող իրադարձությունների տվյալ բեկման, իրերի տվյալ դրության օբյեկտիվ հանգամանքները,— մատնանշում էր Վ. Ի. Լենինը։— Հիանալի, հրապուրիչ, արբեցուցիչ լոզունգներ,—բայց նրանց տակ հող չկա,— ահա ռևոլյուցիոն ֆրազի էությունը» (Երկեր, հ. 27, էջ 1)։

Ինչ խոսք, որ Բրեստի դաշնագիրը «Դա իսկապես կոմպրոմիս էր իմպերիալիստների հետ, բայց հենց մի այնպիսի կոմպրոմիս և այնպիսի պարագաներում, որ պարտադիր էր» (Վ. Ի. Լենին, Երկեր, հ. 31, էջ 25)։

Մինչդեռ «ձախ» կոմունիստները Բրեստի հաշտության պայմանագիրը համարում էին «միջազգային պրոլետարիատի առաջավոր ջոկատի կապիտուլյացիան միջազգային բուրժուազիայի առաջ»։ Վ. Ի. Լենինը, պատասխանելով նրանց, նշում է, որ «կապիտուլյացիան» ընդհանրապես ասած, վատ բան է, բայց այդ պատկառելի ճշմարտությունը չի լուծում ամեն մի կոնկրետ հարց, որովհետև կապիտուլյացիա կարելի է անվանել նաև բացահայտորեն ոչ-ձեռնտու պայմաններում մղվող մարտից հրաժարվելը, իսկ այդպիսի կապիտուլյացիան լուրջ ռևոլյուցիոներների պարտականությունն է։ Հարկավոր էր Վ. Ի. Լենինի վիթխարի կամքը, քաղաքական իմաստությունը և ռևոլյուցիոն անսպառ կրքոտությունը, որպեսզի մերկացվեր Տրոցկու և Բուխարինի ավանտյուրիստական, Սովետական ռեսպուբլիկայի համար խիստ անընդունելի և կործանարար տակտիկան։

Այժմ ուշագրավն այն է, որ ժամանակի ընթացքում կոմունիստների պար-



տիայի կողմից ջախջախված և կյանքի ու հասարակական պրակտիկայի կողմից բացասված մի շարք դոգմաներ այսօր հարություն են առել Չինաստանի կոմունիստական պարտիայի ղեկավարների տեսական ու պրակտիկ գործունեության մեջ։



Մ ԻՋԱԶԳԱՅԻՆ կոմունիստական շարժման ուժի առհավատչյան տեսնելով մարքսիզմ-լենինիզմին հավատարիմ լինելու մեջ, կոմունիստական և բանվորական պարտիաների ներկայացուցիչների Մոսկվայի 1957 և 1960 թվականների համաժողովներն անհրաժեշտ գտան անզիջում պայքար մղել ռևոլյուցիոն թեորիայի անաղարտության համար։ Ճիշտ նշելով, որ համաշխարհային կոմունիստական շարժման մեջ գլխավոր վտանգը ռևիզիոնիզմն է, ինչպես 1957 թ. Դեկլարացիան, այնպես էլ 1960 թ. Հայտարարությունն ընդգծեցին դոգմատիզմի և աղանդավորության դեմ վճռական պայքարի կարևորությունը, որոնք կարող են գլխավոր վտանգ դառնալ առանձին պարտիաների զարգացման այս կամ այն էտապում։

Դոգմատիզմը և նրա տրամաբանական ծնունդ աղանդավորությունը հնարավորություն չեն տալիս կոմունիստական պարտիաներին հասարակական երևույթների գիտական վերլուծության և ռևոլյուցիոն պայքարի փոփոխվող պայմաններին ու առանձնահատկություններին համապատասխան ստեղծագործաբար զարգացնելու մարքսիզմ-լենինիզմը, արագորեն մշակելու տակտիկական պայքարի նոր ձևեր։ Դոգմատիզմով և աղանդավորությամբ տառապող պարտիաներն անջրպետվում են աշխատավորական զանգվածներից, զրկվում կապիտալի, ռեակցիայի, միլիտարիզմի դեմ մղվող պայքարում բանվոր դասակարգի և բոլոր դեմոկրատական ուժերի համախմբման հնարավորությունից, հակվում դեպի «ձախ» ավանտյուրիստական գործողությունները։ Ձախ օպորտունիզմի, դոգմատիզմի, աղանդավորության դեմ պայքարը բարդանում է նրանով, որ նրանք հանդես են գալիս «ուլտրառևոլյուցիոն» ֆրազաբանությամբ, մարքսիզմ-լենինիզմի երդվյալ պաշտպանների դիմակի տակ, չարաշահում են աշխատավորների ռևոլյուցիոն զգացմունքները։ Մարքս-լենինյան թեորիայի այդ աղավաղումներն առավել վտանգավոր են դառնում, երբ նրանք երևան են գալիս իշխանության գլուխ կանգնած պարտիայի պրակտիկ քաղաքականության մեջ, մարդկության ճակատագիրը շոշափող մի այնպիսի հարցում, ինչպիսին է պատերազմի և խաղաղության հարցը։

Այժմ, երբ մարդկությունն ապրում է իր առաջընթացի ամենապատասխանատու էտապը, որ հագեցված է դասակարգային սուր գոտեմարտերով, Չինաստանի կոմունիստական պարտիայի ղեկավարները թաղվել են դոգմատիզմի ու պառակտողականության ցանցերում։ Պատերազմի ու խաղաղության, համաշխարհային բանվորական շարժման ու ազգային-ազատագրական պայքարի ստրատեգիայի ու տակտիկայի, ինչպես և մի շարք արմատական այլ հարցերում ՉԿՊ-ի ղեկավարները կանգնած են հակամարքսիստական, հակալենինյան դիրքերում։

Վերցնենք պատերազմի և խաղաղության հարցը։ Հայտնի է, որ ՍՄԿՊ XX համագումարը, իսկ ապա և կոմունիստական ու բանվորական պարտիաների Մոսկվայի 1957 և 1960 թվականների խորհրդակցությունները հանգան այն

եզրակացության, որ մարդկային հասարակության պատմական զարգացման գլխավոր բովանդակությունը և գլխավոր ուղղությունն արդեն ոչ թե իմպերիալիզմն է որոշում, այլ համաշխարհային սոցիալիստական սիստեմը։ Ելնելով աշխարհում ուժերի ռեալ հարաբերակցությունից, նշվեց, որ համաշխարհային պատերազմի կանխումը հնարավոր և իրագործելի խնդիր է, որ մեր ժամանակներում պատերազմների ճակատագրական անխուսափելիություն չկա։

Դա մեծագույն նշանակություն ունեցող հետևություն էր, մարքսիզմ-լենինիզմի ստեղծագործական զարգացման վառ օրինակ։ Միաժամանակ շեշտվեց, որ պատերազմների ճակատագրական անխուսափելիության վերացումը երբեք չի նշանակում իմպերիալիզմի ագրեսիվ էության փոփոխում, պատերազմի վտանգի վերացում։ Հետևապես խաղաղության ուժերը միշտ պետք է զգոն լինեն, աչալուրջ հետևեն իմպերիալիստների յուրաքանչյուր քայլին և հետևողականորեն անդուլ պայքար մղեն նոր, համաշխարհային սպանդի սանձազերծման դեմ։

Չինաստանի կոմունիստական պարտիայի ղեկավարները ժամանակին իրենց ստորագրությունը դնելով այս եզրակացության տակ, այսօր 180 աստիճան շրջվելով ճգնում են ապացուցել, որ պատերազմներին վերջ տալ չի կարելի, քանի դեռ գոյություն ունի իմպերիալիզմը, թե խաղաղ գոյակցությունը պատրանք է, թե այն չի հանդիսանում սոցիալիստական երկրների արտաքին քաղաքականության գլխավոր գիծը, թե խաղաղության համար պայքարը խանգարում է ռևոլյուցիոն շարժումների ծավալմանը։

Այո, իմպերիալիզմը շարունակում է գոյություն ունենալ, իսկ նրա ագրեսիվ բնույթը չի փոխվել։ Բայց չէ որ փոխվել են պայմանները և իմպերիալիզմն այլևս չի կարող թելադրել իր կամքը և թալանչիական քաղաքականությունը։ Աշխարհում ուժերի հարաբերակցությունն այնպիսին է, որ սոցիալիզմի ու խաղաղության լագերն ի վիճակի է սանձահարելու իմպերիալիզմի ագրեսիվ ուժերին։ Մինչդեռ ՉԿՊ-ի ղեկավարներն իրականության հետ առնչություն չունեցող իրենց ռևոլյուցիոն կեղծ լոզունգներով ու ֆրազներով խանգարում են ռևոլյուցիայի առաջխաղացմանը։

ՉԿՊ-ի ղեկավարները ՍՄԿՊ-ին և մյուս կոմունիստական պարտիաներին մեղադրում են իմպերիալիզմի հանդեպ կապիտուլյացիայի մեջ։ Բնորոշն այն է այս դեպքում, որ Չինաստանի ժողովրդական ռեսպուբլիկայի ղեկավարները հրաժարվեցին իրենց ստորագրությունը դնել երեք տերությունների Մոսկվայի պայմանագրի տակ, որն արգելում է միջուկային զենքի փորձարկումները մթնոլորտում, տիեզերական տարածությունում և ջրի տակ։

Օգտագործելով այն հանգամանքը, որ պայմանագիրը չի տարածվում ստորերկրյա փորձարկումների վրա, որը երկար ժամանակ արգելք էր հանդիսանում համաձայնության գալու, ՉԺՌ-ի կառավարությունն արհեստականորեն ցիտատներ ժողովելով փորձում է ինչ-որ հակասություն գտնել Սովետական Միության դիրքավորման մեջ։ Ինչպես նշված է սովետական կառավարության հայտարարության մեջ, ՉԺՌ-ի ղեկավարները մոռանում են այն պարզ ճշմարտությունը, որ կյանքը տեղում կանգնած չէ, որ բուռն կերպով զարգանում են գիտությունն ու տեխնիկան, և այն, ինչ ընդունելի չէր դեռ երեկ, կարող է օգտակար և ընդունելի լինել այսօր։

Ծաղրելով պնդաճակատ ու կարծրացած մտքի տեր գործիչներին, Վ. Ի. Լենինը գրել է. «...թվանշանների առաջ երևան եկավ նոր նշան՝ «մինուս», իսկ



մեր իմաստակները համառությամբ շարունակեցին (և շարունակում են) հավատացնել իրենց և ուրիշներին, թե «մինուս երեքը» մեծ է «մինուս երկուսից»» (Երկեր, հ. 31, էջ 112)։

Որքա՜ն այժմեական ու տեղին են հնչում լենինյան խոսքերը։

Կյանքը հիմքից հերքում է ՉԿՊ-ի ղեկավարների նաև այն մտացածին դրույթը, թե իբր խաղաղ գոյակցությունը խանգարում է ռևոլյուցիոն և ազգային-ազատագրական պայքարին։ Հենց խաղաղ գոյակցությունն է, որ նպաստավոր պայմաններ ու հնարավորություններ է ստեղծում կապիտալիստական երկրներում ռևոլյուցիոն և ազգային-ազատագրական պայքարի ծավալման, կոմունիստական պարտիաների, դեմոկրատական ուժերի դերի և ազդեցության ուժեղացման համար։ Այդ են ասում փաստերը։

Մի՞թե խաղաղ գոյակցության պայմաններում չկատարվեց սոցիալիստական ռևոլյուցիան Կուբայում։ Մի՞թե վերջին տարիներին տեղի չունեցան դասակարգային խոշոր մարտերը կապիտալի երկրներում և կոմունիստական պարտիաների շարքերի ու ազդեցության ամենամեծ աճը։ Մի՞թե ազգային-ազատագրական շարժումը չհասավ իր վերելքին, որի շնորհիվ ազգային անկախություն նվաճեցին ավելի քան 40 երկրներ, այդ թվում և մարտնչող Ալժիրը։

Մարքսիզմ-լենինիզմի հետ աղաղակող հակասության մեջ է գտնվում պատերազմի միջոցով միջազգային ռևոլյուցիան առաջ մղելու վերաբերյալ ՉԿՊ-ի ղեկավարների սխալ և վտանգավոր տեսակետը։ Հանրահայտ է, որ սոցիալիստական ռևոլյուցիան կապիտալիստական հասարակարգի դասակարգային անտագոնիզմի արգասիքն է, տվյալ երկրի աշխատավոր զանգվածների պայքարի արդյունքը, պայքար, որը տեղի է ունենում անհրաժեշտ սոցիալ տնտեսական ու քաղաքական պայմանների հասունանալուն համապատասխան, երբ արդեն առկա է ռևոլյուցիոն սիտուացիան։

Մարքսիզմ-լենինիզմը երբեք սոցիալիստական ռևոլյուցիայի հաղթանակը պատերազմի հետ չի կապել։ Եթե համաշխարհային պատերազմները հղի են հաղթական ռևոլյուցիայով, այդ դեռ չի նշանակում, թե սոցիալիստական ռևոլյուցիաները հնարավոր չեն առանց պատերազմների։ Վ. Ի. Լենինը անարգանքի սյունին էր գամում բոլոր նրանց, ովքեր մարզանքներ էին կատարում ռևոլյուցիոն պատերազմի վերաբերյալ ֆրազներով։ «Պետք է կռվել ռևոլյուցիոն ֆրազի դեմ,— նշում է նա,— հարկավոր է կռվել, անպայման կռվել, որպեսզի երբևիցե մեր մասին չասեն այն դառը ճշմարտությունը, թե «ռևոլյուցիոն պատերազմի վերաբերյալ ռևոլյուցիոն ֆրազը կործանեց ռևոլյուցիան» (Երկեր, հ. 27, էջ 14)։

ՉԿՊ-ի ղեկավարների ավանտյուրիզմը ցցուն կերպով արտահայտվեց 1962 թ. հոկտեմբերին Կարաիբյան ծովի շրջանում ստեղծված կրիզիսի ժամանակ, երբ ամերիկյան իմպերիալիզմի ագրեսիվ գործողություններն աշխարհը ընդհուպ կանգնեցրին ջերմամիջուկային հրդեհի առաջ։ Երբ հայտնի դարձավ, որ ամերիկյան իմպերիալիզմը զինված ագրեսիա է պատրաստում արևմտյան կիսագնդում սոցիալիզմի փարոսի՝ Կուբայի ռեսպուբլիկայի դեմ, անհրաժեշտություն առաջացավ դիմել ամենավճռական միջոցների։ Սովետական Միության և Կուբայի կառավարությունները հաշվի առնելով այդ հանգամանքը, պայմանավորվեցին Կուբայում տեղադրել հրթիռային զենք, որպես ամերիկյան իմպերիալիզմի ագրեսիան կանխելու միակ ռեալ միջոց։ Այդ միջոցառումը ցըն-

# ԿՈՄՈՒՆԻՍՏԱԿԱՆ ԱՇԽԱՏԱՆՔԸ ՀԱՂԹԱՆԱԿՈՒՄ Է

Ս. ԱՌԱՔԵԼՅԱՆ

ՀԱՄԽ-ի նախագահ

*ՄԵՐ պարտիան և սովետական ժողովուրդը պատմության մեջ առաջինն են լուծում կոմունիստական շինարարության մեծ խնդիրը, ստեղծում ամենակատարյալ, ամենաարդարացի հասարակարգը, որը կոչված է իրականացնելու մարդկության բարձրագույն իդեալները՝ Խաղաղություն, Աշխատանք, Ազատություն, Հավասարություն, Եղբայրություն և Երջանկություն բոլոր ժողովուրդներին։*

*Կոմունիստական հասարակարգի կառուցման ընթացքում երևան են գալիս ու լայնորեն տարածվում աշխատանքի նոր, առաջավոր ձևերը, վերափոխվում է մարդկանց հոգեբանությունը, օրըստօրե զարգանում է մասսաների ստեղծագործական նախաձեռնությունը։*

*Սովետական մարդկանց ստեղծագործական նախաձեռնությունը և արտադրական ակտիվությունը վառ կերպով դրսևորվում են կոմունիստական աշխատանքի համար ծավալված հայրենասիրական շարժման մեջ, որի նշանաբանն է* «Սովորել, աշխատել և ապրել կոմունիստաբար»։

*Շատ ժամանակ չի անցել, երբ ռեսպուբլիկայում մրցություն սկսվեց կոմունիստական աշխատանքի կոչման համար։ Չնայած դրան, այսօր շատ բան է փոխվել. խտացել են նրա մասնակիցների շարքերը, հարստացել է նրա բովանդակությունը։ Նյութական արտադրությունից բացի այն ընդգրկել է գիտության, կենցաղի, կուլտուրայի, առողջապահության և մյուս բնագավառները։*

*Կոմունիստական աշխատանքի շարժման մասնակիցները կամավոր կերպով ստանձնում են բարձր պարտավորություններ։ Նրանք այդ անում են ոչ թե անձնական բարեկեցության կամ փառքի համար, այլ ընդհանուր գործն առաջ մղելու վսեմ նպատակով։ Այդ նրանց կոմունիստական գիտակցության, սոցիալիստական հայրենիքին անհուն նվիրվածության վառ արտահայտությունն է։ Այդպիսի մարդկանց համար կանոն է դարձել՝ իրենց գիտելիքները, հմտությունը աշխատանքային ընկերոջը հաղորդելը, ընդհանուր վերելքի հասնելու համար միասնական ուժով աշխատանք կատարելը։*

*Ընկերականության և կոլեկտիվիզմի ոգին տասնապատկում է այդ շարժման ուժը, որի մասնակիցներն օգնության ձեռք են մեկնում աշխատանքում ու կենցաղում սայթաքողներին, ընկերների հետ բաժանում ուրախությունն ու վիշտը և իրենց մեջ մշակում այն առաքինություններն ու հատկությունները, որոնք անհրաժեշտ են կոմունիստական հասարակարգի մարդուն։ Դրա հետ*



*միասին նրանք չեն հանդուրժում անցյալի մնացուկները, անհանդուրժողական վերաբերմունք են ցուցաբերում կոմունիստական համակեցության կանոնները խախտողների նկատմամբ և մերժում այն ամենը, ինչ իր դարն ապրել է, քարացել, ինչ խանգարում է մեր արագ առաջընթացին։*

★ ★ ★

*ԼԱՅՆ պայքար ծավալելով հանուն ՍՄԿՊ XXII համագումարի որոշումների կենսագործման, ռեսպուբլիկայի աշխատավորները լուրջ հաջողությունների են հասել ժողովրդական տնտեսության զարգացման բնագավառում։ Հաջողությամբ ավարտելով անցած տնտեսական տարին, նրանք նորանոր բնագծեր են գրավում 1963 թվականին։ Արդյունաբերության աշխատողներն ընթացիկ տարվա յոթ ամսվա համախառն արտադրանքի պլանը կատարել են 102,9 տոկոսով և առաջին կիսամյակում պլանից դուրս տվել մեծ քանակությամբ արտադրանք։ Արդյունաբերական արտադրանքի աճը անցյալ տարվա նույն ժամանակաշրջանի համեմատությամբ կազմում է 10,3 տոկոս։*

*Հաջողությունները նշանակալից են նաև ժողովրդական տնտեսության մյուս ճյուղերում։ Ձեռք բերված հաջողություններն արդյունք են համաժողովրդական սոցիալիստական մրցության դուրս եկած մեր մարդկանց, առաջին հերթին արտադրության մեջ ընդգրկված բանվորների, կոլտնտեսականների և ինտելիգենցիայի ժրաջան աշխատանքի։ Նրանց առջևից ընթանում են կոմունիստական աշխատանքի հարվածայինի կոչման համար պայքարողների հզոր շարժման մասնակիցները, որոնց գերակշռող մասը արտադրության առաջավորներ են։*

*Այդ շարժումը գնալով լայն ծավալ է ստանում։ Այսպես, եթե կոմունիստական աշխատանքի կոլեկտիվների և հարվածայինների մրցության առաջավորների ռեսպուբլիկական առաջին խորհրդակցության ժամանակ, 1960 թ. հունիսին, տվյալ շարժմանը մասնակցում էին 32000, ապա այժմ մասնակցում են մոտ 131000 հոգի, այսինքն՝ երեք տարվա ընթացքում մրցության մասնակիցների թիվն աճել է ավելի քան 4 անգամ, իր մեջ ընդգրկելով նորանոր տեղամասերի, ցեխերի և 138 ձեռնարկությունների կոլեկտիվներ։*

*Կոմունիստական աշխատանքի կոչման համար պայքարող 5672 բրիգադներից 1349-ը, 829 ցեխերի, ֆերմաների, բաժինների և տեղամասերի կոլեկտիվներից 160-ը և 32.000 բանվորներից, ծառայողներից, ինժեներա-տեխնիկական աշխատողներից 7371-ը արդեն արժանացել են այդ կոչմանը։*

★ ★ ★

*ՌԵՍՊՈՒԲԼԻԿԱՅՈՒՄ կոմունիստական աշխատանքի կոչման համար պայքարող բազմաթիվ ձեռնարկությունների, ցեխերի, տեղամասերի, բրիգադների կոլեկտիվներ և անհատ աշխատողներ կատարելով ստանձնած պարտավորությունները, խոշոր հաջողությունների են հասել արտադրական պլանների կատարման և աշխատողների կոմունիստական դաստիարակության բնագավառում։ Մրցության ավանգարդում է ընթանում Կիրովի անվան գործարանի փառապանծ կոլեկտիվը, որն իր հայրե-*

նանվեր աշխատանքով գրավել է ամբողջ ռեսպուբլիկայի աշխատավորության սերն ու հարգանքը:

Գործարանի կոլեկտիվը տարեցտարի ավելացնում է արտադրանքի ծավալը, բարձրացնում աշխատանքի արտադրողականությունը, իջեցնում արտադրանքի ինքնարժեքը: Բավական է ասել, որ գործարանում համախառն արտադրանքը, 1958 թ. համեմատությամբ, 1963 թ. ավելացել է 37, աշխատանքի արտադրողականությունը՝ 32,8 տոկոսով: Ձեռք բերած նշանակալից հաջողությունների համար այս կոլեկտիվը սիստեմատիկ առաջնություն է շահել սոցիալիստական մրցության մեջ և 1959 թ. մինչև օրս 16 անգամ նվաճել է ռեսպուբլիկայի Մինիստրների սովետի և ՀԱՄԽ-ի փոխանցիկ կարմիր դրոշը և արժանացել է առաջին կարգի դրամական մրցանակների: Օրերս նավթային ու քիմիական արդյունաբերության աշխատողների արհմիության Կենտկոմի նախագահությունը և քիմիայի ու նավթի պետական կոմիտեն ամփոփելով 1963 թվականի առաջին կիսամյակի արդյունքները՝ սոցիալիստական մրցությունում հաղթող ճանաչեցին կիրովցիներին: Ձեռնարկության կոլեկտիվին շնորհվեց արհմիության կենտկոմի և քիմիայի ու նավթի պետական կոմիտեի փոխանցիկ Կարմիր դրոշն ու պատվոգիրը:

Արտադրության առաջավորներից (որոնց թիվը տարեցտարի ավելանում է) միայն վերջին տարիներս գործարանի պատվո գրքում գրանցվել են 270 մարդ, իսկ պատվոգրով պարգևատրվել են 790 մարդ: Շատ աշխատողներ իրենց երկարամյա և անբասիր աշխատանքի համար պարգևատրվել են ՍՍՌՄ կառավարական շքանշաններով ու մեդալներով: Լենինի շքանշանով են պարգևատրվել 10, Աշխատանքային կարմիր դրոշի շքանշանով՝ 107 և մեդալներով 1124 մարդ, իսկ 30—30ա ցեխի ապարատավարների բրիգադավար Սերյոժա Ամիրխանյանին շնորհվել է Սոցիալիստական աշխատանքի հերոսի կոչում:

Ներկայումս գործարանի մոտ 600 աշխատողներ ունեն բարձրագույն և միջնակարգ մասնագիտական կրթություն: 1959 թ. մինչև 1963 թ. առանց արտադրությունից կտրվելու ինստիտուտներ են ավարտել 45, տեխնիկումներ՝ 60, բաներիտ դպրոցներ՝ 75 աշխատող: Գործարանում պատրաստվել են տարբեր մասնագիտությունների 600, իսկ իրենց որակավորումը բարձրացրել մոտ 2400 բանվոր: Հաշվի առնելով Կիրովի անվան գործարանի կոլեկտիվի երկար տարիների լավագույն աշխատանքը՝ ՀԱՄԽ-ը և Ժողտնտխորհը գործարանի կոլեկտիվին շնորհեցին կոմունիստական աշխատանքի բարձր կոչում:

Կոմունիստական աշխատանքի բազմազան ձևերի արմատավորման գործում շնորհալի աշխատանք է կատարում նաև Շահումյանի տրիկոտաժի ֆաբրիկայի կոլեկտիվը: Այստեղ արմատավորվել է մի լավ կանոն՝ հոգատարությամբ շրջապատել յուրաքանչյուր մարդու, հատկապես երիտասարդներին, սովորեցնել, դաստիարակել ու կոփել նրանց:

Վերնազգեստ կարող ցեխում է աշխատում Թեմուր Խաչատրյանի ղեկավարած կոմունիստական աշխատանքի բրիգադան: Թեմուրը աճել, դաստիարակվել է այդ կոլեկտիվում: Սկզբում, երբ նա աշխատում էր որպես պահեստապետ, ընկավ վատ շրջապատ և մի օր ձեռք մեկնեց հանրային սեփականությանը: Բայց կոլեկտիվը նրա մեջ տեսնում էր ազնիվ գծեր և նրա դաստիարակությունը վերցրեց իր ձեռքը: Ֆաբրիկայի տարեց բանվորները հաճախ էին զրուցում նրա հետ, հետևում նրա կատարած աշխատանքին, օգնում նրան: Թ. Խաչատրյանն իր շրջապատում տեսնում էր ազնիվ, գործին նվիրված շատ



մարդկանց և ձգտում նմանվել նրանց: Եվ մի օր նրան վստահեցին բրիգադայի ղեկավարությունը: Այժմ կոմունիստաբար աշխատող այդ բրիգադայի մասին գիտե ամբողջ ֆաբրիկան, ամենուր գովեստով են խոսում նրա մասին: Թեմուր Խաչատրյանը դարձել է ոչ միայն լավ բրիգադավար, այլև ակտիվ մասնակցում է հասարակական աշխատանքներին. այժմ նա գլխավորում է ցեխի կոմերիտական կազմակերպությունը:

Վերջերս, երբ ֆաբրիկայում խոսվեց արտադրանքի որակի հետագա բարելավման և այդ գործում յուրաքանչյուր աշխատողի պարտքի մասին, վերնազգեստ կարող ցեխի բանվորները ցանկություն հայտնեցին աշխատել առանց խոտանողի: Այս նախաձեռնությունը ջերմ հավանության արժանացավ. մեկ ամսից ավելի է, ինչ Զարեւա Հովհաննիսյանի և Արևիկ Գալոյանի ղեկավարած կոմունիստական աշխատանքի բրիգադներն աշխատում են առանց խոտանողի: Նրանց հետևեցին ֆաբրիկայի մի շարք այլ բրիգադաներ:

Հայկական ՍՍՌ Գերագույն սովետի դեպուտատ Լենա Ալեքսանյանը, Լենա Ասատրյանը, Խաթուն Աղախանյանը և շատ ուրիշ բանվորուհիներ արտադրանքի որակը բարձրացրել են 8—10 տոկոսով: Իրենց թողարկած արտադրանքի վրա նրանք փակցնում են պիտակ հետևյալ մակագրությամբ՝ «Հարգելի գնորդ. արտադրանքը կարված է կոմունիստական աշխատանքի բրիգադայում, որն աշխատում է անձնական դրոշմով»:

Ֆաբրիկայում կոմունիստական աշխատանքի շարժման մեջ ընդգրկվածները կոլեկտիվի առջև հանդիսավոր խոստում են տալիս՝ ակտիվ մասնակցել կոմունիզմի նյութա-տեխնիկական բազայի ստեղծմանը, աշխատանքում, տանը, հասարակական վայրում լինել կարգապահ, ակտիվ ու ճշտապահ, անդուլ պայքար մղել հակահասարակական երևույթների դեմ, աչքի լույսի պես պահպանել սոցիալիստական սեփականությունը, ամեն կերպ ամրապնդել աշխատանքային ու արտադրական կարգապահությունը:

Նրանցից յուրաքանչյուրն իր ընկերների առջև խոստանում է նաև ակտիվ մասնակցել հասարակական աշխատանքներին, սրբությամբ կատարել կոմունիզմի կառուցողի բարոյական կոդեքսի բոլոր պահանջները և «եթե երբևիցե մոռանամ իմ խոստումը և ուխտադրուժ լինեմ իմ երդման նկատմամբ, թող դատապարտի ինձ իմ խիղճը, ընկերներս և ողջ կոլեկտիվը»:

Ֆաբրիկայում կոմունիստական աշխատանքի հարվածայինի կոչման համար պայքարողները և այդ կոչմանն արժանացած ընկերները պատվով են կատարում իրենց խոստումը: Եվ պատահական չէ, որ ֆաբրիկայի կոլեկտիվը 113,4 տոկոսով կատարեց համախառն արտադրանքի թողարկման անցած 7 ամիսների պլանը և պլանից դուրս տվեց 3100 հազար ռուբլու արտադրանք:

Բարձր գնահատելով այդ կոլեկտիվի հայրենանվեր աշխատանքը, նրան շնորհվեց կոմունիստականի կոչում:

Երևանի հիդրոպոմպերի գործարանի 505 աշխատողներից 500-ը պայքարում են կոմունիստական աշխատանքի հարվածայինի կոչման արժանանալու համար, որոնցից 122-ն արդեն արժանացել են այդ կոչմանը:

Այս գործարանում մրցության կազմակերպման և ղեկավարման հատկանշական կողմերից մեկն այն է, որ ստանձնած պարտավորությունների կատարումն ապահովելու համար մշակվում և իրագործվում են կազմակերպչական-տեխնիկական կոնկրետ միջոցառումներ: Ադմինիստրացիան, պարտիական, արհմիութենական, կոմերիտական կազմակերպությունները հոգ են տանում,

որպեսզի ստանձնած պարտավորությունները կատարելու համար ստեղծվեն բոլոր պայմանները։ Ահա թե ինչու գործարանի կոլեկտիվն ընթանում է վերելքի ուղիով և միշտ գերակատարում պետական առաջադրանքները։ Գերակատարելով համախառն արտադրանքի 1962 թ. և ընթացիկ տարվա յոթ ամիսների առաջադրանքները՝ կոլեկտիվը պլանից դուրս թողարկել է մոտ 440 հազար ռուբլու արտադրանք։ Այս գործարանում պլանները կատարվում են տեխնիկատնտեսական բոլոր ցուցանիշներով։

Ալավերդու պղնձաքիմիական կոմբինատի էլեկտրոլիզի ցեխի Վ. Կոլոլյանի ղեկավարած կոմունիստական աշխատանքի բրիգադայում աշխատում են տարբեր ազգերի 22 մարդ, որոնք սիստեմատիկաբար գերակատարում են արտադրական պլանները։ Բրիգադայի բոլոր անդամները սովորում են, նրանց մեծ մասը ձեռք է բերել միջնակարգ կրթություն, տիրապետում է հարակից մասնագիտությունների։ Բրիգադան ինտերնացիոնալ աշխատանքային մի ընտանիք է, ուր փոխադարձ հարգանքը, ընկերական փոխօգնությունը, ուրախությունն ու տխրությունը միմյանց հետ կիսելը կյանքի օրենք է դարձել նրա յուրաքանչյուր անդամի համար։

Հայէլեկտրագործարանի կոլեկտիվը լավ է ճանաչում 29-րդ ցեխի Անուշավան Մնացականյանի ղեկավարած բրիգադային, որի 13 անդամներից 6-ը սովորում են տեխնիկումներում ու դպրոցներում, 3-ը ավարտել են միջնակարգ դպրոցը։ Արտադրական առաջադրանքները նրանք կատարում են 130—140 տոկոսով, տալով բարձրորակ արտադրանք։ Այս բրիգադայի անդամներն իրենց արտադրական տեղամասը միշտ պահում են մաքուր, բարեկարգում ցեխի շրջակայքը, ծաղիկներ աճեցնում և ակտիվ մասնակցում հասարակական աշխատանքներին։ Բրիգադավար Ա. Մնացականյանը ղեկավարում է մշտական գործող ցեխային արտադրական խորհրդակցությունը, որն զգալի չափով նպաստում է կոլեկտիվի առջև դրված խնդիրների հաջող կատարմանը։ Արտադրական խորհրդակցության որոշմամբ ցեխի կոլեկտիվի ուժերով կառուցվում են ակումբ, բաղնիք և հիգիենիկ սենյակներ։

Լավ տրադիցիաներ ունի Շահումյանի մետաքսի կոմբինատի գործվածքային 2-րդ ցեխի ենթավարպետ Երեմ Ասլանյանի ղեկավարած կոմունիստական աշխատանքի բրիգադան։ Այն պահում է մի ալբոմ, որի մեջ զետեղվում են բրիգադայի անցած փառավոր ուղին, կոլեկտիվի ստեղծագործական աշխատանքն ու հաջողությունները, նրա անդամների ստեղծած լավ տրադիցիաները, կյանքն ու կենդաղն արտացոլող լուսանկարներ, արվում են փոքրիկ գրանցումներ։ Ալբոմի նկարներից մեկը պատկերում է ջուլհակուհի քույրեր Սարգսյաններին. նրանց բնակարանն են եկել բրիգադայի բոլոր անդամները՝ նրանց ծննդյան օրը նշելու. (բրիգադայի անդամների ծննդյան օրերը նշվում են նաև աշխատանքի վայրում. այդ օրը բրիգադան աշխատում է նրանց պատվին և որպես կանոն հասնում արտադրական նոր հաջողությունների)։

Մեկ այլ նկար պատկերում է ջուլհակուհի Ջառա Ջաթալյանի բնակարանի կառուցումը։ Ահա ամբողջ բրիգադան եկել է ընկերոջն օգնելու և աշխատում է մեծ եռանդով։ Այդ օգնությունը մեկ օր չի եղել, այն սկսվել է բնակարանի կառուցման առաջին օրվանից և շարունակվել մինչև վերջ։ Կամ ահա բրիգադայի անդամները ծաղկեփնջերով եկել են հիվանդանոց՝ Պայծառ Խաչիկյանի որդու՝ սովետական նոր քաղաքացու ծնունդը շնորհավորելու, մոր ուրախությունը բաժանելու, նրան հիվանդանոցից տուն տանելու։



Այս ալբոմի յուրաքանչյուր էջը մի պատմություն է 10 հոգուց բաղկացած աշխատանքային ընտանիքի մասին, որը կոմունիստաբար աշխատելու և ապրելու, կոմունիզմ կառուցողի բարոյական կոդեքսը կյանքում կենսագործելու լավ օրինակ է ծառայում։

Կոմունիստական աշխատանքի շարժման մեջ իր ավանդն է ներդնում Հայքիմարդշին տրեստի № 2 շինվարչության Էմիլ Սադոյանի ղեկավարած աշխղեկությունը։ 1962 թ. պոլիվինիլացետատ գործարանի ացետիլենի օբյեկտները ժամանակին և բարձր որակով շահագործման հանձնելու համար աշխղեկ Է. Սադոյանը պարգևատրվեց Աշխատանքի արիության համար մեդալով, իսկ այս տարվա օգոստոսի 13-ին նրա ղեկավարած աշխղեկության կոլեկտիվին շնորհվեց կոմունիստական աշխատանքի կոլեկտիվի կոչում։

Կոմունիստական աշխատանքի շարժումը բարերար ազդեցություն է գործում նաև մեր գյուղի վրա։ Հոկտեմբերյանի արտադրական վարչության Նաիրի սովխոզի կոլեկտիվը, որը պայքարում է կոմունիստական աշխատանքի կոչման համար, վերջին տարիներս ստանում է կայուն բարձր բերք։ Սովխոզը խաղողի բերքատվության 1962 թ. պլանը կատարել է 163, պտղինը՝ 112,5 տոկոսով։ Հաջողությամբ են կատարվել նաև անասնաբուծական մթերքների արտադրության ու անասունների գլխաքանակի ավելացման պլանները. տնտեսական տարին փակվել է 818 հազար ռուբլի օգուտով։

Կոմունիստական աշխատանքի բրիգադայի կոչման համար է պայքարում Նոյեմբերյանի արտադրական վարչության Լալվար սովխոզի՝ Լյուդվիգ Սարգսյանի ղեկավարած բրիգադան։ Բրիգադան մշակում է 35 հեկտար խաղողի այգի. անցյալ տարի յուրաքանչյուր հեկտարից պլանով նախատեսված 90-ի դիմաց ստացել է 147 ցենտներ խաղողի միջին բերք, իսկ Նադիր Իսկանդարովի օղակը՝ 95-ի դիմաց 178 ցենտներ։ Նա պարտավորվել է այս տարի յուրաքանչյուր հեկտարի բերքատվությունը բարձրացնել 10 ցենտներով։

Սոցիալիստական մրցության ծավալման շնորհիվ աշխատանքի լավագույն հաջողությունների են հասել Լալվարի Թայիրովի, Բաղրամյանի անվան Ոսկեճատի, Կիրովի անվան Արմաշի, Լուկաշինի, Աթարբեկյանի անվան և մի շարք այլ սովխոզների կոլեկտիվներ ու գյուղատնտեսության բազմաթիվ առաջավորներ։

* * *

ԿՅԱՆՔՆ առաջ քաշեց կոմունիստական աշխատանքի շարժման գի-
տական և ինժեներա-տեխնիկական հասարակայնության մասնակ-
ցության բազմազան ձևեր։ Ռեսպուբլիկայի գործարաններում, ֆաբ-
րիկաներում, կառույցներում, սովխոզներում և գիտական հիմնարկ-
ներում ստեղծված են և հաջողությամբ աշխատում են 45 հասարակական կոնս-
տրուկտորական բյուրոներ, 69 էկոնոմիկական անալիզի խմբեր, տեխնիկա-
տրուկտորական բյուրոներ, 47 ստեղծագործական բրիգադներ,
կան ինֆորմացիաների 13 բյուրոներ, 47 ստեղծագործական բրիգադներ,
orոնցում ընդգրկված են հազարավոր ինժեներներ, գիտնականներ, արտադրու-
թյան նորարարներ։

Աշխատավորների հասարակական ստեղծագործական միավորումները
հաստատապես մուտք են գործել մեր կյանքում։ Նրանք հանդիսանում են աշ-
խատանքի նկատմամբ նոր, կոմունիստական վերաբերմունքի կենսունակ ծի-

չէր։ Այդ ծիլերը հաջողությամբ աճում են, աշխատավորների համար բացելով ավելի լայն և արդյունավետ գործունեության ուղիներ։

Աշխատավորների տեխնիկական ստեղծագործության զարգացմանն օգնում են գյուտարարների ու ռացիոնալիզատորների և գիտատեխնիկական ընկերությունները, որոնց գործունեությունն աշխատանքի նկատմամբ կոմունիստական վերաբերմունքի վառ արտահայտություն է։

Արտադրական պրոցեսների կատարելագործմանը, աշխատանքի թեթևացմանը և արտադրողականության բարձրացմանը մեծ չափով նպաստում են գյուտերն ու ռացիոնալիզատորական առաջարկությունները։ 1962 թ. ընթացքում 10135 ռացիոնալիզատորների կողմից արվել է 15334 առաջարկություն, որոնցից ընդունվել են 12675-ը, ներդրվել 10228-ը՝ 93000 հազար ռուբլի տնտեսական օգուտով։ Ընթացիկ տարվա առաջին կիսամյակում ներդրվել են 5355 առաջարկություն, որոնք ավել են 5079,5 հազար ռուբլի տնտեսական օգուտ։

Բարելավվել է կոմունիստական աշխատանքի դրական փորձի տարածման ու պրոպագանդման գործը։ Բազմաթիվ ձեռնարկությունների կոլեկտիվներում հաճախակի են կազմակերպվում կոմունիստական աշխատանքի առաջավորների խորհրդակցություններ, հավաքներ։ Տեղի են ունեցել մրցության առաջավորների ռեսպուբլիկական, ինչպես նաև քաղաքային ու շրջանային հավաքներ։ Հավաքներ են անցկացվել նաև արդյունաբերության, գյուղատնտեսության, կապի ձեռնարկություններում ու կազմակերպություններում, կառույցներում և այլուր։ Հրատարակվում են առաջավոր փորձի վերաբերյալ գրքեր, բրոշյուրներ, թերթիկներ, պլակատներ։

Մետալուրգիական արդյունաբերության բանվորների արհմիության ռեսպուբլիկական կոմիտեն և գունավոր մետալուրգիայի գիտատեխնիկական ընկերության կովկասյան վարչությունը լույս են ընծայել Հայաստանի գունավոր մետալուրգիայի և լեռնահանքային արդյունաբերության առաջավորները գիրքը, որտեղ լուսաբանված է կոմունիստական աշխատանքի մրցության առաջավորների փորձը։

Կոմունիստական աշխատանքի մրցության առաջավորների փորձի վերաբերյալ բրոշյուրներ ու թերթիկներ են հրատարակվել Կիրովի անվան գործարանում, Կիրովականի քիմիական կոմբինատում և բազմաթիվ այլ կազմակերպություններում։

Շատ ձեռնարկություններում և կազմակերպություններում կոմունիստական աշխատանքի կոչմանն արժանացած կոլեկտիվներին և հարվածայիններին տրվում են վկայականներ, իսկ Կիրովականի քիմիական կոմբինատում՝ նաև կրծքանշաններ։ Գրեթե վերացել են այն թերություններն ու սխալները, որ առանձին կազմակերպություններ թույլ էին տալիս այդ շարժման սկզբնական շրջանում. այսպես. կոմունիստական աշխատանքի բրիգադաների մեջ ընդգրկում էին միայն առաջավորներին, առանձին բրիգադաների համար ստեղծում էին արտոնյալ պայմաններ, իսկ մյուսներին մոռացության մատնում, թույլ էին տալիս բրիգադայի ներսում աշխատավարձի հավասարեցում, թերություններ ունեցողներին հեռացնում էին բրիգադայից, կոչումներ շնորհելու գործում հանդես էին բերում շտապողականություն, շարժման մասնակիցների պարտավորություններում թույլ էր արտահայտվում կամ բոլորովին չէր արտահայտվում նոր մարդու դաստիարակության հարցը։



ԿՈՄՈՒՆԻՍՏԱԿԱՆ աշխատանքի կոլեկտիվների ու հարվածայինների օրեցօր ծավալվող շարժումը պահանջում է բարձրացնել նրա ղեկավարման մակարդակը, ժամանակին նկատել ու վերացնել այն թերությունները, որոնք խանգարում են տասնյակ հազարավոր մարդկանց ստեղծագործական նախաձեռնությունը, չեն նպաստում մասսաների ընդերքում ծնունդ առնող նորի, առաջավորի արմատավորմանը։

Բազմաթիվ կազմակերպություններում անհրաժեշտ ուշադրություն չեն նվիրում կոմունիստական աշխատանքի կոլեկտիվների և հարվածայինների մրցության կազմակերպմանը. դրանով զբաղվում են ձևականորեն, սկզբում աղմկում են մրցության մասին, ստանձնում պարտավորություններ, իսկ հետո մոռացության տալիս դրանց կատարումը։

Հոկտեմբերյանի հաստոցաշինական, Երևանի ավտոամբարձիչների, գարեջրի, Մարտունու պահածոների գործարաններում, Դիլիջանի շինարարական առարկաների և Անիի պեմզայի կոմբինատներում, Երևանի քաղսովետի շինվերանորոգման տրեստում, կոմունալ տնտեսության մինիստրության մեխանիկական գործարանում և մի շարք այլ ձեռնարկություններում և կազմակերպություններում դեռևս չի ծավալվել մրցություն կոմունիստական աշխատանքի կոչման համար։

Այդ շարժումն անբավարար է ծավալվում տեղական արդյունաբերության, կոմունալ տնտեսության, առևտրի, շինարարության, ավտոտրանսպորտի և գյուղատնտեսության աշխատողների շրջանում։ Բազմաթիվ ձեռնարկություններում փոքր է այդ շարժման մեջ ընդգրկված օժանդակ և տեխնիկական ծառայությունների աշխատողների թիվը։

Կյանքն արդեն ապացուցեց, որ սխալ էր այն կարծիքը, թե կոմունիստական աշխատանքի շարժումը վերաբերում է միայն այն մարդկանց, որոնք անմիջապես աշխատում են նյութական բարիքների արտադրության բնագավառում։ Յուրաքանչյուր կոլեկտիվ կամ անհատ, որտեղ էլ որ նա աշխատի, ելնելով իր աշխատանքի բնույթից, կարող է մասնակցել համաժողովրդական այդ շարժմանը, վերցնել պարտավորություններ և պայքարել այդ պատվավոր կոչմանն արժանանալու համար։

Կան և այնպիսի աշխատողներ, որոնք մտածում են, թե այդ մրցությունը կարելի է ծավալել միայն այն դեպքում, երբ ամեն ինչ ապահովված է, կան նպաստավոր պայմաններ։ Այդ կարգի ընկերները նույնպես սխալվում են։ Մրցություն կարելի է ծավալել ամենուրեք. այն կնպաստի թերությունների վերացմանը և պայմաններ կստեղծի արդյունավետ աշխատանքի համար։

Ուսումնասիրությունները ցույց են տալիս, որ կոմունիստական աշխատանքի կոլեկտիվների և հարվածայինների վերցրած պարտավորությունները բազմաթիվ կազմակերպություններում միակողմանի են, ընդգրկում են միայն արտադրական բնույթի հարցեր, իսկ ուսուցման, դաստիարակության հարցերը մղվում են ետին պլանի վրա։

Ինչպե՞ս են մարդիկ ապրում գործարանի պատերից դուրս, իրենց ընտանիքում և շրջապատում, ինչպե՞ս են սովորում և հանգստանում, ինչո՞վ են հետաքրքրվում, ինչպե՞ս են մասնակցում հասարակական աշխատանքներին և նման այլ հարցեր պետք է հետաքրքրեն մրցության կազմակերպիչներին։ Կոմունիստական աշխատանքի շարժման գլխավոր առանձնահատկությունը հենց այդ է՝ աշխատանքի արտադրողականության բարձրացման համար մղվող պայ-

քարը նոր մարդու, ապագայի մարդու դաստիարակության հետ զուգորդելը: Այն բարերար ազդեցություն է թողնում մրցության մասնակիցների կյանքի և գործունեության վրա, օգնում է հաջողությամբ լուծելու տնտեսական-քաղաքական և գաղափարական խնդիրները:

Միշտ չէ, որ անհրաժեշտ հոգատարություն է ցուցաբերվում պարտավորությունների կատարման համար անհրաժեշտ պայմաններ ստեղծելու նկատմամբ: Հաճախ նյութատեխնիկական աննորմալ մատակարարման, նոր տեխնիկայի ներդրման պլանները չկատարելու պատճառով տեղիք է տրվում պարապուրդների, գրոհայնության և անհամաչափ աշխատանքի:

Առանձին տեղերում հարկ եղած պահանջկոտություն չի ցուցաբերվում ստանձնած պարտավորությունների կատարման գործում, որի հետևանքով դրանք մնում են թղթի վրա:

Ընկ. Լ. Իլյիչովը ՍՄԿԿ Կենտկոմի հունիսյան պլենումում խոսելով ստանձնած պարտավորությունների կատարման կարևորության մասին, ասաց. «Կազմակերպական և գաղափարական միջոցառումների բոլոր ուժերով հարկավոր է բարձրացնել պարտավորությունների նշանակությունը, բարձրացնել պատասխանատվությունը դրանց յուրաքանչյուր տողի համար: Պարտավորություն ես ստանձնել՝ իրագործիր, խոսք ես տվել՝ կատարիր: Իսկ անպատասխանատու «խոստումնամոլներին» հարկավոր է հասարակության խիստ և անաչառ դատին տալ»: Մեր կազմակերպությունների խնդիրն է կատարել պլենումի այդ պահանջը:

Թերություններ կան նաև մրցողներին կոչում շնորհելու գործում: Շատ տեղերում կոմունիստական աշխատանքի կոչումները շնորհվում են նեղ շրջանում, առանց լայն քննարկման դնելու, թույլ է տրվում ոչ լուրջ մոտեցում, կոչումների շնորհման ժամանակ շտապում են, որի հետևանքով երբեմն կոմունիստական աշխատանքի կոչման են արժանանում այնպիսի կոլեկտիվներ ու աշխատողներ, որոնք դեռևս նախապատրաստված չեն դրան: Սովետական իշխանության առաջին տարիներին Վ. Ի. Լենինը վճռականորեն հանդես էր գալիս կոմունիստական ձեռնարկությունների անուն տալուն թեթևակի մոտեցման դեմ: Նա նշում է, որ այդպիսի պատվավոր կոչումը պետք է նվաճել տևական ու համառ աշխատանքով, նվաճել, իրոք, կոմունիստական շինարարության մեջ ապացուցված գործնական հաջողությամբ:

Կոմունիստական աշխատանքի կոլեկտիվների ու հարվածայինների կոչումը պետք է շնորհել այն կոլեկտիվներին ու աշխատողներին, որոնք երկար ժամանակի ընթացքում ունեն բարձր ու կայուն արտադրական ցուցանիշներ, արմատավորում են նոր տեխնիկան, անընդհատ բարձրացնում աշխատանքի արտադրողականությունը, ակտիվ մասնակցում արտադրության ռացիոնալիզացմանը, օգնում են հետ մնացողներին, մշտապես բարձրացնում իրենց հանրակրթական ու կուլտուր-տեխնիկական գիտելիքները, բարելավում աշխատանքն ու կենցաղը, կիրառում կոմունիզմ կառուցողի բարոյական կոդեքսի սկզբունքները:

Դեռևս անբավարար դաստիարակչական աշխատանք է տարվում կոչումներ ստացածների շրջանում. երբեմն կոչումները շնորհելով աշխատանքը համարում են ավարտված: Կոլեկտիվի ժողովներում, արհմիութենական, կոմերիտական կազմակերպություններում չեն լսում կոչում ստացած կոլեկտիվների հաշվետվությունները. այդ ամենի հետևանքով որոշ կոլեկտիվներ ու հարվա-



ծայրիններ իջեցնում են ձեռք բերած ցուցանիշները: Պետք է ամեն կերպ խրախուսել կոչում ստացածներին: Յուրաքանչյուր կազմակերպություն պետք է ունենա վկայականներ՝ նրանց տալու համար. պետք է կատարվի համապատասխան գրանցումներ կոչման արժանացած ընկերների աշխատանքային գրքույկներում:

Կոմունիստական աշխատանքի շարժման ծավալման բնագավառում խոշոր նշանակություն ունի առաջավոր փորձի տարածումը: Պետք է միշտ հիշել, որ աշխատանքի նկատմամբ կոմունիստական վերաբերմունքի սերմանումը՝ դա առաջին հերթին մարդկանց դաստիարակությունն է լավագույն օրինակների հիման վրա: Ահա թե ինչու պարտիական, արհմիութենական և կոմերիտական կազմակերպությունները պետք է լրջորեն բարելավեն առաջավոր փորձի պրոպագանդան ու արմատավորումը, որը հետ մնացողներին օգնելու լավագույն միջոցն է: Նպատակահարմար է կոմունիստական աշխատանքի կոլեկտիվների բազայի վրա ստեղծել ցուցադրական ցեխեր, բաժանմունքներ ու ֆերմաներ, կազմակերպել առաջավոր փորձի դպրոցներ, անցկացնել սեմինարներ, տեխնիկական կոնֆերանսներ, փորձի փոխանակման ճյուղային խորհրդակցություններ և այլն:

Կոմունիստական աշխատանքի շարժման առաջավորների փորձի տարածման գործում մեծ անելիքներ ունեն ստեղծագործական միությունները, ռադիոն, հեռուստատեսությունը, մամուլը: Նրանք պետք է լայնորեն պրոպագանդեն առաջավորների փորձը: Արվեստի ու գրականության աշխատողներն իրենց ստեղծագործություններում պետք է վառ կերպով արտացոլեն կոմունիստական հասարակարգ կառուցողների հայրենանվեր աշխատանքը: Անհրաժեշտ է բարելավել կոմունիստական աշխատանքի շարժման ղեկավարումը, պաշտպանել նրա բոլոր ձևերը, ընդլայնել ռացիոնալիզատորների ու գյուտարարների, գիտատեխնիկական ընկերությունների, աշխատավորների ինքնագործ ստեղծագործական կոլեկտիվների շարքերը. կոմունիստական աշխատանքի շարժման մեջ ներգրավել աշխատավորական նորանոր զանգվածներ և հասնել այն բանին, որ այդ շարժումն ավելի ու ավելի մասսայական, համաժողովրդական դառնա:

Կոմունիստական աշխատանքը հաղթանակում է. այն դուրս է եկել լայն ճանապարհ և օրըստօրե տարածվում է խորությամբ ու լայնությամբ: «Կոմունիստական աշխատանքի շարժման մասնակիցներն այժմ արդեն ոչ միայն ապագայի հետախույզներն են,— ասում է ընկեր Խրուշչովը,— նրանք կոմունիզմ կառուցողների իսկական գվարդիան են»:



# ԱՐՏԱԴՐՈՂԱԿԱՆ ԱՇԽԱՏԱՆՔԸ ՍՈՑԻԱԼԻԶՄԻ ԺԱՄԱՆԱԿ

Ս. ՄԻՔԱՅԵԼՅԱՆ

1.

Եթե մենք վերանանք աշխատանքի հանրորեն որոշակի ձևից, արտադրողական աշխատանքը մարդու այնպիսի նպատակահարմար գործունեությունն է, որի ընթացքում աշխատամիջոցների օգնությամբ մարդը նախանշված փոփոխություն է կատարում աշխատանքի առարկայի մեջ և այն դարձնում մարդու պահանջմունքը բավարարող սպառարժեք, արտադրում է նյութական բարիք: Արտադրողական աշխատանքը հավերժական անհրաժեշտություն է, մարդկային հասարակության գոյության հիմքը: Նկատի ունենալով նյութական բարիքի արտադրությունը որպես աշխատանքի պարզ պրոցես, որպես «զուտ անհատական» աշխատանք, վերացականորեն՝ որպես մարդու և բնության միջև կատարվող պրոցես, անկախ նրա պատմական ձևերից, Մարքսը գրում է. «Եթե ամբողջ պրոցեսը քննենք նրա հետևանքի — արդյունքի տեսակետից, ապա թե՛ աշխատանքի միջոցը և թե՛ աշխատանքի առարկան, երկուսն էլ հանդես են գալիս որպես արտադրամիջոցներ, իսկ ինքը աշխատանքը՝ որպես **արտադրողական** աշխատանք» («Կապիտալ», հատոր I, էջ 192: Ընդգծումը մերն է: Ս. Մ.):

Հասարակության արտադրողական ուժերի զարգացման, հատկապես մեքենայական արտադրության հանդես գալու շնորհիվ «զուտ անհատական» աշխատանքը վերածվում է համագործակցված, կոմբինացված աշխատանքի: Անհատական արտադրողի անմիջական արդյունքը դառնում է հասարակական արդյունք, **հավաքական բանվորի** ընդհանուր արդյունք: Համապատասխանաբար ընդլայնվում է արտադրողական աշխատանքի շրջանակը: Հավաքական բանվորի մասը կազմող առանձին անդամները կատարում են նյութական բարիքի արտադրության որևէ ենթաֆունկցիա՝ ֆիզիկական կամ մտավոր, ու միասին գլուխ բերում նյութական բարիքի արտադրությունը: Ուստի վերը բերված՝ Մարքսի սահմանումը, չհամապատասխանելով հավաքական բանվորի ամեն մի անդամին առանձին վերցրած, «միշտ պահպանում է իր նշանակությունը հավաքական բանվորի նկատմամբ» (Մարքս, նույն տեղում, էջ 532: Ընդգծումը մերն է: Ս. Մ.):

Արտադրողական աշխատանքի ոլորտը նյութական բարիքների արտադրությունն է: Սակայն արտադրողական լինելու համար դեռ բավական չէ նյութական արտադրության մեջ զբաղված լինելը: Հարկավոր է, որ նյութական բա-



րիքի արտադրության վրա ծախսված լինի տվյալ պայմանների համար հան-
րորեն անհրաժեշտ աշխատաժամանակ, որովհետև դրանից ավելի ծախսված
աշխատանքը կորուստ է հասարակության համար, ինքնակողոպուտ, իսկ աշ-
խատանքի արդյունքը պետք է գերազանցի արտադրողի կողմից ծախսված
անհրաժեշտ արդյունքին: Առանց հավելյալ արդյունքի առկայության չի կարող
զարգանալ ոչ մի հասարակություն: «Հավելյալ աշխատանքն առհասարակ,
իբրև տվյալ պահանջմունքների չափից վեր աշխատանք, պետք է գոյություն
ունենա մշտապես» (Մարքս, Կապիտալ, հատոր III, մաս II, էջ 359): Միայն
արտադրողական աշխատանքով է ստեղծվում ազգային եկամուտը, որի մե-
ծությունը, այլ հավասար պայմաններում, կախված է ո՛չ միայն կիրառվող
աշխատանքի մասսայից, այլև աշխատանքի արտադրողականության մակար-
դակից: Արտադրողական աշխատանքը համառոտակիորեն արտահայտում է
ամբողջականությունն ու հատուկ բնույթը այն հարաբերության, որի պրոցե-
սում հանդես է գալիս աշխատուժն արտադրության մեջ:
Արտադրողական աշխատանքից պետք է տարբերել առհասարակ հանր-
օգուտ աշխատանքը: Հանրօգուտ ամեն մի աշխատանքի հետևանքը միշտ չէ,
որ նյութական բարիք է լինում, ուստի և չի կարող արտադրողական աշխա-
տանք համարվել: Այն ամբողջ աշխատանքը, որն սպասարկում է հասարա-
կության անդամների գեղագիտական, լուսավորության, առողջապահության,
կուլտուրական աճի պահանջմունքները, հանրօգուտ աշխատանք է, շատ կա-
րևոր է հասարակական օրգանիզմի նորմալ գործունեության համար, սակայն
տնտեսական իմաստով արտադրողական աշխատանք չէ: Բայց ամեն մի ար-
տադրողական աշխատանք, անկասկած, հանրօգուտ աշխատանք է:

2.

ԱՇԽԱՏԱՆՔԸ գոյություն ունի պատմականորեն միշտ կոնկրետ
պայմաններում, որպես հանրորեն որոշակի աշխատանք: Փոխվում
են արտադրահարաբերությունները, փոխվում է արտադրամիջոց-
ների սեփականության ձևը, համապատասխանաբար փոխվում է
նաև աշխատանքի սոցիալական բնույթը: Ամեն մի արտադրաեղանակ իր
կնիքն է դնում արտադրողական աշխատանքի բնույթի վրա, նեղացնում կամ
ընդլայնում է արտադրողական աշխատանքի բովանդակությունը, նրան տա-
լիս տվյալ արտադրաեղանակի տնտեսական օրենքների գործողությամբ պայ-
մանավորված յուրահատկության գծեր:
Կապիտալիստական արտադրաեղանակի պայմաններում հավելյալ ար-
դյունքը հանդես է գալիս հավելյալ արժեքի ձևով: Հետևաբար, արտադրո-
ղական է այն աշխատանքը, որն ստեղծում է հավելյալ արժեք աշխատար-
դյունքի ձևով, կամ մեծացնում աշխատարդյունքի արժեքը: Այլ կերպ ասած,
այն ենթադրում է աշխատանքի **անմիջական** փոխանակությունը կապիտալի
հետ, որը կնշանակի՝ «1) աշխատանքի անմիջական փոխարկումը կապիտալի,
կապիտալի իրային բաղադրամասի, փոխարկում, որը տեղի է ունենում ար-
տադրության պրոցեսում. 2) որոշակի քանակի իրայնացած աշխատանքի փո-
խանակությունը նույն քանակի կենդանի աշխատանքի հետ, գումարած կեն-
դանի աշխատանքի լրացուցիչ մի քանակ, որ յուրացվում է **առանց փոխանա-**

կությաճ» (К. Маркс, Теории прибавочной стоимости (IV том «Капита-
ла»), ч. I, M., 1954, էջ 383)։
Արտադրության մեջ ստեղծված հավելյալ արժեքը յուրացնում են ոչ մի-
այն արդյունաբերող կապիտալիստները շահույթի ձևով, այլև առևտրական
կապիտալիստներն առևտրային շահույթի և բանկիրները՝ փոխատվական տո-
կոսի ձևով։ Զուտ շրջանառության ու վարկի ոլորտներում կիրառվող վարձու
աշխատանքն իր տերերի համար ստեղծում է հավելյալ արժեքի բաշխմանը
մասնակցելու հնարավորություն, բայց այդ աշխատանքը ինքն անմիջաբար
հավելյալ արժեք չի ստեղծում, արտադրողական աշխատանք չէ։
Արտադրողական աշխատանքի հասկացությունը Մարքսը քննում է հասա-
րակության տեսակետից և առանձին կապիտալիստի տեսակետից։ Կապիտա-
լիստը կարող է վարձել ուսուցչին, դերասանին, երգչին, նկարչին, ժուռնա-
լիստին և այլոց ու օգտագործել նրանց աշխատանքն իր կապիտալի ինքնաճման
համար։ Նրա տեսակետից միևնույն է, թե նրա կապիտալը որ ոլորտում
է դրված, նյութակա՞ն արտադրության, թե՞ ոչ-նյութական արտադրության։
Կարևորը հետևանքն է, այն, որ կապիտալն ինքնաճում է։ Այս շեղում է նշա-
նակում արտադրողական աշխատանքի բնորոշման ընդհանուր կանոնից և բա-
ցատրելի է արտադրողական աշխատանքի ճիշտ ըմբռնման հիման վրա, կա-
պիտալիստական արտադրաեղանակի հիմնական տնտեսական օրենքի՝ հա-
վելյալ արժեքի արտադրության ու յուրացման հիման վրա։ Կապիտալիստա-
կան արտադրության էությունն ու նպատակը հավելյալ արժեքի արտադրու-
թյունն է, որը հիմնված է շահագործման հարաբերությունների վրա։ Դրա հա-
մար էլ «արտադրողական բանվոր լինելն ամենևին բախտավորություն չէ, այլ
մի անեծք է»,— ասում է Մարքսը (Կապիտալ, հատոր I, էջ 532)։
Կապիտալիզմը նեղացնում է արտադրողական աշխատանքի հասկացու-
թյունը, սահմանափակելով այն հավելյալ արժեք արտադրող կամ կապիտալի
արժեքի ինքնաճումն ապահովող աշխատանքով։ Կապիտալիստի տեսակետից
արհեստավորների և մանր արտադրողների (գյուղացիների) աշխատանքը ար-
տադրողական չէ, քանի դեռ այն ենթարկված չէ կապիտալին։
Հավելյալ արդյունքի երևան գալուց սկսած, հասարակության ամբողջա-
կան աշխատանքը չի կլանվում նյութական արտադրության ոլորտում։ Աշխա-
տանքի արտադրողականության բարձրացումը մարդկանց առանձին խմբերի
հնարավորություն է ընձեռում անմիջականորեն չմասնակցել նյութական ար-
տադրությանը։ Աշխատանքի ոչ-արտադրողական ֆունկցիաների առանձնա-
ցումը պատմականորեն նպաստել է աշխատանքի ընդհանուր խնայողությանը
և աշխատանքի արտադրողականության բարձրացմանը։ Հասարակության
զարգացման տարբեր ժամանակաշրջաններում հասարակության ամբողջական
աշխատանքը տարբեր համամասնություններով է բաշխվում նյութական և ոչ-
նյութական արտադրության ոլորտների միջև, արտադրողական և ոչ-արտադրո-
ղական աշխատանքի միջև։ Ի դեպ, իրավացի չէ Մ. Դանիելյանը, երբ կարծում
է, թե աշխատանքի բաշխումը արտադրողական և ոչ-արտադրողական աշխա-
տանքի ծագել է կապիտալիզմի ժամանակ և օրգանապես կապված է կապի-
տալիստական արտադրաեղանակի հետ (տե՛ս М. Даниелян, О противопо-
ложности между умсıвенным и физическим трудом. Ереван, 1957 год,
стр. 8)։
Նյութական արտադրության ոլորտում հավաքական բանվորի արտադրո-



ղական աշխատանքի հետ միասին տեղի ունի նաև ոչ-արտադրողական աշխա-
տանք, ինչպես օրինակ, արտադրանքի ինքնարժեքն ու գները հաշվարկելու
հետ կապված աշխատանքը, որը նյութական բարիք չի ստեղծում և լոկ ար-
տացոլում է նյութական բարիքների արտադրության, ձեռնարկության ար-
տադրական ֆոնդերի շրջապտույտի պրոցեսն արժեքային ձևով։ Եվ, ընդհա-
կառակն, ոչ-նյութական արտադրության ոլորտում տեղի ունի նյութական
բարիքի արտադրության պրոցես, ինչպես, օրինակ, պարիկների, քուլքների,
շրթնաներկերի և այլնի արտադրությունը թատերական ընկերության ձեռնար-
կություններում, զանազան հրդեհապաշտպան պիտույքների (կրակմարիչներ և
այլն) արտադրությունը կամավոր հրշեջ ընկերության ձեռնարկություններում և
այլն։ Հետևապես, հասարակության ամբողջական աշխատանքի բաշխումը նյու-
թական և ոչ-նյութական ոլորտների միջև, ինչպես այդ ընդունված է վիճակա-
գրական պրակտիկայում, չի համընկնում այդ նույն աշխատանքի արտադրո-
ղական և ոչ-արտադրողական մասերի բաշխման հետ։
Արտադրողական աշխատանքի էության ճիշտ բնորոշումը և սահմանազա-
տումը ոչ-արտադրողական աշխատանքից ունի ո՛չ միայն տեսական, այլև
գործնական նշանակություն ազգային եկամտի աղբյուրներն ու չափը որոշելու,
աշխատանքային ռեսուրսներն ավելի արդյունավետ օգտագործելու տեսակե-
տից։ Բուրժուական տնտեսագետներն արտադրողական, հետևապես և ազգա-
յին եկամուտ ստեղծող են համարում ամեն մի աշխատանք, որը եկամուտ է
բերում։ Մերկացնելով կապիտալիզմի այս ջատագովումը, Մարքսը նշում էր,
թե այդ տրամաբանությամբ հանցագործությունը, գողությունը, մթերքների ու
դրամանիշների կեղծումը նույնպես հարկավոր է արտադրողական աշխատանք
համարել, որովհետև դրանք առաջացնում են քրեական իրավունք, պրոֆեսոր-
ներ, որոնք ավանդում են այդ և հրատարակում իրենց դասընթացները, ոս-
տիկանություն, դատավորներ, դահիճներ, հավատարմատարներ, արվեստ, գե-
ղարվեստական գրականություն, փականքներ, գործնական քիմիա և այլ «օգ-
տակար» բնամարզերի պրոֆեսիաներ։
Արտադրողական աշխատանքի այսպիսի բնորոշումը թերևս ձեռնտու է
բուրժուազիայի համար, որովհետև նյութական բարիքներ ստեղծող բանվորի
հետ արտադրողական են դառնում կապիտալիստն ու բանկիրը, գողն ու հան-
ցագործը, ոստիկանը, դահիճը, քահանան և ամեն մի պորտաբույծ ընդհանրա-
պես։ Դրա հետ միաժամանակ այդ «թեորիաների» հիման վրա հաշվարկված
ազգային եկամուտը կրկնահաշվումների հետևանքով գերազանցում է իրակա-
նում ստեղծված ազգային եկամտի փաստական մեծությունը։ Ամերիկայի
Միացյալ Նահանգների ազգային եկամտի պաշտոնական վիճակագրության մեջ
կրկնահաշվի տեսակարար կշիռը հետպատերազմյան շրջանում կազմում է
21-ից մինչև 31 տոկոս։
Արտադրողական և ոչ-արտադրողական աշխատանքի համամասնությունը
պայմանավորված է տվյալ արտադրաեղանակի յուրահատուկ տնտեսական
օրենքների գործողությամբ և հասարակության արտադրողական ուժերի զար-
գացման մակարդակով։ Արտադրողական աշխատանքը նյութական հնարավո-
րություններ է ստեղծում ոչ-արտադրական ոլորտում զբաղված մարդկանց գոր-
ծունեության համար։

### 3.

Սոցիալիզմն արմատապես փոխում է աշխատանքի հասարակական բնույթը, ընդարձակում է արտադրողական աշխատանքի շրջանակները։ Արտադրամիջոցների հանրային սեփականությունը բացառում է մարդու շահագործման հնարավորությունը, վերանում են շահագործող դասակարգերը և դրա հետ միասին՝ պարազիտային սպառումը։ Ժողովրդական տնտեսության պլանաչափ զարգացումն ապահովում է վերարտադրության անընդհատ ընդլայնում առանց ցիկլերի և տնտեսական ճգնաժամերի։ Արտադրամիջոցների հասարակական սեփականության հիման վրա աշխատանքն ստանում է անմիջական հասարակական բնույթ, ընդարձակվում են աշխատանքի սոցիալիստական կոոպերացիայի շրջանակները կամ, որ միևնույնն է, աշխատանքի հանրայնացման աստիճանը, փոխվում է ո՛չ միայն հավաքական բանվորի կառուցվածքը մտավոր ու ֆիզիկական աշխատանք կատարողների հարաբերակցության տեսակետից, այլև հավաքական բանվորի ու արտադրողական աշխատանքի սոցիալական բովանդակությունը։

Անձնական նյութական շահագրգռվածության և աշխատանքի բարոյական ազդակների զուգակցման լենինյան սկզբունքների ճիշտ կիրառումն արդյունաբերության ու կոլտնտեսային արտադրության մեջ սոցիալիզմի հիմնական տնտեսական օրենքի գործողության և սոցիալիստական հասարակության բարոյա-քաղաքական միասնության պայմաններում ապահովում են աշխատանքային ռեսուրսների առավել արդյունավետ օգտագործումը և հասարակական աշխատանքի արտադրողականության բարձրացման անշեղ աճը։

Անժխտելի են սոցիալիզմի առավելություններն արտադրության և աշխատանքի հասարակական կազմակերպման ասպարեզում կապիտալիզմի համեմատությամբ։

Բավական է ասել, որ ԱՄՆ-ի արդյունաբերությունը միայն 1948—1949, 1953—1954 և 1957—1958 թվականների տնտեսական ճգնաժամերի հետևանքով ունեցել է, մոտավոր հաշիվներով, 115 միլիարդ դոլարի կորուստ և, բացի այդ, արտադրության զարգացման տեմպերի դանդաղեցման հետևանքով՝ 300 միլիարդ դոլարի չափով անուղղակի կորուստներ, ընդամենը 415 միլիարդ դոլար։ Գործազուրկների պատճառով տեղի ունեցած կորուստը միայն 1950—1959 թվականների ընթացքում կազմել է ԱՄՆ-ում 314 միլիոն 900 հազար մարդ-օր. 1959 թվականին լրիվ գործազուրկների թիվը հասնում էր 3 միլիոն 813 հազար հոգու (տե՛ս «Монополистический капитализм-империализм». М., 1961, էջ 448, 400 և 393)։ Առանձին տարիներում լրիվ գործազուրկների թիվը գերազանցել է հինգ միլիոնից։ Դրանից զատ բավական մեծ է կիսագործազուրկների բանակը։ Եվ այսպես, եթե վերցնելու լինենք կապիտալիստական ողջ աշխարհը, ինչպիսի՜ հսկայական կորուստներ է կրում հասարակությունը արտադրության կապիտալիստական բնույթի պատճառով։

Վերացնելով շահագործման հարաբերությունները և հասարակության աշխատանքային ռեսուրսները պլանաչափորեն բաշխելով արտադրողական և ոչ-արտադրողական ոլորտների միջև, սոցիալիզմն ապահովում է աշխատանքային ծախսումների հասարակական օգտակարությունը։

Արտադրողական աշխատանքը սոցիալիզմի ժամանակ աշխատանք է, որն ուղղակի ապահովում է ամբողջական հասարակական արդյունքի, անհրա-





ժեշտ և հավելյալ արդյունքի ընդլայնված վերարտադրությունը, ստեղծում է նյութական հիմք սոցիալիստական արտադրահարաբերությունները կոմունիստականի վերաճելու համար։

Արտադրողական աշխատանքի հիմնական ոլորտը նյութական արտադրության ճյուղերն են՝ արդյունաբերությունը, գյուղատնտեսությունը, շինարարությունը, տրանսպորտն ու կապը, նյութատեխնիկական մատակարարումը, մթերումները, առևտուրն այն մասով, որը ներկայացնում է արտադրության պրոցեսի շարունակությունը շրջանառության մեջ։ Նյութական արտադրության ճյուղերում կատարվող արտադրողական աշխատանքի ծավալից ու արդյունավետությունից է կախված մարդկանց գործունեությունը ոչ-նյութական (հոգևոր)
արտադրության ճյուղերում, այն է՝ առողջապահություն, լուսավորություն, գիտա-հետազոտական աշխատանք, արվեստ (թատրոն, երաժշտություն, կենդանագրություն, քանդակագործություն, գեղարվեստական գրականություն և
այլն), պետական կառավարում, բանակ, կուլտուրական կազմակերպություն-
ների գործունեություն, կոմունալ տնտեսություն և այլն, ուր աշխատանքը,
հանրորեն անհրաժեշտ և օգտակար լինելով հանդերձ, արտադրողական չէ։

Արտադրողական և ոչ-արտադրողական աշխատանքի ոլորտների միջև
անխուսափելիորեն տեղի ունի գործունեության փոխադարձ փոխանակություն
բոլոր արտադրաեղանակների պայմաններում, սակայն տարբեր է դրա սոցիա-
լական բովանդակությունը։

Կապիտալիզմի պայմաններում շահագործման հարաբերությունների տի-
րապետությունը և կապիտալիզմի հիմնական տնտեսական օրենքի գործողու-
թյունն իրենց արտացոլումն են գտնում այն բանի մեջ, որ երկու ոլորտներն էլ
ըստ էության ենթարկված են աճող չափերով հավելյալ արժեք քամելուն, իշ-
խող դասակարգերի պորտաբուծային պահանջմունքները բավարարելուն, աշ-
խատավորների մեծամասնության նկատմամբ շահագործող փոքրամասնու-
թյան տիրապետությունն ամրապնդելուն։ Ոչ-արտադրողական աշխատանքի
յուրահատուկ առանձնահատկությունը անտագոնիստական հասարակություն-
ներում, առհասարակ արտադրողական աշխատանքով զբաղված մարդկանց
շահագործման պրոցեսի կազմակերպումն է։

Այլ է բանը սոցիալիզմի ժամանակ։ Շահագործող դասակարգերի վերաց-
ման շնորհիվ վերացել է նաև ոչ-արտադրողական աշխատանքի, կապիտալիզ-
մի ժամանակի համար բնորոշ, պորտաբուծային բնույթը։ Ոչ-արտադրողական
աշխատանքով զբաղված մարդկանց գործունեությունը հիմնականում ուղղված
է այն բանին, որպեսզի բարձր տեմպերով աճեն հասարակության արտադրողական ուժերը, ապահովվի հիմնական արտադրողական ուժի՝ մարդու ֆիզիկական ու հոգևոր զարգացումը։ Նման պայմաններում խոշոր նշանակություն է ստանում գիտությունը, որը, Մարքսի արտահայտությամբ, դառնում է անմիջական արտադրողական ուժ։

Հասարակության արտադրողական ուժերի զարգացմանը համընթաց փոխվում ու փոխվելու է արտադրողական և ոչ-արտադրողական աշխատանքների հարաբերակցությունը։ Այդ փոփոխության պատմական տենդենցը նյութական արտադրության ճյուղերում նյութական բարիքների բուն արտադրությամբ զբաղված մարդկանց (հավաքական բանվորի) տեսակարար կշռի աճն է, իսկ ողջ հասարակության մասշտաբով, ընդհակառակն, ոչ-նյութական (հոգևոր) արտադրության ճյուղերում կատարվող աշխատանքի տեսակարար կշռի աճը։

«Երկիրն այնքան հարուստ է,—ասում է Մարքսը,—որքան փոքր է, պրոդուկտների միևնույն քանակի դեպքում, արտադրողական բնակչությունը ոչ-արտադրողական բնակչության նկատմամբ։ Չէ որ արտադրողական բնակչության հարաբերական փոքրաթիվությունը կլիներ արտադրողական աշխատանքի հարաբերական բարձրության սոսկ այլ արտահայտությունը» (К. Маркс, Теории прибавочной стоимости (IV том «Капитала»), ч. I, М. 1954, էջ 200)։

## 4.

Սովետական տնտեսագիտական ու փիլիսոփայական գրականության մեջ մերթ ընդ մերթ քննարկվել ու քննարկվում է արտադրողական աշխատանքի հարցը սոցիալիստական արտադրաեղանակի տեսանկյունից և պետք է ասել, արտահայտվել ու արտահայտվում են տարբեր, երբեմն իրարամերժ տեսակետներ։

Այսպես, օրինակ, 1929 թվականին հրատարակված Բ. Կոֆմանի Արտադրողական աշխատանքը և Մարքսի մեթոդը բրոշյուրի առաջաբանում, որ գրված է Լենինգրադի այն ժամանակվա՝ մարքսիզմի գիտա-հետազոտական ինստիտուտի տնտեսագիտական սեկցիայի նախագահության կողմից, ասված է. «Սոցիալիստական արտադրաեղանակի պայմաններում վերացվում է հոգևոր արտադրության տարանջատումը նյութականից և հասարակական արտադրության կազմի մեջ մտցվում են բոլոր տեսակների մարդկային աշխատանքի պրոդուկտները, որոնք բավարարում են հասարակության պահանջմունքները և, դրանով իսկ, դադարում է գոյություն ունենալուց ինքը՝ արտադրողական աշխատանքի պրոբլեմը» (Б. Кофман, Производительный труд и метод Маркса. Л. 1929, էջ 16։ Ընդգծումը մերն է։ Ս. Մ.)։

Ըստ էության նույն տեսակետին է Պ. Ռաչկովը, որն արտադրողական է համարում «ամեն մի աշխատանք նյութական ու հոգևոր արտադրության բնագավառում»։ Նա գրում է. «Սոցիալիզմի ժամ–նակ նյութական արտադրության բոլոր մասնակիցների հետ միասին արտադրողական աշխատողների թվին են պատկանում մարդիկ, որոնք զբաղված են գիտության, արվեստի բնագավառում, ինչպես և դաստիարակության, ուսուցման, ղեկավարության, ժողովրդական տնտեսության կազմակերպման, պետության կառավարման հարցերով և այլն» (տե՛ս նրա հոդվածը «О производительном труде в условиях социализма». «Вопросы философии» 1958, № 6, էջ 187)։ Մասնավորապես պետության կառավարման գործով զբաղված մարդկանց աշխատանքն արտադրողական աշխատանք համարելը հեղինակը պատճառաբանում է սոցիալիստական պետության տնտեսական դերի փոփոխությամբ։

Արտադրողական աշխատանքի այսպիսի սահմանումը ո՛չ միայն հակասում է մարքսյան ըմբռնումին, այլև ջնջում է մարդու գործունեության երկու ոլորտների տարբերությունը, կամ, որ միևնույնն է, նույնացնում է «արտադրողական աշխատանք» և «օգտակար աշխատանք» հասկացությունները։

Ավելի հեշտ է «լուծում» հարցը Ս. Պերվուշինը։ Նա արտադրողական աշխատանքի բնորոշումը սոցիալիզմի ժամանակ որպես անհրաժեշտ ու հավելյալ արդյունք արտադրող աշխատանք, հայտարարում է կապիտալիզմի համար սահմանված արտադրողական աշխատանքի «մոդեռնացված» բնորոշում և գտնում, որ ուշադրության արժանի է այն տեսակետը, ըստ որի ճիշտ չէ աշխատանքի տրոհումը արտադրողական և ոչ-արտադրողական աշխատանքի (տե՛ս С. П. Первушин, Некоторые проблемы перехода от социализма к коммунизму. М. 1960, էջ 64 և 66)։

Մյուս հեղինակներն ընդունում են արտադրողական և ոչ-արտադրողական աշխատանքի առկայությունը սոցիալիզմի ժամանակ, սակայն նրանց բոլոր եզրակացությունների հետ չէ, որ կարելի է համաձայնել։ Այսպես, օրինակ, իրավացիորեն մատնանշելով, որ արտադրողական աշխատանքի կատեգորիան արտահայտում է աշխատանքի ո՛չ միայն նյութական բովանդակությունը, այլև աշխատանքի հասարակական բնույթը և սխալմամբ վերագրելով արտադրողական աշխատանքի այդ բնորոշումը լոկ կապիտալիզմին, Յա. Կրոնրոդը, ընդունելով հանդերձ, որ մարքսիզմ-լենինիզմի կլասիկները բոլոր ֆորմացիաներում, այդ թվում նաև սոցիալիզմի, խստորեն սահմանազատում են արտադրողական և ոչ-արտադրողական աշխատանքը (տե՛ս Я. А. Кронрод. Социалистическое воспроизводство. М. 1955, էջ 140), գտնում է, որ «արտադրողական աշխատանք» և «ոչ-արտադրողական աշխատանք» տերմինները պիտանի չեն հասարակության ամբողջական աշխատանքը սոցիալիզմի ժամանակ տրոհելու կոնկրետ-պատմական բնույթն արտահայտելու համար։ Ուստի նա առաջարկում է «արտադրողական աշխատանք» տերմինը սոցիալիզմի ժամանակաշրջանի համար փոխարինել «նյութական-արտադրողական աշխատանք» տերմինով, իսկ «ոչ-արտադրողական աշխատանք» տերմինը՝ «հանրօգուտ ոչ-արտադրողական աշխատանք» տերմինով (տե՛ս նույն տեղում, էջ 145—146)։

Այսպիսի տերմինափոխություն, մեր կարծիքով, հարկավոր չէ։ Արտադրողական աշխատանքը միշտ ենթադրում է նյութական արտադրություն, վերաբերում է արտադրության ֆազին և «նյութական-արտադրողական աշխատանք» տերմինը նոր ոչինչ չի տալիս, թեկուզ և սոցիալիզմի ժամանակ առկա է արտադրողական աշխատանքի սոցիալական բովանդակության արմատական փոփոխություն։ Նույնը պետք է ասել նաև «հանրօգուտ ոչ-արտադրողական աշխատանք» տերմինի վերաբերյալ։ «Հանրորեն-որոշակի աշխատանքը» Մարքսի տերմինաբանությամբ չի սահմանափակվում կապիտալիստական արտադրաեղանակով։ «Արտադրողական աշխատանք» և «ոչ-արտադրողական աշխատանք» տերմինները չեն խանգարում ամբողջական աշխատանքի տրոհման առանձնահատկությունների բացահայտմանը, արտադրողական աշխատանքի բովանդակության ու սահմանների արմատական տարբերությունները, նրա փոխհարաբերությունները ոչ-արտադրողական աշխատանքի նկատմամբ և միասին վերցրած՝ արտադրողական և ոչ-արտադրողական աշխատանքի բնույթը տարբեր արտադրաեղանակների պայմաններում պարզելուն։

Կան տարաձայնություններ արտադրողական աշխատանքի հասկացության նաև առանձին հարցերի շուրջ։ Այս հոդվածում կանգ առնենք դրանցից երեքի վրա։ Առաջինը «նյութական արտադրություն» և «արտադրողական աշխատանք» հասկացությունների նույնացումն է։ Դա իր արտահայտությունն է գտնում այն բանում, որ այդ հասկացությունները նույնացնողները տարակուսում են, թե ինչպե՞ս կարելի է արտադրությանը սպասարկող աշխատանքը տրանսպորտում համարել արտադրողական աշխատանք, իսկ մարդկանց փոխադրությանը սպասարկող աշխատանքը՝ ոչ-արտադրողական։ Նրանք հարցնում են, ի՞նչ տարբերություն մեքենավարի համար, փոխադրում է նա արտադրու-

թյան անհրաժեշտ միջոցներ ու արտադրանք, թե ուղևորներ։ Ս. Պերվուշինը վերը հիշատակված աշխատության մեջ գրում է. եթե Մոսկվայի մետրոյի վարորդները ձեռնարկությունների բանվորներին ժամանակին աշխատատեղի չհասցնեն, դրանից բանվորների արտադրողական աշխատանքը խստորեն կիջնի (տե՛ս հիշատակված աշխատությունը, էջ 66)։ Նման պատճառաբանությունները մի կողմ են թողնում արտադրողական աշխատանքի էական կողմը։

Նմանօրինակ սխալ է կատարում նաև Վ. Ներկարարյանը, 1962 թվականին լույս ընծայած «Արտադրողական և անարտադրողական աշխատանքը սոցիալիզմի ժամանակ» վերնագիրը կրող հանրամատչելի և հիմնականում հաջողված իր բրոշյուրում (մենք ճիշտ չենք համարում «անարտադրողական աշխատանք» տերմինը և, ինչպես նկատել է ընթերցողը, գործ ենք ածում «ոչ-արտադրողական աշխատանք» տերմինը։ Միշտ չէ, որ ռուսերենի не ժխտական նախածանցը կարելի է թարգմանել ան նախածանցով)։

Վ. Ներկարարյանն էլ կարծում է, որ եթե տրանսպորտը նյութական արտադրության ճյուղ է հանդիսանում, ապա նրանում կիրառվող ամեն մի աշխատանք անխտիր արտադրողական է։ Տրանսպորտում կիրառված ամբողջ աշխատանքն արտադրողական համարելով, նա դժգոհում է, որ ՍՍՌՄ վիճակագրությունն իբր նվազեցնում է հասարակական ամբողջ արդյունքի մեջ տրանսպորտի բաժինը, արտադրողական համարելով արտադրությանն սպասարկող աշխատանքը, կամ այլ կերպ ասած՝ բեռնատար տրանսպորտը (տե՛ս նրա բրոշյուրը, էջ 61)։ Զարմանալին այն է, որ վկայակոչելով Մարքսի ասույթը «Հավելյալ արժեքի թեորիաներ» աշխատությունից, որ տրանսպորտը նյութական արտադրության ճյուղ է, միևնույն է, այն մարդիկ է փոխադրում թե ապրանք, Վ. Ներկարարյանը աչքաթող է անում, որ մարդկանց տեղափոխումը միայն ծառայություն է, որի ընթացքում ոչ մի արժեք չի ստեղծվում, ուստի և մարդկանց տեղափոխումը սպասարկող աշխատանքն արտադրողական աշխատանք չէ։ Այլ է բանը ապրանքների տեղափոխման ժամանակ. ապրանքների արժեքն այս դեպքում աճում է ապրանքների տարածական կեցությունը փոխելու հետևանքով առարկայացած ու կենդանի այն աշխատանքի քանակի չափով, որը պահանջվում է տեղափոխման համար (տե՛ս К. Маркс, Теории прибавочной стоимости (IV т. «Капитала»). М. 1954, էջ 398)։ Տարածական տեղափոխություն է կատարվում նաև բուն արտադրության պրոցեսում։ Գործի էությունը չի փոխվում, երբ այդ տեղափոխությունը կատարվում է ձեռնարկության շրջանակներից դուրս, երբ հարկավոր է սպառարժեքն արտադրության վայրից հասցնել սպառման վայրը, ուր և պոտենցիալ սպառարժեքը դառնում է իրական սպառարժեք։ Ապրանքների տեղափոխման (բեռնատար տրանսպորտի) աշխատանքն է հենց, որ արտադրողական աշխատանք է։ «Եվ թեկուզ իրական աշխատանքն ընդմին ոչ մի հետևանք չի թողել սպառողական արժեքի մեջ, այնուամենայնիվ աշխատանքն իրացվել է տվյալ նյութական արդյունքի փոխանակային արժեքի մեջ։ Տրանսպորտային արդյունաբերության համար, հետևաբար, ուժի մեջ է այն, ինչ և նյութական արտադրության մյուս բոլոր ճյուղերի համար՝ աշխատանքն այս ճյուղում ևս մարմնանում է ապրանքի մեջ, թեկուզ և ապրանքի սպառարժեքի վրա չի թողնում նկատելի ոչ մի հետք»,— ասում է Մարքսը նույն տեղում։ Պարզ է, որ այս չի վերաբերում մարդատար տրանսպորտին։ Հարցը նույն կերպ է լուծվում նաև կապի համար։



Երկրորդ հարցը վերաբերում է գիտությանը։ Երկրի արտադրողական ուժերի զարգացման ու նյութական բարիքների առատություն ստեղծելու գործում մեծ է գիտության դերը։ Խոշոր արդյունաբերության զարգացմանը համընթաց իրական հարստության ստեղծումն ու չափերն ավելի ու ավելի են կախված դառնում գիտության ընդհանուր վիճակից և նրա տեխնոլոգիական կիրառման աստիճանից։ Արտադրական պրոցեսների կոմպլեքսային մեքենայացումն ու ավտոմատացումը, առավել ևս ինքնակարգավորող սարքեր ունեցող կոմպլեքսային ավտոմատացումը ո՛չ միայն փոխում են աշխատանքի բնույթը, այլև հավաքական բանվորի կազմը։ Աճում է ինժեներա-տեխնիկական աշխատողների տեսակարար կշիռը, աճում է գիտնականների անմիջական մասնակցությունը նյութական բարիքների անմիջական արտադրության պրոցեսում, փոխվում է (հետագայում ավելի մեծ չափերով կփոխվի) արտադրական ձեռնարկության բնույթը։ Այս ողջ աշխատանքը, որ կազմում է հավաքական բանվորի միասնությունը, արտադրողական աշխատանք է։ Արտադրության պրոցեսից դուրս գիտա-հետազոտական մարմիններում գիտնականների կատարած աշխատանքը, որը կարևոր է արտադրության զարգացման համար, հանրօրեն օգտակար աշխատանք է, սակայն նյութական բարիքների արտադրության անմիջական պրոցեսի մասը չի կազմում, արտադրողական աշխատանք չէ։ Գիտությունն անմիջական արտադրողական ուժ է դառնում ժողովրդական տնտեսության մեջ նրա նվաճումների արմատավորման, տեխնոլոգիական պրոցեսների կատարելագործման ու արագացման շնորհիվ։

Մի հարց ևս, որը շոշափվում է մեր գրականության մեջ։ Կպահպանվի՞ արդյոք հասարակության ամբողջական աշխատանքն արտադրողական և ոչ-արտադրողական աշխատանքի տրոհելու անհրաժեշտությունը կոմունիզմի ժամանակ։ Վերը շարադրվածից պարզ երևում է նման անհրաժեշտությունը։ Կոմունիստական հասարակությունը չի կարող անտարբեր լինել այն բանի նկատմամբ, թե ամբողջական աշխատանքի ո՞ր մասն է ծախսվում նյութական բարիքների արտադրության և նրա լիառատության այնպիսի մակարդակ ունենալու համար, որպեսզի ապահովված լինի ըստ պահանջմունքի բաշխումը։ Այդ աշխատանքի արտադրողականության աստիճանից է կախված լինելու ոչ-արտադրողական ոլորտի վիճակը և ազատ ժամանակի մեծությունը հասարակության ու նրա յուրաքանչյուր անդամի համար։ Հասարակության կյանքի բոլոր կողմերի պլանավորումն ու կազմակերպումը կոմունիզմի ժամանակ չի կարող հանդես չբերել ամենալուրջ ու գործնական հետաքրքրություն նյութական և ոչ-նյութական ճյուղերի մեջ բաշխվող աշխատանքի համամասնության նկատմամբ, որն անփոփոխ չի մնալու։





# ԺՈՂՈՎՐԴԻ ԷՍԹԵՏԻԿԱԿԱՆ ԴԱՍՏԻԱՐԱԿՈՒԹՅՈՒՆԸ

ԱՐ. ՍԻՄՈՆՅԱՆ

Փիլիսոփայական գիտությունների թեկնածու

ՄԱՐԴԿԱՅԻՆ անհատի բազմակողմանի և ներդաշնակ զարգացման հարցերը կոմունիզմի ծավալուն կառուցման ժամանակաշրջանում ստանում են կենսական, պրակտիկ նշանակություն։ Կյանքը հրամայաբար թելադրում է ստեղծել ոչ միայն տեսություններ ժողովրդի դաստիարակության մասին, այլև պահանջում է կազմակերպել գործնական աշխատանք այդ ուղղությամբ։

Գեղագիտական, կամ, ինչպես ընդունված է ասել՝ էսթետիկական դաստիարակության հարցերով մեր դպրոցը և կուլտուր-լուսավորչական հիմնարկները զբաղվել են, բայց ոչ պատշաճ չափով։ Կուլտուրական ռևոլյուցիան սոցիալական տևական պրոցես է, որը ենթադրում է սոցիալիստական հասարակարգի զարգացման պատմական ամեն մի շրջանի համար լուծման յուրահատուկ եղանակներ, միջոցներ ու խնդիրներ, կապված երկրի կուլտուր-տնտեսական հնարավորությունների հետ։ Պարտիայի XXII համագումարը, ընդհանրացնելով սովետական հասարակարգի զարգացման փորձը և կանխագծելով մեր գալիքը, որոշակիորեն ՍՄԿՊ նոր ծրագրում ընդգծեց, որ գիտական աշխարհայացքի ձևավորման հետ մեկտեղ արդի փուլում կենսական անհրաժեշտություն է դառնում «մարդկային անհատի բազմակողմանի և ներդաշնակ զարգացումը»։

Կոմունիստական հասարակարգի մարդուն հատուկ են հոգևոր հարստություն, բարոյական անաղարտություն և ֆիզիկական կատարելություն մարմնավորող գծերը։ «Գեղարվեստական սկզբունքն է՛լ ավելի ոգեշունչ կդարձնի աշխատանքը, կգեղեցկացնի կենցաղը և կազնվացնի մարդուն»։ Պարտիայի Ծրագրի այս խորիմաստ մտքերը մեծ խոհերի տեղիք են տալիս, իրոք գեղեցիկը դառնում է մեր ապրելակերպի ցուցանիշներից, մեր կյանքի մղումներից մեկը։

Անշեղորեն կենսագործելով պարտիայի XXII համագումարի ծրագրային դրույթները՝ ՍՄԿՊ Կենտկոմի հունիսյան պլենումն արձանագրեց, որ մարդկանց կոմունիստական դաստիարակությունը, նոր մարդու ձևավորումը դարձել են մեր պարտիայի կենտրոնական խնդիրները։

Կոմունիստական հասարակարգի մարդը բազմակողմանի և ներդաշնակորեն զարգացած անհատ է։ Նրան խորթ են նեղ պրակտիցիզմը և շահաբեր, բայց ոչ ստեղծագործ աշխատանքը։ Կոմունիզմն ապահովում է բարենպաստ պայմաններ մարդկային ունակությունների լրիվ դրսևորման համար։ Այն հա-



սարակության ամեն մի անդամին ստեղծագործական աշխատանքի ու կրթության հավասար հնարավորություններ է ընձեռում։ Կոմունիզմի ժամանակ իսպառ կվերանան մարդկանց միջև գոյություն ունեցող կախման և անհավասարության հարաբերությունները հասարակական ու ընտանեկան կյանքում։ Դա մեծ ազդակ կհանդիսանա ստեղծագործական մտքի զարգացման համար։

## I

ՄԱՐԴԿԱՆՑ ստեղծագործական կարողությունների բացահայտման գործում ուրույն նշանակություն ունի էսթետիկական դաստիարակությունը, որը նպաստում է մարդկային անհատի երևակայության զարգացմանը, գեղեցկի զգացման զարգացմանը, հոգեկան խառնվածքի, ճաշակի և պատկերավոր մտածողության ունակությունների կատարելագործմանը։ «Եթե մարդը,— ինչպես ասում է Մ. Գորկին,— իր բնույթով արվեստագետ է», ապա էսթետիկական դաստիարակության շնորհիվ հնարավոր է այն լրիվ ձևավորել։

Մարդու էսթետիկական հարաբերությունն իրականության նկատմամբ բովանդակում է իր մեջ մարդու միտքն ու զգացումները, համոզմունքն ու կամքը։ Իրականության էսթետիկական ճանաչումը ենթադրում է մտքի և հոգու, զգացմունքի ու բանականության միասնություն։ Իրականության էսթետիկական ճանաչումն ամբողջական է դարձնում մարդու աշխարհայացքը և աշխարհըմբռնումը։ Իրականության նկատմամբ էսթետիկական հարաբերությունն ակտիվ ու բազմաբովանդակ վերաբերմունք է, որն արտացոլվում է ո՛չ միայն արվեստի ստեղծագործություններում, այլև բոլոր պարագաներում, որոնց հետ առնչվում է մարդը։ Մարդու համար էսթետիկական ընկալման առարկա կարող են դառնալ վեհանիստ Մասիսն ու գեղատեսիլ Սևանը, հայրենասիրական արարքը, աշխատանքային հաջողությունը, սիրած աղջկա ժպիտը, Սասունցի Դավթի արձանը և այլն։

Գրականության մեջ, պրակտիկայում (կուլտուրայի համալսարանների փորձը) դեռևս չի հաղթահարված էսթետիկական դաստիարակության խնդիրները գեղարվեստական դաստիարակության հարցերով սահմանափակելու ոչ ճիշտ գիծը։ Այդպիսի մոտեցման դեպքում աղճատվում ու փոքրացվում են գեղագիտության շրջանակները, միակողմանի բնույթ է ստանում էսթետիկական դաստիարակությունը։ Ժողովրդին էսթետիկական ոգով դաստիարակելը նշանակում է՝ ընկալել կյանքի գեղեցիկը, ապրել ու աշխատել այդ գեղեցկի չափանիշներով, հաղորդակից լինել արվեստին։ Էսթետիկական դաստիարակություն ստացած մարդու մոտ գեղեցիկը դրսևորվում է բոլոր պարագաներում ու հանգամանքներում։ Էսթետիկական զգացումն ունիվերսալ, ամբողջական զգացում է, որի բանական և էմոցիոնալ չափանիշները միաձուլվում են ու այլևս հնարավոր չի լինում ապրել անտարբեր, ձեռնպահ։

Լայն առումով գեղեցիկը կոմունիզմն է, քանի որ կոմունիստական հասարակարգն իրականություն է դարձնում մարդկանց վսեմ տենչանքներն ու բաղձանքները։ Անհատի և հասարակության ներդաշնակ փոխհարաբերության հաստատումը հարստացնում է մարդու ներքնաշխարհը, արթնացնում նրա մեջ գեղեցիկը։ Որքա՜ն է նեղացնում մարդու աշխարհըմբռնումը սեփականատիրական զգացումը, հարստանալու տենչը։ Շահագործման աշխարհում հարըս-

*տանալու մոլուցքը խեղդել է մարդկանց մեջ հոգեկան վսեմ գծերը, դարձրել նրանց ոսկու քսակի գերի։ Կարելի՞ է արդյոք գեղեցիկ համարել այն ապրելակերպը, երբ փողն ու ունեցվածքը դառնում են կուռք։ Նման մարդկանց մոտ բթանում են ազնիվ ու գեղեցիկ զգացումները, նրանք չեն նկատում կյանքի բարիքները, դառնում են հոգեկան ներքինիներ։*

*Էսթետիկական զգացումով օժտված մարդը խոր ու իմաստալի գնահատական է տալիս կյանքի այնպիսի երևույթներին, որոնց մասին ոչ մի օրենսգրքում համապատասխան հոդված չես գտնի։ Հայտնի է, որ կյանքում գործում է իրականությանը, ստեղծված պայմաններին հարմարվելու օրինաչափությունը, որը փիլիսոփայության մեջ կոչվում է սոցիալական միմիկրիա։ Հարմարվելով միջավայրին, մարդը հաճախ թաքցնում է իր կարծիքը, իր վերաբերմունքը հասարակական այս կամ այն երևույթի նկատմամբ։ Անգամ ինտիմ հարաբերություններում երբեմն այնպես է ստացվում, որ մարդ զսպում է իրեն, խուսափում ճշմարտությունն ասելուց։ Մարդկային բնավորության չբացահայտվող երանգները կարելի է հասկանալ, վեր հանել ու գնահատել միայն գեղագիտական չափանիշներով։ Ստորաքարշությունը, անսկզբունքայնությունը, խորամանկությունը և մարդկային վարքագծի մյուս այլանդակ գծերը մերկացվում ու դատապարտվում են ոչ այնքան իրավական ու բարոյական նորմերով, որքան էմոցիոնալ, էսթետիկական վերաբերմունքով։ Վ. Ի. Լենինը նկատել է, որ սոցիալական անհավասարության դեմ պայքարելու գիտակցումը լայն մասսաների շրջանում պետք է արթնացնել ո՛չ միայն նրանց բանականության, այլև զգացումների ու ապրելակերպի մեջ, որպեսզի նրանք բնական ատելությամբ լցվեն դեպի ունեզրկողներն ու կեղեքիչները։*

*Սոցիալիստական հասարակարգը գեղագիտական դրսևորման լայն հնարավորություններ ստեղծեց։ Սոցիալական և ազգային հավասարության հաստատումը մեր երկրում ազդակ հանդիսացավ բազմազգ ժողովրդի ստեղծագործական ունակությունների զարգացման համար։ Աշխատանքը դարձավ փառքի ու պատվի գործ, իսկ աշխատանքի մարդը՝ նոր աշխարհի կերտող։ Մարդկության գարունը, որ բացվեց երբեմնի հետամնաց երկրում, ողողեց աշխարհը գեղեցկի զգացումով և ազատության հույս ներշնչեց բովանդակ աշխարհի աշխատավորներին։ Եթե մարդն արտադրում է գեղեցկության օրենքների համաձայն, ապա նրա գործունեության մեջ գեղեցկի տարրերը սոցիալիստական հասարակարգում դառնում են արտադրության ոգին, հոգեկան սնուցիչը։*

*Կապիտալիստական արտադրաեղանակը բանվորին դարձնում է մեքենայի կցորդը, սպանում նրա ստեղծագործական ավյունը, գեղեցկի զգացումը։ Չառլի Չապլինը* Մեծ քաղաքի կրակներ *և* Նոր ժամանակներ *կինոկատակերգություններում չգերազանցված վարպետությամբ պատկերել է մարդու՝ հասատցի ժանիկի վերածվելը, նրա հոգեկան սնանկացումը։*

## II

*ՇԽԱՏԱՎՈՐՈՒԹՅԱՆ էսթետիկական դաստիարակության բովանդակությունը և շրջանակները լրիվ պարզաբանելու համար անհրաժեշտ է ցույց տալ աշխատանքի էսթետիկայի էությունը։ Մոսկվայում կայացած էսթետիկական դաստիարակության հարցերին*



*նվիրված համամիութենական խորհրդակցությունը մեծ ուշադրություն հատկացրեց աշխատանքի էսթետիկայի էության վերլուծությանը և ընդհանրացրեց այդ ուղղությամբ տարվող հետազոտական աշխատանքները։*

*Մարքս-լենինյան էսթետիկան գիտական հիմքերի վրա դրեց էսթետիկականի առաջացման ու ձևավորման արմատներն արտադրության մեջ, վեր հանեց այն սոցիալական զսպանակները, որոնք նպաստում կամ արգելակում են գեղագիտական զգացմունքների դրսևորմանը։ Մինչև մարքսիզմը Հեգելը նկատել էր, որ արտադրության ու վերարտադրության պրոցեսում գործում են իրար բացառող, բայց, միաժամանակ մեկը մյուսով պայմանավորող, ազատության ու անհրաժեշտության տենդենցները։ Քննության առնելով այդ երևույթի գեղագիտական բնույթը, գերմանացի մեծ մտածողը ցույց տվեց, որ անհրաժեշտ աշխատանքի պրոցեսում համարյա բացակայում է էսթետիկական սկզբունքը, այն սկսում է ձևավորվել ազատ աշխատանքի ժամանակ։ Հեգելը ճիշտ էր կռահել անհրաժեշտության և ազատության փոխանցման դիալեկտիկան արտադրության պրոցեսում և գեղեցկի տենդենցների ձևավորման դրսևորումն արտադրության ժամանակ։ Բայց ազատ աշխատանք ասելով նա պատկերացնում էր միայն հոգևոր արժեքների ստեղծումը՝ գեղարվեստի ոլորտը։*

*Մարքսիզմը ցույց տվեց, որ բոլոր արտադրաեղանակներում գեղագիտականի սկզբունքը բնորոշ է արտադրության բնույթին, բայց այն լրիվ է դրսևորվում միայն սոցիալիստական հասարակարգում։*

*Արտադրության գեղարվեստական սկզբունքը ներառնում է երեք անկապտելի և փոխադարձորեն կապակցված մոմենտներ՝*

ա) գեղեցիկն աշխատանքի արդյունքում, կամ աշխատանքային գործունեության էսթետիկան.

բ) գեղեցիկն աշխատանքային պրոցեսում, արտադրության կատարելագործման, վարպետության բարձրացման մեջ, բնության տարերային ուժերի վրա մարդու ներգործման և այդ ուժերի օգտագործման մեջ.

գ) գեղեցիկն աշխատանքի հասարակական տնտեսական հարաբերություններում, ինչպես նաև աշխատանքի կոնկրետ արտադրական պայմաններում:

*Աշխատանքի արդյունքը հոգեկան մեծ բավականություն է պատճառում մարդուն։ «Մարդկայնացնելով բնությունը, մարդը ստեղծում է երկրորդ բնությունը» (Մարքս), որը ծառայում է իրեն։ Ստեղծելով նյութական և հոգևոր արժեքներ, որոնք իր գործունեության արգասիքն են, մարդը բարձրանում է բնությունից, դառնում նրա տնօրենն ու վերափոխիչը։ Բայց այդ պատճառաբանված ինքնավստահության զգացումը, որն առաջանում է մարդու մոտ բնության նկատմամբ, կորցնում է իր հմայքն ու գեղեցկությունը սեփականատիրական արտադրական հարաբերություններում։ Բանվորը, որին վարձում է կապիտալիստը, իր հնարամտությունն ու ստեղծագործական վարպետությունն արտադրության պրոցեսում հանդես է բերում միջնորդված ձևով։ Նա իր ստեղծած արժեքի տերը չէ, հետևաբար այն գեղագիտական զգացումը, որ պետք է առաջանար աշխատանքի արդյունքից, լրիվ չի դրսևորվում։*

*Սոցիալիստական հասարակարգում, որտեղ աշխատող մարդն իր բախտի ու ճակատագրի տերն է, ճաշակում է աշխատանքի պտուղները, երջանիկ է ստեղ-*

ծած բարիքների համար։ Գեղագիտական այդ հրաշալի զգացումը կարևոր գործոն է, շարժիչ ուժ է սոցիալիստական հասարակարգի զարգացման համար։ Մեր երկրում էսթետիկական հաճույք է պատճառում ո՛չ միայն մասնագիտացված աշխատանքի արդյունքը, այլև անվճար, հասարակական աշխատանքը։ Երևանցին ներքին բավականություն է ստանում և հպարտ է, որ շատ ու շատ լայնարձակ պողոտաների և փողոցների կառուցման գործում կա նաև իր աշխատանքի մասնիկը։

Ժողովրդական տնտեսության նվաճումների ցուցահանդեսները երևան են հանում ո՛չ միայն մեր առաջընթացը գիտության ու տեխնիկայի ասպարեզում, դրանք միաժամանակ աշխատանքի գեղեցկության էքսպոնատներ են։

Կարո՞ղ է արդյոք իրեն երջանիկ համարել այն բանվորը, որ չգիտե, թե ի՞նչ է արտադրում և ո՞ւմ է ծառայում։ «Շագանակագույն ոստայն» կինոնկարում գերմանացի պրոգրեսիվ կինոգործիչները գեղարվեստական համոզչականությամբ ցույց են տվել այն հոգեկան ողբերգությունը, որն ապրեցին գերմանացի բանվորները ֆաշիզմի իշխանության օրոք։ Ֆիլմում մեծ վարպետությամբ պատկերված է, թե ինչպես մի կտոր հաց վաստակելու համար գործազուրկ բանվորներն աշխատանք են գտնում ռազմական արդյունաբերության ձեռնարկություններում, իսկ իրենց աշխատանքի արդյունքը մահ է սփռում աշխարհով մեկ։ Ֆիլմից հանդիսատեսը գալիս է այն եզրակացության, որ ոչ բոլոր աշխատանքների արդյունքն է գեղագիտական ուրախություն պատճառում։ Գեղեցիկը հանրօգուտ կյանք հաստատող աշխատանքն է։

Գեղեցկի զգացումը մարդու մոտ ծագում է ո՛չ միայն աշխատանքի արդյունքը տեսնելիս, այն հայտնվում, ծնվում է հենց աշխատանքի ժամանակ։ Գործարանային ժխորը, հաստոցների աղմուկը, բանվորների համաչափ ու ռիթմիկ շարժումները որոշակի էսթետիկական տրամադրություն են առաջացնում։ Սխալ է այն տեսակետը, թե գեղեցիկը միայն մկանային աշխատանքն է։ Այդ տեսակետն իր արտացոլումն է գտել առանձին նկարիչների կտավներում, երբ ընդգծված ձևով պատկերվում են լարված և ուռուցիկ մկաններ, մոռացության տալով բանվորի դեմքը՝ հոգու հայելին։

Ավտոմատիզացիայի և կիբեռնետիկայի դարում, երբ բանվորի աշխատանքը ինժեներա-տեխնիկական անձնակազմի աշխատանքի տարատեսակն է, արխայիկ են դառնում այդ և նման ուրիշ տեսակետներ։ Մեր նկարիչները ժամանակակից բանվոր նկարելիս պետք է ցույց տան նրա ինտելեկտուալ, խորիմաստ դեմքը և, միաժամանակ, իհարկե առլետիկ մարմինը։ Սոցիալիստական իրականության մեջ, երբ ծանր, մարդուն հոգնեցնող պրոցեսները կատարում է մեքենան, այժմ տիպական են կրթված ու զարգացած բանվորները, որոնք արտադրության պրոցեսում հաջողությամբ զուգորդում են մտավոր ու ֆիզիկական աշխատանքը։ Ղեկավարվելով ավտոմատացված ու մեքենայացված աշխատատար պրոցեսներով, ավելի է զարգանում բանվորի ստեղծագործական միտքը, բազմապատկվում են նրա նորարարական հնարքները։ աշխատանքը դառնում է ավելի հաճելի ու գեղեցիկ։

Աշխատանքի պրոցեսն առավել հաճելի և արդյունավետ կլինի, եթե աշխատասենյակներն ու սրահները լինեն մաքուր ու լավ կահավորված։ Գործարանի ներսում, մանավանդ ցեխերում, պետք է առանձին ուշադրություն հատկացվի էսթետիկային։ Գույնի զգացումը ամենապարզ և ամենից շուտ ընկալվողն է, որը պահանջում է մեր արտադրության հրամանատարներից ու տըն-



տեսվարներից՝ ներդաշնակ գույներով ներկել հաստոցներն ու սարքերը։ Գործարանային ինտերերում կանաչ, կարմիր և դեղին գույները հոգեկան լիցք կհաղորդեն բանվորներին։

Որքա՜ն տհաճ տպավորություն են թողնում բանվորի, ինչպես նաև այցելուների ու հաճախորդների վրա Երևանի մի շարք գործարանների, ֆաբրիկաների գորշ ու անգույն հաստոցները կամ մրով պատած պատերը։ Մեր զարգացման ներկա փուլում ուղղակի աններելի է ձեռնարկությունները հակաէսթետիկական վիճակում պահելը։ Ռեսպուբլիկայի ժողտնտխորհի և նրա վարչությունների մշտական ուշադրության ոլորտում պետք է լինեն աշխատանքի էսթետիկայի հարցերը։ Կոմունիստական աշխատանքի կոչման համար պայքարող ձեռնարկություններն ու բրիգադները պարտավորություններ վերցնելիս հատուկ կետեր պետք է մշակեն այդ ուղղությամբ։

Էսթետիկական զգացման և ճաշակի պատվաստման ու զարգացման համար կարևոր նշանակություն ունի գեղեցկացումն այն բոլոր վայրերի, որտեղ ընթանում է մարդու կյանքը. դրանցից ամենակենսականը բնակարանն է, որտեղ մարդը ծննդյան օրից մինչև ծերություն զգում է ճարտարապետության ներգործությունը։ Ճարտարապետական կոթողից ստացած տպավորությունը հարստացնում է մարդու էսթետիկական պատկերացումները ամբողջականության, ծավալի, հեռանկարի ու կոնտրաստի մասին։ Բայց ինչպիսի հրապուրիչ տեսք էլ ունենա շենքի արտաքինը՝ ֆասադը, այն չի տպավորվի մարդու հոգու և գիտակցության մեջ, եթե այն չհամապատասխանի իր ֆունկցիոնալ նպատակներին։

Ցավոք սրտի պետք է նշել, որ Երևանի մի շարք շենքեր հեռու են իրենց նպատակին ծառայելուց։ Այժմ, երբ բազմաթիվ ընտանիքներ ստացել են բարեկարգ, կոմունալ հարմարություններով բնակարաններ, էական նշանակություն է ստանում կենցաղի գեղեցկացման հարցը։ Դեռևս շատ կան այնպիսի բնակարաններ, ուր հնարամիտ տնտեսուհիները զուր ջանքեր են թափում կոմունալ հարմարություններից զուրկ մեկ սենյականոց բնակարանները կահավորել այնպես, որ հաճելի լինի և՛ տնեցիների, և՛ հյուրերի համար։ Կոմունիստական կենցաղը կահույքի արդյունաբերության աշխատողներից պահանջում է արվեստի աստիճանի բարձրացնել արտադրությունը, թողարկել ճաշակով ու գեղեցիկ արտադրանք։ Անհրաժեշտ է կինոյի, ռադիոյի, հեռուստատեսության միջոցով ժողովրդին հաղորդակից դարձնել գեղեցիկ կենցաղավարությանը։

## II

ԺՈՂՈՎՐԴԻ էսթետիկական դաստիարակության գործում առանձնահատուկ տեղ են գրավում արվեստն ու գրականությունը, որոնց անընդհատ աճող դերն ու նշանակությունը կոմունիզմի ծավալուն կառուցման ժամանակաշրջանում դժվար է գերագնահատել։ Անմիջականորեն արտացոլելով հասարակական կյանքի երևույթները կոնկրետ ստեղծագործությունների մեջ, արվեստն ու գրականությունը գեղարվեստական ընդհանրացման միջոցով գեղագիտական գնահատական են տալիս կյանքի երևույթներին։ Արվեստը լուսանկարչական ապարատ չէ և, արտացոլելով կյանքը, այն որոշակի դասակարգային դիրքերից պաշտպանում կամ խարազանում է մարդկային հարաբերություններն ու արարքները։ Արվեստի կախար-

դական ուժը կայանում է նրանում, որ այն խոշորացույցի նման բացահայտում է կյանքի մանրուքները, դիմակազերծում վատն ու այլանդակը։ Արվեստի նրբանկատ ու շրջահայաց, զգայուն և ուշիմ տեսադաշտն ընդգրկում է կյանքի բոլոր երևույթները։ Սովետական արվեստն ու գրականությունը սովորեցնում են մարդկանց ճիշտ կողմնորոշվել կյանքում, օգնում են նրանց խուսափելու անվայել արարքներից։ Գեղարվեստի դասական գործերը բռնել են ժամանակի քննությունը նրա համար, որ այդ անմահ ստեղծագործությունները շարունակում են մարդկանց մեջ արթնացնել վսեմ զգացումներ, պայծառ խոհեր։

Անցյալի արվեստում գեղեցիկը հեռու է եղել իրականությունից. նա հայտնըվել է մարդկանց անուրջներում ու անհաս բաղձանքի նման քարացել քանդակներում ու ճարտարապետական կոթողներում, մարմնավորվել վարպետ-գեղանկարիչների կտավներում, երգերում ու բանաստեղծություններում։ Նոր հասարակարգի կառուցման շնորհիվ վերացան այն բոլոր պատնեշները, որոնք արվեստի իդեալը բաժանում էին ռեալ իրականությունից։ Սոցիալիստական հասարակարգում արվեստի ու գրականության դրական հերոսները մեր օրերի մարդիկ են, որոնք հայրենանվեր գործեր են կատարում կոմունիզմի կառուցման տարբեր տեղամասերում։ Երբ կարդում ենք ժամանակակից սովետական գեղարվեստական գրականությունը, դիտում մեր առօրյան պատկերող կտավները, իսկույն հիշում ենք մեզ շրջապատող մարդկանց, որոնց հետ ապրում ու աշխատում ենք։ Որոշ առումով մեր հասարակարգում արվեստը կյանքի շարունակությունն է, կյանքը՝ արվեստի։ Այսպիսի փոխներգործության ու փոխազդեցության շնորհիվ հոգեպես հարստանում է սոցիալիստական իրականությունը, իսկ արվեստն ու գրականությունը միաձուլվում են ժողովրդի կյանքին։

Կյանքի գեղեցիկն արվեստում դրսևորվում է ավելի վառ ու գունեղ, որի շնորհիվ մենք ավելի լավ ենք հասկանում մեր մարդկանց բնավորությունը, ձգտումները, հոգեկան խառնվածքը։ Սովետական մարդու էսթետիկական պահանջմունքներին արձագանքում են նաև անցյալի դասական արվեստի ու գրականության գործերը։ Մեր խոհերին ու զգացումներին համահնչուն են Հոմերոսն ու Դանթեն, Միքելանջելոն ու Ռեմբրանդտը, Բեթհովենն ու Թումանյանը և շատ ուրիշ մեծություններ։ Գեղարվեստի լավագույն նմուշները նոր մարդու դաստիարակության գործում անգնահատելի դեր են խաղում, նպաստում են բացահայտելու մարդկանց մեջ թաքնված գեղեցիկ գծերը։ Մեծ գրողներն ու արվեստագետները նկատել են, որ գեղարվեստը մարդուն կրկնակի անգամ մարդ է դարձնում։

Արվեստի ստեղծագործության միջոցով մարդը ճանաչում է ինքն իրեն, գիտակցում իր ապրելակերպի և վարքագծի դրական ու թերի կողմերը։ Արվեստի ներգործության շնորհիվ մարդը, բացի ինքնաճանաչումից, ավելի լավ է հասկանում կյանքը, վերապրում ու կիսում է շրջապատի մարդկանց ուրախությունն ու տխրությունը։ Գեղարվեստական գործերից ստացած տպավորությունը կարող է էական ու վճռական նշանակություն ունենալ մարդու կյանքի, նրա դավանանքի, քաղաքական համոզմունքների ձևավորման համար։ Ռևոլյուցիոն շատ ու շատ գործիչներ կյանքի այդ դժվարին ուղին աներկբայորեն ընտրել են նաև արվեստի ստեղծագործությունից ստացած խոր տպավորությունների տակ։ Միջազգային կոմունիստական ու բանվորական շարժման



ականավոր գործիչ Գեորգի Դիմիտրովը մեծ երախտագիտությամբ նշել է, որ Չերնիշևսկու «Ինչ անել» վեպի հերոս Ռախմետովն իր առաջին ուսուցիչն է եղել։ Երբ կարդում ենք մարդկության առաջադիմության համար պայքարած հերոսների կենսագրությունները, օրագրերը, պարզ երևում է, թե նրանց համար որքան հարազատ են եղել գեղարվեստական երկը, նրա դրական կերպարը։

Չի կարելի նորից ու նորից չհիշատակել Վլադիմիր Իլյիչ Լենինի աշխարհայացքի ձևավորման վրա գեղարվեստի բարերար ազդեցության մասին։ Պատանի Ուլյանովի մեջ ատելությունը դեպի սոցիալական անհավասարությունն արթնացրել են Նեկրասովը, Սալտիկով Շչեդրինը, Գլեբ Ուսպենսկին։ Ինչպիսի՜ ակնածանքով է արտահայտվել Վլադիմիր Իլյիչը ռևոլյուցիոն երգերի, Բեթհովենի ազատատենչ ու ոգեշնչող երաժշտության մասին։ Ցարական ինքնակալության դեմ աշխատավորությանը պայքարի են հանել Մաքսիմ Գորկու մրրկահավը, Դանկոն, բազեն, Պավել Վլասովը, Հակոբ Հակոբյանի բոցաշունչ բանաստեղծությունները։ Նոր աշխարհի ծնունդը գեղարվեստորեն մարմնավորվեց Մայակովսկու, Չարենցի, Ալեքսեյ Տոլստոյի, Շոլոխովի, Ֆադեևի պոեմներում ու վեպերում։ Այդ և սովետական դասական արվեստի մյուս գործերը մեծ նշանակություն ունեցան նոր աշխարհը կառուցողների դաստիարակության գործում։ Հայրենական պատերազմի տարիներին արվեստն ու գրականությունը սովետական բազմազգ ժողովուրդներին պայքարի էին կոչում ֆաշիստական հրոսակախմբերի դեմ։

Արդի պայմաններում մեր արվեստն ու գրականությունը ճշմարտացի և վառ կերպով բացահայտում են ժողովրդի աշխատանքային սխրանքների գեղեցկությունը, կոմունիզմի համար մղվող պայքարի վիթխարիությունն ու վեհությունը։ «Ուրիշ ի՞նչը կարող է արվեստագետին ավելի մեծ բավականություն պատճառել, քան այն գիտակցությունը, որ իր տաղանդն ամբողջովին նվիրում է կոմունիզմի կառուցման համար ժողովրդի պայքարին, որ իր ստեղծագործություններն ընդունվել և բարձր են գնահատվել ժողովրդի կողմից» (Ն. Ս. Խրուշչով)։ Անցյալում և այժմ կապիտալի աշխարհում, հազվադեպ է լինում, որ գրողն ու արվեստագետը իրենց կենդանության օրոք լայն ճանաչում ստանան ժողովրդի կողմից։ Մեր երկրում աստղաբաշխական թվերի է հասնում լավագույն գրողների հրատարակած գրքերի տպաքանակը։ Վաղուց է արվեստը մտել մեր ժողովրդի կենցաղի մեջ, դարձել նրա խորհրդատուն, ուսուցիչն ու բարեկամը։ Օտարերկրացիներին զարմանք է պատճառել այն հանգամանքը, որ Մոսկվայի սպորտի պալատում տեղի ունեցած պոեզիային նվիրված երեկոներին քսան հազարանոց դահլիճը միշտ լեփլեցուն էր։ Մեր իրականությունը չիմացողներն ուղղակի ապշում էին այն լավատեղյակությունից, որ ցուցաբերում էին դահլիճում նստած ընթերցող ունկնդիրները, որոնք բացի բանաստեղծների գործերն իմանալուց, նաև խստապահանջ էին նրանց նկատմամբ։

Նման օրինակներ կարելի է բերել ցանկացած սովետական քաղաքից ու գյուղից։ Եթե կապիտալի աշխարհում արվեստը կտրված է ժողովրդից և, այսպես կոչված, ընտրյալների՝ էլիտայի մենաշնորհն է, ապա սոցիալիզմի պայմաններում այն կոչված է բավարարելու ժողովրդի էսթետիկական պահանջները։ ՍՄԿԿ XXII համագումարից հետո լավ տրադիցիա է ստեղծվել. պարտիայի և կառավարության ղեկավարները հաճախ են հանդիպում ունենում մեր

արվեստի ու գրականության գործիչների հետ։ Ժողովրդի հանդեպ գեղագետի պատասխանատվության մասին լուրջ խոսակցություն տեղի ունեցավ Կրեմլում, որտեղ հանդես եկավ ՍՄԿՊ Կենտկոմի առաջին քարտուղար Ն. Ս. Խրուշչովը։ Ընկեր Խրուշչովի ճառում ձևակերպված են մարքս-լենինյան էսթետիկայի զարգացման կարևորագույն տեսական դրույթները, սահմանված են գրականության և արվեստի խնդիրները ծավալուն կոմունիստական շինարարության ժամանակաշրջանում։ Կոմունիստական պարտիան գրականության և արվեստի զարգացման գլխավոր գիծը համարում է ժողովրդի՝ կյանքի հետ ունեցած կապերի ամրապնդումը, սոցիալիստական իրականության հարստության ու բազմազանության ճշմարտացի և մեծ գեղարվեստականությամբ արտացոլումը։

Սովետական արվեստի ու գրականության հետագա զարգացման, ժողովրդի էսթետիկական դաստիարակության խնդիրները ՍՄԿՊ Կենտկոմի գաղափարական աշխատանքին նվիրված հունիսյան պլենումի առանցքային հարցերից էին։ Կենտկոմի քարտուղար ընկ. Լ. Ֆ. Իլյիչովի բովանդակալից զեկուցման մեջ ասված է. «Արվեստը և գրականությունը գործ ունեն մարդկային գիտակցության ու հոգևոր կերտվածքի նուրբ ոլորտների հետ, ներխուժում են նրանց ամենախոր գաղտնարանները։ Դրանք ձևավորում են կոմունիզմի միլիոնավոր կառուցողների հոգևոր կերպարը։ Ուստի միանգամայն բնական է, որ գեղարվեստական ստեղծագործության բովանդակության և ուղղության հարցը գաղափարական ու քաղաքական հսկայական նշանակություն է ստանում»։

Կյանքի ճշմարտացի արտացոլումն արվեստում ունի գաղափարական իմաստավորում։ Առաջադեմ գաղափարը կյանքի հայելին է, նա ընդհանուր ձևով է ի մի բերում կյանքի բնորոշ երևույթները, ճիշտ պատկերացում տալիս իրականության մասին։ Ճանաչելով կյանքը, մասնակից լինելով կյանքի կերտմանը, արվեստագետի գաղափարն առաջին հերթին հարստանում, զարգանում է ոչ թե թեորիական տրակտատներից, այլ ռեալ իրականությունից։ Արվեստագետի ակտիվ մասնակցությունը երկրի հասարակական ու քաղաքական կյանքին, կամ նրա անմիջական մասնակցությունը նյութական բարիքների ստեղծմանը, ստեղծագործական նվաճումների գրավականներից է։ Սովետական երկրի արվեստագետը պասսիվ դիտող չէ, նա իր արվեստով հաստատում է գեղեցիկը, խարազանում ու մերկացնում չարը, անմարդկայինը։

Էսթետիկական ներգործման միջոցով արվեստը բացահայտում է կյանքում առաջացած մարդկային հարաբերությունների նոր գծեր ու կոնֆլիկտներ. դրա լավ օրինակն է Գալինա Նիկոլաևայի «Ուղեմարտ» վեպը։

Արվեստասերն արվեստի ստեղծագործությունների պասսիվ «սպառողը» չէ, նա նույնպես արվեստագետ է։ Երբ մենք դիտում ենք Ռեպինի նկարները, ստացած տպավորությունը լրացնում է նկարի բովանդակությունը, բազմակետերը։ Սիրահարված պատանին կամ օրիորդը Տերյանի բանաստեղծությունները կարդում են այնպիսի շնչով, կարծես իրենք լինեն այդ գողտրիկ տողանավորների հեղինակները։ Իսկական արվեստի ստեղծագործության նկատմամբ անհնար է անտարբեր մնալ, այն ալեկոծում է մարդու հոգին, մղում նրան սխրանքների։ Հարաբերականության տեսության ստեղծող, XX դարի հանճար Ալբերտ Էյնշտեյնն ասել է՝ «Ինձ բարձրագույն երջանկություն են պատճառում արվեստի ստեղծագործությունները։ Նրանցից ես այնպիսի հոգևոր երանություն եմ քաղում, որպիսին չեմ քաղում ոչ մի ուրիշ բնագավառից»։ Կյանքի



ամեն պարագայում արվեստը մարդու ուղեկիցն է, նրա պատրանքների ու իղձերի խորհրդատուն, գաղտնիքների ու արարքների միակ վկան։

* * *

Կոմունիզմն ավելի կզարգացնի մարդկանց գեղարվեստական ունակությունները, կկատարելագործի մարդկանց ապրելակերպն ու հասարակական հարաբերությունները։ Գիտությունից ու առողջ դատողությունից հեռու է այն թյուր կարծիքը, թե արվեստն ապագա չունի։ Նման կարծիքներ արտահայտվել են և անցյալում, բայց այդ բոլոր գուշակումները ցրվել են ու մոռացվել։ Միթե արվեստը պետք է այն հասարակությանն ու մարդկանց, որոնք կյանքում չտեսնելով իդեալը, արվեստի միջոցով ցանկանում են իդեալի իլյուզիա ստեղծել։ Արվեստը պատկերում է ոչ թե իլյուզիաներ, այլ ռեալ կյանքից վերցրած փաստեր ու դրվագներ։ Արվեստի դերն ու նշանակությունը մեծանում են կատարյալ՝ կոմունիստական հասարակարգում։ Կոմունիզմն արվեստի աստիճանի է բարձրացնում մարդու առօրյան, աշխատանքային գործունեությունը։

Կոմունիզմի ծավալուն կառուցման ժամանակաշրջանում նոր բովանդակություն են ստանում աշխատավորության էսթետիկական դաստիարակության գործը, նպատակն ու խնդիրները։ «Պարտիան,— ասված է ՍՄԿՊ Ծրագրում,— անդուլ կերպով կհոգա գրականության, արվեստի, կուլտուրայի ծաղկման, յուրաքանչյուր մարդու անձնական ընդունակությունների առավել լրիվ դրսևորման համար, բոլոր պայմանների ստեղծման, բոլոր աշխատավորների էսթետիկական դաստիարակության, ժողովրդի մեջ գեղարվեստական բարձր ճաշակի և կուլտուրական ունակությունների ձևավորման մասին»։



«Պաշտպանելով այն ամբողջ իսկապես արժեքավորը, որն արտացոլում է արվեստագետի ձգտումը՝ բացահայտել և վառ կերպարներում դրոշմել կոմունիզմի կառուցման դարաշրջանի վիթխարի մեծագործությունները, սովետական մարդու սխրագործությունների վեհությունը, պարտիան այսուհետև նույնպես անկոմպրոմիսային պայքար կմղի ամեն տեսակի գաղափարական տատանումների, գաղափարախոսությունների խաղաղ գոյակցության քարոզի դեմ, ֆորմալիստական սեթևեթության, գորշության ու արհեստավորության դեմ գեղարվեստական ստեղծագործության մեջ, հանուն սովետական արվեստի՝ սոցիալիստական ռեալիզմի, արվեստի պարտիականության և ժողովրդայնության»։

(ՍՄԿՊ ԿԵՆՏԿՈՄԻ ՀՈՒՆԻՍՅԱՆ ՊԼԵՆՈՒՄԻ ՈՐՈՇՈՒՄԻՑ)

Նշանավոր ՏԱՐԵԹՎԵՐ

# ԺՈՂՈՎՈՒՐԴՆԵՐԻ ԵՂԲԱՅՐՈՒԹՅԱՆ ԵՎ ՀՈՒՄԱՆԻԶՄԻ ԵՐԳԻՉԸ

ՍՈՒՐԵՆ ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆ

*Խաղաղության Համաշխարհային խորհրդի որոշմամբ այս տարի, հոկտեմբերին տոնվում է Սայաթ-Նովայի ծննդյան 250-ամյակը։*

*Հայ մեծ բանաստեղծ, Անդրկովկասի ժողովուրդների սրտագին բարեկամ ու երգիչ Սայաթ-Նովայի միջազգային հոբելյանը, հիրավի, խոշոր իրադարձություն է առաջավոր մարդկության կուլտուրական-հոգևոր կյանքում։*

*Մնաց Սայաթ-Նովան ժողովուրդների սրտում, բացելով նրանց առաջ հումանիստական իր հոգին և մտաշխարհը, ընծայեց նրանց իմաստուն իր խոսքը, մեղեդին, արվեստը, տառապյալ մարդու համար, անկրկնելի խորությամբ ու ներշնչանքով փառաբանեց մարդուն։ Ներկայացավ Սայաթ-Նովան մեր արդիականության իր ստեղծագործության աշխարհասեր-ժողովրդական ոգով, մրշտապես իր ջերմ սիրով աշխարհի բոլոր տառապող մարդկանց հանդեպ։ Նրա մեջ պահպանվեց և ապրում է ամենաարժանին՝ ժողովրդի ու ժողովուրդների խոր զգացողությունը, այդ զգացողության բնական, անկաշկանդ, անսահմանափակ դրսևորումն արվեստի մեջ։ Մարդու էության մեջ գարնան, նրա զարթոնքի երգիչն է Սայաթ-Նովան։*

## 1

*Սայաթ-Նովայի կյանքը բռնում է համարյա ամբողջ 18-րդ դարը։ Այդ դարում գործեց նա։ Սակայն նա ապրում էր ժողովրդի մեջ, բայց ոչ տպագիր խոսքով։ Տպագիր գրականությունը լռում էր նրա մասին։ Ընդամենը 110 տարի է, ինչ տպագիր գրականության առարկան է դարձել նրա ստեղծագործությունը՝ նվաճելով իր տեղը համաշխարհային պոեզիայի մեջ։*

*Բանաստեղծի երգերի անդրանիկ ժողովածուն լույս է տեսել 1852 թվականին, Մոսկվայում։ Գրքում տեղ էին գտել հայերեն 46 երգ, այժմ մեզ հայտնի մոտ 220 երգերից։ Սայաթ-Նովայի «գյուտարարն» էր բազմահմուտ գիտնական-բանասեր, բժիշկ Գևորգ Ախվերդյանը։ Նա կորստից փրկեց բանաստեղծի գրական ժառանգությունը, տվեց ընթերցողին գուսանի տպագիր առաջին տաղարանը, հիմնադրեց սայաթնովագիտությունը։*

*Գ. Ախվերդյանը լայն կապեր ուներ Անդրկովկասի ու Ռուսաստանի կուլտուրական աշխարհի հետ։ Ռուս բանաստեղծ Յակով Պոլոնսկին նրա միջոցով ծանոթացավ Սայաթ-Նովային և արդեն իսկ 1851—53 թթ. «Кавказ» թերթում հոդվածներ տպագրեց նրա մասին, թարգմանեց նրա երգերից մի քանիսը, նրա նմանությամբ բանաստեղծություններ գրեց։ Սայաթ-Նովան, Ախվերդյանի ուսումնասիրությունը 1850-ական թվականներին ընկած արձագանք գտան Արևմտյան Եվրոպայի արևելագետների շրջանում։ Վրաց իրականության մեջ*





Ալ. Ճավճավաձեն, Գր. Օրբելիանին, հետագա գործիչների մի ամբողջ սերունդ մինչև Ի. Գրիշաշվիլին և Գ. Լեոնիձեն հետևեցին Սայաթ-Նովային և վերծանեցին նրա վրացերեն երգերը, ստեղծեցին վրաց սայաթնովագիտությունը։ Հովհ. Թումանյանը, Գ. Բաշինջաղյանը, Ե. Չարենցը, սովետական դարաշրջանը, անձեռագործ արձան կանգնեցրին Սայաթ-Նովային։ Նա թարգմանվում է ռուսերեն, ֆրանսերեն, անգլերեն, գերմաներեն, իտալերեն, ռումիներեն, հունգարերեն, իսպաներեն։ Բանաստեղծի միջազգային հոբելյանի առթիվ ներկայումս նոր թարգմանություններ են լույս տեսնում օտար լեզուներով։ Սովետական Հայաստանում Սայաթ-Նովան առաջին անգամ հնչեց քրդերեն լեզվով։ Հայ, **վրաց**, ադրբեջանական բանաստեղծների ու գիտնականների մի քանի սերունդ իրենց նվիրական գործն են համարել ժողովրդին տալ մեծ բանաստեղծի գրական բազմալեզու ժառանգությունը. ստեղծվել է Սայաթ-Նովայի մեղեդիները կատարող արտիստ-երգիչների ազգային դպրոցը։ Սայաթ-Նովայի կերպարը դարձել է գրականության ու կերպարվեստի գերող նյութը։

Բանաստեղծի ժողովրդականացմանն անգնահատելի ծառայություն են մատուցել, հատկապես, ռուս գրողները. նրանցից առաջին հերթին պետք է հիշատակել հռչակավոր բանաստեղծ, գիտնական, թարգմանիչ Վալերի Բրյուսովին։ Նա թարգմանեց Սայաթ-Նովային անօրինակ վարպետությամբ, միաժամանակ հրապարակ եկավ որպես մեկնաբան-քննադատ։ Սայաթ-Նովայի մասին է գրել Բրյուսովը. «Ճշմարտապես գեղեցիկը ստեղծել են և գուսաններից լավագույնները, որոնց մեջ առաջին տեղը գրավում է Սայաթ-Նովան, 18-րդ դարի բանաստեղծը, մեծ, բազմակողմանի... մեկն այն առաջնակարգ պոետներից, որոնք իրենց հանճարի ուժով արդեն դադարում են առանձին ժողովրդի սեփականությունը լինելուց, բայց դառնում են ամբողջ մարդկության սիրելիները» [1]։

## 2

Սայաթ-Նովայի կենսագրությունը շատ կողմերով դեռ անհայտ է մնում։ Եղելությունն ու առասպելը հաճախ միահյուսվում են իրար. նույն առասպելի հիմքում կա, ապրում է և՛ իրական փաստը։ Սակայն Գ. Ախվերդյանը, երկար որոնումներից ու հետազոտություններից հետո, հայտնել է այս տեղեկությունները. Սայաթ-Նովան ծնվել է 1712 թվականին, գործել է Թիֆլիսում, տեսել, իր մաշկի վրա զգացել է հասարակ մարդու տառապանքը, բայց իր տաղանդի ուժով ճանապարհ է բացել կյանքում ու արվեստում, եղել է պալատում, վտարվել այնտեղից, շատ տարիներ մնացել է Հաղպատի վանքի մռայլ կամարների տակ, սակայն երբ առել է պարսից Աղա Մահմադ խանի կողմից Թիֆլիսի վրա հարձակվելու ողբերգական լուրը, մեկնել է Թիֆլիս, նետվել կռվի մեջ և 1795 թվականին սպանվել բարբարոսների ձեռքով, մահացել ազատատենչ հայրենասերի մահով։

Գ. Ախվերդյանից հետո Գ. Ասատուրը, Գ. Լևոնյանը, Լ. Մելիքսեթ-բեկյանը, Ի. Գրիշաշվիլին, Գ. Լեոնիձեն, Մ. Հասրաթյանը նոր տվյալներով լրացրին ու հարստացրին մեր պատկերացումը Սայաթ-Նովայի կյանքի ու գործունեության վերաբերյալ։ Չափազանց արժեքավոր էին այն ապացույցները, որ տալիս էին վրաց սկզբնաղբյուրները, և որոնց մասին գիտության մեջ հանդես եկավ բանաստեղծ՝ ակադեմիկոս Գ. Լեոնիձեն 1930 թվականին։ Ըստ նոր ապացույցների Սայաթ-Նովան (ծննդով՝ Հարություն Սայադյան) ծնվել է Սանահին գյուղում. այստեղ էլ ստացել է իր նախնական կրթությունը. նա ճորտ է եղել։ Ծագումով և իր վիճակով ճորտ Սայաթ-Նովան մի քանի անգամ, իր սեփական տողերում արձանագրել է այդ փաստն ու դրությունը։ Վրացական սկզբնաղբյուրն ասում է. «Դա Հերակլ Երկրորդի թագավորության ժամանակն էր, երբ Գեորգի 13-րդը դեռ թագաժառանգ էր։ Սայաթ-Նովան նրա ճորտն էր և գտնվում էր նրա շքախմբում, բայց հաճախ լինում էր Հերակլ 2-րդի մոտ, որովհետև լավ

[1] Տե՛ս «Поэзия Армении» ժողովածու, Մոսկվա, 1916 թ., էջ 7։

նվագող էր։ Երաժշտական տարբեր գործիքների վրա նվագելով, նա և՛ երգում էր։ Երգերի ոտանավորներն էլ ինքն էր հորինում։ Նա ծագումով Սանահնից էր — Գևորգի Թագաժառանգի արքունական գյուղից, Վրաստանում ապրող հայերից» [1]։

Սանահինը՝ Հայաստանը մանուկ Արութինին սնել է անհաղթահարելի սիրով դեպի բնությունը, ջերմ սիրով հայրենի ճարտարապետական կոթողների նկատմամբ, տվել է նրան հայ հին դասական լեզուն, որին նա տիրապետել է տեղում։ Ամբողջ կյանքում անբաժան են եղել նրանից այն պատկերները, որ ներշնչել են մանկանը Լալվարն ու Լոռին, ապա և անցել նրա երգերի մեջ։ Ծորտի և հանճարեղ բանաստեղծի կյանքը իր հոգևոր սնունդն առել է նաև Վրաստանում, ապա և պատմական այն մթնոլորտում, որի նկարագիրը և պոետական վերստեղծումը Սայաթ-Նովայի գործը եղավ։

Մեր առաջ կանգնած է Սայաթ-Նովան որպես խոշոր անհատականության տեր մի ստեղծագործող, աշխարհատես, մտածող-փիլիսոփա, նաև բարոյագետ։ Այդ իսկ պատճառով նրա ստեղծագործության մեջ անբաժան են էթիկան ու էսթետիկան, միտքը, գաղափարը և զգացմունքը։ Գեղարվեստական պատկերի մեջ օրգանապես թափանցում են բնությունը, կյանքը, մարդու ներաշխարհը։ Իր բարդ էությունը, իր պոեզիայի բովանդակությունը նա արտահայտել է ամենանրբին եղանակով, երբ խոսքն ըմբռնել է իբրև զգացմունքայի երաժշտություն, հնչյունի մեջ տեսել խոսքի ու մտքի առաջատար ուժը։ Հայ և անդրկովկասյան ազգամիջյան կուլտուրական միջավայրում Սայաթ-Նովան բյուրեղանում է որպես սինթետիկ արվեստագետի տիպար, որի բանաստեղծությունը երգ է միաժամանակ, ուղղված ժողովրդական լայն խավերին։ Նա միավորեց իր մեջ բանաստեղծին, երգահանին, երգչին, երաժշտին։ Այսպիսի հզոր միջոցներով, այսքան արվեստներով զինված Սայաթ-Նովան խոսքը, երգը և կատարողական իր վարպետությունը տվեց ժողովրդին, իր դրոշի վրա գրած լինելով ծառայություն , իսկապես, ժողովրդին։ «Խալխի նոքար» է եղել նա, գիտակցված այն ծրագրի մարմնացումը, որ արվեստն իրենով համակում է մարդուն, մարդու հոգևոր կյանքի հարստացման աղբյուր է նա, մարդը դաստիարակվում է արվեստի մոգական ուժի ներգործությամբ։ Արվեստն ինքը պետք է ունենա այդ ուժը, որպեսզի գրավի իր սազական տեղը հասարակության, ժողովրդի, մարդու կյանքում։

Եվ, սակայն, Սայաթ-Նովան ապրում է դարերով բոլոր այն բարձր պահանջների իրականացմամբ, որ ներկայացվել ու ներկայացվում են ճշմարիտ արվեստին, իսկապես մեծ գրականությանն ու պոեզիային և որոնց կենդանի մարմնացումը, հիրավի, ինքն է՝ Սայաթ—Նովան, մեկն այն հանճարներից, որոնք հավերժ հպարտ են պահում ժողովուրդներին։

Սայաթ-Նովայի սխրանքն այն էր, որ նա խորապես ըմբռնեց իր դարը, ըմբռնեց և իր խոսքն ուղղեց տիրապետող չարիքի դեմ, երկնեց իր երգը նաև ապագայի համար։

## 3

Որպիսի՞ն էր Սայաթ-Նովայի դարը. ի՞նչպիսին էր բանաստեղծի դիրքը ժամանակի առեղծվածների նկատմամբ։

XVIII դարի 40—50-ական թվականներին է ստեղծել իր երգերի մեծ մասը Սայաթ-Նովան։ Ավելի ուշ նա քիչ բան է հորինել, համենայն դեպս, քիչ թվով երգեր են հասել մեզ դարավերջի ժամանակներից։

Վերին աստիճանի զգայուն հոգու տեր բանաստեղծն իրականության մեջ, շրջապատի և բնության մեջ նախապես նկատել և վերապրել է «խաս» գույնը, տրամադրել իրեն այնպես, որ երջանիկ է մարդը, երբ կա և գոյություն ունի

[1] Բոլոր նորագյուտ փաստաթղթերը տե՛ս Д. Джанелидзе. «Грузинский театр» գրքում, էջ 289—293, Թբիլիսի, 1959 թ.։ Սայաթ-Նովան ինքը վկայում է՝ «Սայաթ-Նովան Գուրգեն խանի ղուլը կոսին, ճշմարիտ է»։



բնությունն՝ իր սքանչելի դրսևորումներով, երբ կա հայրենիքը, նրա ժողովուրդն ու լեզուն, կան լեզուները, որոնցով հաղորդվում է սերունդներին «փիր ուստադների»՝ իմաստունների հոգևոր ժառանգությունը։ Բնությունը, կյանքը, իրականությունն ու աշխարհը իբրև մեծ ռեալականություն ընդունող բանաստեղծը տեսնում էր ժամանակների կապը, բնության, կյանքի ու աշխարհի անքակտելի միասնությունը և գիտակցում իրեն որպես մի անոթ, որն անդրադարձնում է իր մեջ ռեալ կյանքի, իրական բնության, մարդու հարուստ բովանդակությունը։ Օբյեկտիվորեն գոյություն ունեցող իրականը բեկվել է Սայաթ-Նովայի մեջ առանց աղճատումների։ Մարդն ու բնությունը նրա երգերում ներդաշնակ մարմնացում են գտել։

Սայաթ-Նովայի ուժն այն է, որ նա կանգնեց մարդու, բնության, աշխարհի առաջ, ըմբռնեց, հասկացավ նրանց՝ իրենց ռեալականության մեջ, բացեց իր միտքը՝ յուրացնելու և վերարտադրելու այդ ռեալականության կերպարը, հետամուտ լինելով մի բանի՝ հասնել ճշմարտության, ասել ճշմարտությունը։

Սակայն բանաստեղծը ճանաչեց ո՛չ միայն այն, ինչ գեղեցիկ էր իրականում. ճանաչեց նաև հակասությունները։

Մարդով, բնությամբ, աշխարհով երջանիկ լինելու, երջանկությունն ու սերը որպես ամենամեծ զգացմունք արտահայտելու պատրաստ բանաստեղծը նույն իրականության մեջ տեսավ հակոտնյա ուժեր, ամենածանր բախումներ, սոցիալական-դասակարգային բևեռացումներ, որոնք ծվեն-ծվեն էին անում հասարակության ներքին կյանքը։

Ավատականության, ֆեոդալիզմի, ճորտատիրության անարգել տիրապետության դարաշրջանում է ապրել ու ստեղծագործել Սայաթ-Նովան, մարդավաճառության, մարդու ամենատարրական իրավունքների ոտնահարման խայտառակագույն էպոխայում։ Անդրկովկասը, գտնվելով ազնվական, բեկական-խանական տերերի ձեռքին, չուներ ոչ տնտեսական, ոչ քաղաքական իր նորմալ կյանքը։ Գյուղացիական լայնատարած երկրամասում աշխատավոր գյուղացին զրկված էր ամեն ինչից, բացի օդից։ Նրան ազնվականը դրել էր անասունի վիճակում, դարձել նրա բացարձակ տերը։ Քաղաքներում արտադրող ձեռքը հավաքագրվել էր համքարությունների մեջ, որտեղ որքան ակնառու էր վարպետի տաղանդի արդյունքը, այնքան և պրիմիտիվ էր արտադրության եղանակը։ Խոշոր ազնվական-կալվածատեր-ճորտատերն ինքն էր հաճախ դառնում արտադրության նախանձախնդիր դեմքը, այն էլ սեփական դեխ կյանքը մշտապես ապահովելու և ավազակաբարո քաղաքականությանը գոհացում տալու համար։ Միապետական, ազնվական բռնակալությունը չգիտեր և չէր ճանաչում ո՛չ օրենք, ո՛չ դատ։ Օրենքն ինքն էր, իր սուբյեկտիվ կամքը, անօրինություններ սերմանող միակ «աստվածությունը»։ Քրիստոսի ու Մուհամեդի ուսմունքն այս պարագայում ծառայում էր որպես զենք, որն ուղղված էր մարդու և ժողովրդի դեմ, ֆիզիկական բռնությանն ավելացնելու հոգևոր բռնության ավելի դաժան լուծը։

Չմոռանանք երբեք, որ ֆեոդալական կրոնական գաղափարախոսությունը վերից թելադրվում էր հասարակության բոլոր խավերին, կրոնն ու ճորտատերը բռնել էին մարդու կոկորդից, ջանում էին խեղդել նրա ազատասիրությունը, ստրուկ պահել ժողովրդին։ Գյուղացին պատասխանում էր տիրոջն իր մաքառումներով, բարձրանում էր լեռները, լքում ճորտատերի դաշտը։ Ազնվականությունը կորցնում էր իր նախկին դիրքերը, ուժը, հեղինակությունը։ Սայաթ-Նովան, և ոչ այլ ոք, նկատել է տալիս այս երևույթը, երբ ասում է. «Խանրն մե ղուլ չին պահում,— աղերումեն բեգարիլ իմ»։

Վրաստանը, Անդրկովկասը շատ հաճախ ենթարկվում էին Դաղստանի լեռնական ֆեոդալների հրոսակախմբերի ասպատակություններին։ Թալանը, կողոպուտը, Թուրքիայի ու Իրանի ագրեսիվ քաղաքականությունը, նրանց տիրապետությունն Անդրկովկասում ստեղծել էին հայ, վրացի, ադրբեջանցի ժողովուրդների համար ծայրահեղ ծանր ու ողբերգական մի կացություն։

Սայաթ-Նովան ստեղծագործում էր այս ժամանակաշրջանում, պատմական կոնկրետ այս իրադրության մեջ, երբ օտարի լուծը և ներքին տիրոջ շառա-

Բանաստեղծը բարձր պահեց Վրաստանի արժանապատվությունը, ոչինչ չխնայեց դրա համար, գիտեր դիպուկ կերպով պատասխան տալ ագրեսորին (Իրանին), երբ սա ոտնձգություններ էր անում Վրաստանի դեմ։ Պատմում են, որ իրանական դեսպանի լկտի պահանջներին Սայաթ-Նովան տվել է այս խրոխտ պատասխանը.

Աստղալոնով ծովըն ինչպես կու ջամֆի.
Մաղով Քռի ջուրըն ինչպես կու չափվի.
Ըռֆան գուզե ֆամին փրչե մինձ ուժով,
Ժեռ ֆարեմեն յի՞փ կանա մե բան տանի։

Պալատում էլ նա մնաց քաղաքացի-բանաստեղծ, երկփեղկված տեսավ իրականությունը, գիտեց այն բազմակողմանիորեն։ Սայաթ-Նովան իր տարերքի մեջ էր լինում, երբ ականատես էր լինում թե որպիսի եռանդ է գործադրվում օտար բռնակալության դեմ մղվող պայքարում։ Սակայն նա գլուխ չխոնարհեց ազնվականության դասային ու դասակարգային մտածողության առաջ, ո՛չ միայն մերժեց այդ մտածողությունը, այլև սուր բախումներ ունեցավ ազնվական միջավայրի հետ, վտարվեց պալատից, աշխարհիկ սիրո և մարդուն փառաբանող պոեզիայի մեծ վարպետը աքսորվեց մենաստան, վանքերի մռայլ կամարների տակ սպանելու իր օրը։

Վրացերեն ու հայերեն ստեղծած մի շարք երգերում Սայաթ-Նովան անդրադարձել է ազնվականության ու պալատի հետ ունեցած իր անհաշտ պայքարը, տեսել այն վիհը, որ գոյություն ուներ իր՝ որպես գյուղացու, ժողովրդական մտածողի ու երգչի և ազնվականության, տերերի, պալատի միջև։

Այժմ Հերակլին է նա դիմում, նկարագրելով իր շուրջը ստեղծված մթնոլորտը, թե որպես պալատը, ազնվականները ծաղրել են նրան՝ ճորտին-գյուղացուն.

Արթար դատե, չէ՞ վուր թաֆավուր իս դուն։
Վրաստանում տեր ու զորավուր իս դուն.
Մեկն ինձ կոսե՝ «գնա մաշված ջուր իս դուն»,
Մեկն էլ կոսե՝ «մե ճոտած ջրճուր իս դուն...»

Վուչ ճարսնախոս ունիմ, վուչ էլ կողակից,
Մեջլիսումն էլ ճուր խաղֆ արին, ծաղրեցին.
Ցիս ռամիկ իմ, ինձի վուխչ-վուխչ թաղեցին...

Սայաթ-Նովան զգաց, որ պալատում, ազնվականության մեջ իրեն մահ է սպասում։ Հերակլին նա ասաց.

Ցիս խոմ էն գըլխեն էրած իմ, ճուրմեկանց ֆաքար մի՛ անի...
Սայաթ-Նովու գերեզմանըն Հինդ, Հաբաշ, Արաբ մի՛ անի։

Բանաստեղծի քնարով խոսեց բուն ժողովուրդը, երբ նա ի լուր բոլորի հայտնեց իր նվիրվածությունը հարազատ մորը՝ ժողովրդին.

Ջեռ վի կալ, վադ մարթութին չիմ ուզում.
Էս աշխարհում փարթամութին չիմ ուզում.
Վադ բան ասիլ, յա վադութին չիմ ուզում,
Ցիս մարդ մարթ իմ՝ նամարդութին չիմ ուզում...
Ցիս ռամիկ իմ՝ թավադութին չիմ ուզում։

Ազնվականության դեմ Սայաթ-Նովան ուղղեց ժողովրդական երգչի իր սեփական ինքնագիտակցությունը։

Ամեն մարթ չի կանա խըմի՝ իմ ջուրըն ուրիշ ջրեն է,
Ամեն մարթ չի կանա կարթա՝ իմ գիրըն ուրիշ գրեն է,
Բունիաթըս ավազ չիմանաս՝ ֆարափի է ֆարուկըրեն է....



Չափազանց կարևոր է այն ևս, որ Սայաթ-Նովան ձուլված էր տեսնում իրեն բուն ժողովրդի հետ, իրեն դիտում էր ժողովրդի համեստ ծառայի դերում, անէանում ժողովրդի մեջ—և չէր տալիս իր հանճարը տերերին.

Մի՛ ածի խուզի առչիվն լալ ու գովճար, Սայաթ-Նովա...

Իր գիտակցական արվեստը նա, հիրավի, նվիրաբերել է ժողովրդին.

Խալխի ճամար կինֆ մաշեցի, ջան տվի՝
Տապանիս ֆարն էլ ախպերըս կու ֆաշե։

## 5

Սայաթ-Նովայի ստեղծագործության մեջ սփռված են իր ապրած օրերի հասարակության ներքին կյանքը բնութագրող նրա մտքերն ու խոհերը։ Նրանք հստակ երևան են բերում բանաստեղծի վերաբերմունքը դասերի ու դասակարգերի, պետության, իրականության մեջ թագավորող սոցիալական չարիքի նկատմամբ։ Պարզ պատկերացում ենք ստանում այն մասին, որ գուսան-փիլիսոփայի աչքից ոչինչ չի վրիպել, ընդհակառակը, ամեն ինչ, ամեն մի երևույթ, մարդկային ամեն մի վարքագիծ դարձել է նրա մտածողության առարկան։ Նա շքեղ է իր պատկերների մեջ, երբ սեր է երգում. խիստ պարզ է, երբ խորհրդածում է դաժան իրականության մասին և տալիս բանաձևումներ, ընդհանրացումներ, որոնք ապացուցում են, թե բանաստեղծը, իսկապես մեծ անհատականության տեր է, միանգամայն ինքնուրույն է և ինքնատիպ ընտրած իր սոցիալական դիրքերում։ Բնորոշը, հիրավի, հենց այդ է՝ նրա քննադատական հայացքը օրերի, տարիների, նույնիսկ դարաշրջանի հանդեպ.

Ղարիբ իմ, արուն իմ լալի
Դժար դարի ճանդիբելով.
Տեր իմ կանչում կսկծալի,
Կինֆում չարի ճանդիբելով։

Անպատասխան սերը խռովում էր բանաստեղծի հոգին։ Բայց ազնվականուհու նկատմամբ ունեցած նույն սերը ճանաչել տվեց ո՛չ միայն տիրողների միջավայրը. սա դեռ շատ քիչ բան է ասում։ Բանաստեղծը տեսել ու ճանաչել է իրականությունն ինչպես որ կա, քննադատել այն անողոք կերպով, ասել է ճշմարտությունը՝ մերկանդամ։ Նա տվել է սոցիալական հակասությունների նկարագիրը, հասարակության սոցիալական բևեռների բնութագիրը.

Էնդուր կույամ՝ սիրտը կոտրած աղյուծըն
Գող աղվեսեն է իր վերֆըն ստացիլ.
Ազնիվ մարթը ապրուստի է ման գալի,
Ամեն գյադա զարբաբի է տիրացիլ։

Մոտիկըս յադ դառավ, ամա՞ն, չը մնաց,
Աղունացը պակսից, գուման չը մնաց,
Էլ ճշմարիտ, արթար իման չը մնաց,
Էնդուր սիրտըս փարա-փարա է դարցիլ։

Պարզ, վերին աստիճանի հստակ պատկերացում ունի բանաստեղծը կյանքում արտահայտված և գոյություն ունեցող հակասությունների մասին.

Մարթ կա ուրախ, մարթ կա տրխուր ու փոշման.
Մեկին՝ մըսխալ, էն մեկելին՝ ճինգ բաթման.
Էրկու բան կա իրար դուշման ճավիտյան,
Մեկը կինֆն է, մեկն էլ մաճն է անկըշտում։

Վուրըն ախկատ, վուրըն օսկով մե գանձին,
Վուրին գինի, վուրին աղու մե բանգի.
Մեկը կոծե սազ, էն մեկն էլ իր չանգին.
Մեկին դամ ու վայելք, մեկին՝ ցավ ու սուք:

*Միշտ ալեկոծված է Սայաթ-Նովայի ներաշխարհը. նա միշտ բախման մեջ է իրականության հետ, նետահարված է նրա հոգին, աչքերից արյուն է կաթում:*

*Ի վերջո, բանաստեղծը «երկու դարի», երկու իրականության խոր վերլուծությունն է տալիս, կառուցում է իր սեփական բարոյագիտական ուսմունքը՝ ուղղված տերերի դասակարգային բարոյականության դեմ: Որքա՞ն լավ է գիտակցել բանաստեղծը այն ճշմարտությունը, որ բոլոր արատներն ու ստորությունները ծնում են վերնախավերը, և, ընդհակառակը, բոլոր առաքինությունների, բոլոր ազնիվ հատկությունների տերը ժողովուրդն է: Թագավորը զուլ սպանող է, թագավորը բանտերի ու վանդակների մեջ է թաղում մարդու մաքրամաքուր սերը դեպի մարդը: Բազարը (շուկան) օձերի վայր է.*

Բազար իս գըցի,
Փայ չանիս օցի:

*Բռնություն, գռեհիկ ուժ, կամայականություն, տխրություն ու վիշտ, տառապանք, անվերջ տառապանք—ահա՛ ինչ էր տեսնում Սայաթ-Նովան իրականության մեջ: Դանթեական էր նրա ընկալումը կյանքի, երբ ասում էր.*

Ջուրս գլխանի ռաշի վրեն աջալըն դըրիլ է թամքըն՝
Աշխարըս միզ մնալու չէ՝ մալ անիլըն ինչի՞ն է չանի:

*Ողբերգական էր կյանքը, ողբերգական էր բանաստեղծի խոհը կյանքի վերաբերյալ: Աշխարհատես, կենսասեր, մարդու հոգու մեջ գարնանային զարթոնքի երգիչը այնքան ուժեղ, այնպիսի անսահման պաթոսով էր քննադատում կյանքը, որ տեսնում էր այն կրակների մեջ, բոցերի մեջ, կործանման եզրին.*

Աշխարըս՝ մե փանջարա է,— թաղերումեն բեզարիլ իմ.
Մըտիկ տըվողըն կու խուցվի,— դաղերումեն բեզարիլ իմ...

*Որտե՞ղ էր փնտրում բանաստեղծն իր հանգրվանը: Ժողովուրդն էր նրա հանգրվանը, հասարակ մարդը, հովիվը, գյուղացին, նրանց պարզ կյանքը, նրանց վաթանը: Սայաթ-Նովան սպառնում էր տերերին ամենակուլ մահով, նրա տողերից «հանկարծ» ցայտում է այն միտքը, որ թավադն ու տերը կարող են չլինել, որ բռնության թագավորության փոխարեն պետք է լինի սիրո թագավորությունը:*

*Սոցիալական հակասությունների, ճնշման, բռնության ընդդեմ խորհող, իրականության ողբերգական կերպարը վերստեղծող բանաստեղծն իրավունք ուներ բացականչելու.*

Հասա դուռն ճշմարտության, խմեցի էս սուրբ գինին...

*Բանաստեղծը հասել էր ճշմարտության նաև մարդու նկատմամբ, իր քնարը նվիրել էր մարդու փառաբանությանը: Որքան շատ արատներ է տեսել նա դասակարգային հասարակության մեջ, բայց առավել շատ ներշնչված է եղել իր սիրով դեպի մարդը:*

*Կրկնակի գնահատելի է Սայաթ-Նովայի գործը, երբ նկատի ենք ունենում նրա խիզախությունը—առ ոչինչ համարել կրոնի ու խավարամոլների ռեակցիոն քարոզը կնոջ վերաբերյալ, առ ոչինչ համարել բռնակալի սպառնալիքները՝ սպանելու բանաստեղծի սերը, իրեն.*

Չիմ քաշվի էկած մահեմեն,
Բալիփի տըված ահեմեն...
Թեգուզ ռաղամ գա Շահեմեն,
Յա՛ր, չիմի տա, չիմ հիռացնի քիզ քու յարեմեն, բարեբարեմեն:

*Պոլոնսկին, Թումանյանը, Բրյուսովը, սովետական սայաթնովագիտությունը նկատել են տվել, որ Սայաթ-Նովայի համար կինը ընկեր է, «բարեբար»—տղամարդուն. բանաստեղծը մարդկային, վերին աստիճանի առողջ հայացք ունի կնոջ նկատմամբ: Նա կնոջ մեջ գտել է ստեղծագործական եռանդի աղբյուրը, միստիկ, վերացական, հիվանդագին պատկերների փոխարեն, կինը ներշնչել է նրան ստեղծելու բնության զարթոնքն ապրող զգացմունքներ: Մոնոլիտ, հավերժ, թարմ և նվիրական է Սայաթ-Նովայի սիրային այդ զգացմունքը: Բնության, սիրո, կնոջ, մարդու մեջ է գտել Սայաթ-Նովան գեղեցիկը, նրա էսթետիկայի հիմքն էլ եղել է արվեստի ժողովրդայնությունը և մարդն իբրև գեղեցկի աղբյուր:*

*Մարդու-կնոջ հանդեպ ունեցած մաքուր և կուսական զգացմունքն էր թևավորում բանաստեղծին, երբ նա սահման ու տարածություն չէր գտնում մեծարելու կնոջը, չէր գտնում սիրային իր ապրումն արտահայտելու չափը—այնքա՞ն մեծ ու անչափելի էր այդ ապրումը: Կնոջ կերպարը ոտքի է հանում մարդկանց բազմություններ, կինն արդեն իսկ արվեստի ստեղծագործություն է, արվեստագետը կարծեք նույնիսկ անզոր է այդ կերպարը հանձնել կտավին.*

Էրեսըտ տեսնելու քու քան քաղաք քաղկով, գիղ՝ գիղի պես.
Միռնողըն քիզմեն կու առնե անմահական դիղ՝ դիղի պես...

Ծուցիտ մեչըն վարթ, մանիշակ, սոնբուլ ու սուսան իս չինի.
Քու տերըն բաղըն ի՞նչ կոնե՝ քու ճուտըն ռեհան իս չինի.
Քամին մեչըն անց է կենում՝ մազիրըտ էլքան իս չինի.
Աշխարքըն ծով, դուն մեչըն նավ—ման իս գալի, լանգ իս անում:

*Մարդու հանդեպ ունեցած սիրո «բեռը» Սայաթ-Նովան տանում էր երկրեերկիր, ուզում էր, որ բոլորն էլ ապրեն այդ սերը, այդպես ապրեն՝ ոգիացած, մտածեն, որ իրական սուլթանն ու խանը մարդու թշնամիներն են, իսկ տիրակալության իրավունքն ունեն միայն սիրով ոգիացած մարդիկ.*

Աշխարումըս ախ չիմ քաշի, քանի վուր ջան իս ինձ ամա.
Անմահական ջրով լիքըն օսկե փրնջան իս ինձ ամա.
Նըստիմ, վրես չըվաք անիս՝ զարբաբ վըրան իս ինձ ամա.
Սուչս իմացի, էնենց սըպանե՝ Սուլթան ու խան իս ինձ ամա:

*Ու Սայաթ-Նովան կնոջը-մարդուն համեմատում էր բնության ու տիեզերքի, մարդու ստեղծագործության հետ, բնության տված բարիքների, նրա գեղեցկությունների հետ, բայց գերագանց էր մնում դարձյալ մարդը.*

Ղումաշ ասիմ՝ շուրեղեն է, կու մաշվի,
Սալբի ասիմ՝ ախըր մին օր կու տաշվի,
Ջեյրան ասիմ՝ շատ մարթ քիզիդ կու յաշվի,
Բաս վո՞ւնց թարիփ անիմ՝ մարա իս գո՛զալ:

Թե մանիշակ ասիմ՝ սարեմեն կոսին,
Թե չավայիր ասիմ՝ քարեմեն կոսին,
Թե վուր լուսին ասիմ՝ տարեմեն կոսին,—
Արեգակի նըման փարա իս, գո՛զալ:

Բանաստեղծի մեջ մեկ անգամ ծնված զգացմունքն այնուհետև ապրեց որպես մեծագույն պարգև, որին երբևէ կարող է արժանանալ մարդը։ Ծնվեց այդ զգացմունքը կյանք տալու մարդուն. մարդու հոգևոր ծնունդն էր երգում Սայաթ-Նովան։ Սերը արեգակ է, որ ծածկում է նույնիսկ իրական արեգակին։ Սերը բարիք է հենց աշխարհին.

Աշխարհս շրվա՜ է իս անում՝ սալբու չինար իս, գովելի…

Սայաթ-Նովան բարձրացրեց հումանիզմի դրոշը։ Անձամբ ինքը՝ բանաստեղծը, չստացավ իրեն արժանի պատասխանը։ Դասային նախապաշարմունքը խեղդեցին նրա սերը։ Նա սիրեց որպես մարդ, բայց ազնվականությունը ծաղրեց նրան։ Սայաթ-Նովայի սերը ապագայի համար էր։



Մարդն է Սայաթ-Նովայի ստեղծագործության առարկան. մարդու մեջ նա գտավ արվեստի առաջին աղբյուրը։ Նրա արվեստի «գաղտնիքն» էլ այն է, որ նա մարդու մեծարման չափանիշը համարեց մարդուն։ Բանաստեղծական բոլոր համեմատությունների ատաղձը նա որոնեց բնության մեջ, կյանքում, իրականության մեջ, որպեսզի արժանին հատուցի ամենից առաջ մարդուն։ Նա խոսքի վարպետ էր, գիտեր խոսքից հրաշք ստեղծել. անսպասելի պատկերային գյուտեր է արել մարդուն երգելիս, զարմանալիորեն բյուրավոր երանգներ է բացահայտել և ամեն անգամ կարդալիս, նորից նոր հաճույք ես ստանում, էսթետիկական անհաղթահարելի ուժի հաճույքը։

Սայաթ-Նովան հայկական պոեզիան դրեց զարգացման մեծ ճանապարհի վրա։ Ինչ նա ասել է, ինչ նա ապրել ու արտահայտել է, վերաբերում էր ժողովրդին, մարդուն, մեծ արվեստին։

Հաղթանակը տարավ Սայաթ-Նովան։ Թումանյանը լավ է նկատել այդ.

Խաղով եկավ,
Ախով գնաց Սայաթ-Նովան.
Երգով եկավ,
Վէրքով գնաց Սայաթ-Նովան.
Սիրով եկավ,
Սրով գնաց Սայաթ-Նովան։
Սիրով մնաց Սայաթ-Նովան։

Իմպերիալիստական պատերազմի, հայ ժողովրդի սպանդի օրերին Թումանյանը հարազատ ժողովրդի կրծքի մեջ տեսնում էր այն սուրը, որը և տարել էր Սայաթ-Նովային։

Հոկտեմբերյան սոցիալիստական մեծ ռևոլյուցիան վերածնեց Սայաթ-Նովայի հայրենիքը. հայրենիքի և ժողովրդի վերածննդի հետ վերածնվեց և Սայաթ-Նովան, որպեսզի դառնա բոլոր ժողովուրդների սեփականությունը։ Այդպիսին է նա այժմ, մեկն այն փառավոր անուններից, որոնք ապրում են այնքան, որքան կյանք ունեն եղբայրությունն ու հումանիզմը։



# ՊԱՐՏԻԱԿԱՆ ԿՅԱՆՔ

## ԵՏ ՄՆԱՑՈՂ ՏՆՏԵՍՈՒԹՅՈՒՆՆԵՐԸ ՀԱՍՑՆԵԼ ԱՌԱՋԱՎՈՐՆԵՐԻՆ

Մեր պարտիական կոմիտեի, սկզբնական պարտկազմակերպությունների և արտադրական վարչության գործունեության ելակետը, գլխավոր հոգսը եղել ու մնում է գյուղատնտեսական մթերքների արտադրության ավելացումը։ Դրան են ուղղված կազմակերպական և գաղափարական աշխատանքի բոլոր լծակները։

Գյուղատնտեսության էկոնոմիկան բարձրացնելու նպատակով նորաստեղծ պարտիական կոմիտեի առաջին գործը եղավ հանգամանորեն ուսումնասիրել արտադրության վիճակը յուրաքանչյուր կոլտնտեսությունում ու սովխոզում։ Դա խիստ անհրաժեշտ էր, քանի որ մեր արտադրական վարչության մի շարք տնտեսություններ անցյալ տարի չկատարեցին գյուղատնտեսական մթերքների արտադրության պլանները, մեկ ու կես տասնյակ կոլտնտեսություններ տևականորեն ետ էին մնում։ Այդպիսի վիճակին վերջ տալու, արտադրությունը ճիշտ պլանավորելու, աշխատանքի արտադրողականությունն անշեղորեն բարձրացնելու և ընթացիկ տարում բարձր արդյունքների հասնելու համար հարկավոր էր հանրագումարի բերել ու վերլուծել անցած տնտեսական տարվա արդյունքները, հայտաբերել ու գործողության մեջ դնել հանրային տնտեսության չօգտագործված ներքին ռեզերվներն ու հնարավորությունները։

Այդ նպատակով մեր պարտիական ակտիվի ու մասնագետների համատեղ ջանքերով համակողմանի ուսումնասիրվեց ետ մնացող կոլտնտեսությունների էկոնոմիկան և արդյունքները քննության առնվեցին կոլտնտեսականների ընդհանուր ժողովներում։ Պարզվեց, որ բոլոր տեղերում էլ ետ մնալու պատճառները հիմնականում նույնն էին՝ աշխատանքի վատ կազմակերպումը, ղեկավար կադրերի անհաջող ընտրությունն ու տեղաբաշխումը, աշխատանքի վարձատրման և կոլտնտեսականների նյութական շահագրգռության ոչ կատարյալ սիստեմը և այլն։

Դա գործի սկիզբն էր միայն։ Պարտիական կոմիտեն և արտադրական վարչությունը, հիմք ընդունելով պարտիայի որոշումները, իրենց առջև խնդիր դրին՝ կազմակերպական կոնկրետ աշխատանքով աստիճանաբար ու հաստատակամորեն բոլոր տնտեսությունները հասցնել առաջավորների մակարդակին, ամրապնդել նրանց էկոնոմիկան։ Եվ, պետք է ասել, որ մեր կողմից իրականացվող միջոցառումներն արդեն տալիս են դրական արդյունքներ։

Լավ չէր վիճակը, օրինակ, Այգեձորի կոլտնտեսությունում։ Այստեղ խիստ ցածր էր անասնաբուծության մթերատվությունը, մեծ էին անասունների անկումները, ֆերմաներում չկար պատշաճ կարգ ու կանոն, շատ անասնապահ-

ներ անտարբերություն էին ցուցաբերում հանձնարարված գործի նկատմամբ։ Դրությունը մխիթարական չէր նաև դաշտավարության մեջ։ Աշխատանքի վարձատրության գործող կարգը նյութապես չէր շահագրգռում կոլտնտեսականներին՝ աշխատելու ուժերի առավել լարումով, չէր խրախուսվում լավ աշխատողը։ Եվ ստեղծվել էր այնպիսի զավեշտական վիճակ, երբ հաճախ լոդրերը, աշխատանքում գլուխ պահողները ներադրվելով կոլտնտեսության ղեկավարների վրա, կարողանում էին գոփել ավելի շատ նյութական բարիքներ, քան իրենց ազնիվ աշխատանքի դիմաց ստանում էին առաջավոր կոլտնտեսականները։

Հարկ եղավ դիմելու վճռական միջոցների, առաջին հերթին փոխելու կոլտնտեսության ղեկավարությունը։ Աշխատանքից ազատվեցին ո՛չ միայն վարչության նախագահը, այլև կովաբուծական ու ոչխարաբուծական ֆերմաների վարիչները, դաշտավարական բրիգադայի բրիգադավարը։ Այդ պոստերում առաջ քաշվեցին ավելի գիտակ ու փորձառու, կազմակերպական ջիղ ունեցող մարդիկ։ Կոլտնտեսության վարչության նախագահ ընտրվեց ագրոտեխնիկ Շ. Խաչյանը. անասնապահական երկու ֆերմաները միավորվեցին և ֆերմայի վարիչ նշանակվեց զոոտեխնիկ Հ. Գրիգորյանը, իսկ դաշտավարական բրիգադայի բրիգադավար՝ հմուտ կազմակերպիչ Վ. Գրիգորյանը։ Վերանայվեց աշխատանքի վարձատրության գործող կարգը, մշակվեց ու արմատավորվեց աշխատանքի հիմնական և լրացուցիչ վարձատրության այնպիսի սիստեմ, որը բարձրացրեց աշխատանքի նկատմամբ կոլտնտեսականների նյութական շահագրգռվածությունը։ Կարգավորվեց կոլտնտեսության միջոցների ծախսման և եկամուտների հաշվառման գործը։ Պարտիական կազմակերպության որոշմամբ աշխատանքի վճռական տեղամասերը գնացին կոմունիստները և նրանց ընտանիքի անդամները։

Այս և կազմակերպական այլ միջոցառումների շնորհիվ կարճ ժամանակամիջոցում այստեղ դրությունը նկատելիորեն փոխվեց։ Ինչ խոսք, որ այժմ վաղ է խոսել տնտեսության ինչ-որ նվաճումների մասին։ Ուրախալին այն է, որ մարդիկ սկսել են աշխատել ջանասիրաբար, ամրապնդվում է կարգապահությունը, լավ են կազմակերպված գյուղատնտեսական աշխատանքները. կոլտնտեսությունը ժամկետից շուտ կատարեց կաթի, մսի և բրդի վաճառքի տարեկան պլանները։

Ծանր վիճակ էր ստեղծվել Շուռնուխի կոլտնտեսությունում։ Վարչության նախագահ Բ. Ռզաևը ոչ միայն լավ չգիտեր, այլև չէր ցանկանում խորանալ կոլտնտեսության էկոնոմիկայի մեջ, վատ կազմակերպիչ էր. ավելին, նա օրվա մեծ մասն անց էր կացնում միջնակարգ դպրոցում՝ դասեր էր պարապում։ Չէին կատարվում արտադրական պլանները, իջել էր անասունների մթերատվությունը, հոտում պակասել էր կովերի ու ոչխարների գլխաքանակը։ Կոլտնտեսության եկամուտների մեծ մասը շռայլվում էր առանձին մարդկանց կողմից, նվազել էին կոլտնտեսականների աշխօրերին բաշխվող եկամուտները։ Կոլտնտեսականներից շատերը զլանում էին հանրային գործերին մասնակցելուց և ուժն ու եռանդը ներդնում էին իրենց օժանդակ տնտեսության մեջ։

Պարտիական կոմիտեի առաջարկությամբ կոլտնտեսականների ընդհանուր ժողովը Բ. Ռզաևին ազատեց աշխատանքից և նրա փոխարեն կոլտնտեսության նախագահ ընտրեց Ս. Հասանովին, որը մեծ հեղինակություն է վայելում աշխատավորների շրջանում և ունի աշխատանքի հարուստ փորձ։ Նրա առաջին



գործն այն եղավ, որ կոլտնտեսականներին, ելնելով նրանց կարողությունից ու հմտությունից, ճիշտ տեղաբաշխեց արտադրության վճռական ճյուղերում և ուժեղացրեց պահանջկոտությունը յուրաքանչյուրի նկատմամբ։ Որոշ ժամանակ անց կոլտնտեսության նախագահի նախաձեռնությամբ մեքենայացվեցին արտադրական մի շարք պրոցեսներ, խստիվ կանխվեցին շռայլումները։ Այդ ամենը բարերար ազդեցություն թողեց արտադրության վրա։ Ընթացիկ տարվա յոթ ամսում, անցյալ տարվա նույն ժամանակաշրջանի համեմատությամբ, կաթի համախառն արտադրանքը ավելացավ 150 ցենտներով, յուրաքանչյուր ֆուրաժային կովի կաթնատվությունը՝ 91 կիլոգրամով։ Զգալի կերպով ավելացավ կովերի ու ոչխարների գլխաքանակը, նվազեց անասունների անկումը։ Ընթացիկ տարում կոլտնտեսությունն ավելի շատ անասնապահական մթերքներ վաճառեց պետությանը, քան 1962 թվականին։ Կոլտնտեսականները սեփական փորձով համոզվեցին, թե կոլտնտեսության ղեկավարի ճիշտ ընտրությունից որքան շատ բան է կախված։

Մի այլ օրինակ։ Լավ չէին Բայանդուրի կոլտնտեսության գործերը. այստեղ փաստորեն ձախողված էր աշխատանքը։ Սկզբնական պարտիական կազմակերպությունը չէր գտնվում իր կոչման բարձրության վրա, նրա տեսադաշտից դուրս էին մնացել արտադրության ղեկավարման հարցերը։ Մի շարք կոմունիստներ ոչ միայն խուսափում էին արտադրության մեջ աշխատելուց, այլև զբաղված էին անսկզբունք պայքարով։ Պարտիական կոմիտեն անդրադառնալով այդ հարցերին, մշակեց և իրականացրեց կոնկրետ, գործին օգնող մի շարք միջոցառումներ, որոնք գոհունակությամբ ընդունվեցին աշխատավորների կողմից։ Պարտիական կազմակերպությունը կարգի հրավիրեց պարտիայի անդամի բարձր կոչումն արատավորողներին, ուժեղացրեց ղեկավարությունն ու վերահսկողությունը արտադրության նկատմամբ. բարելավվեց քաղաքական-դաստիարակչական աշխատանքը կոլտնտեսականների շրջանում։ Կոմունիստները և նրանց ընտանիքի անդամներն սկսեցին ակտիվորեն մասնակցել հանրային աշխատանքներին, որոնց և հետևեցին անպարտիականները։ Արդյունքն այն եղավ, որ Բայանդուրի կոլտնտեսությունն առաջին անգամ գերակատարեց անասնաբուծական մթերքների արտադրության և վաճառքի պլանները։

Ետ մնացող տնտեսություններին օգնելու նպատակով մենք կիրառում ենք նաև այլ միջոցառումներ. ջանում ենք վերոհիշյալ կոլտնտեսություններում տարածել ու արմատավորել առաջավոր տնտեսությունների և աշխատողների դրական փորձը, սովորեցնել աշխատել նրանց օրինակով ու մեթոդներով, տարածել կոմունիստական փոխօգնությունը և այլն։ Օրինակ, Գորիսի «Ավանգարդ» կոլտնտեսությունն օգնում է Շուռնուխի տնտեսությանը. վաղ գարնանն այնտեղ եղան «Ավանգարդի» կոլտնտեսության նախագահ Վ. Բակունցը և ագրոտեխնիկ Վ. Հարությունյանը, որոնք իրենց խորհուրդներով կոլտնտեսության ղեկավարներին օգնեցին մշակելու գիտականորեն հիմնավորված ցանքատարածության կառուցվածք, արմատավորելու շարահերկ կուլտուրաների մշակությունը։ Նրանց խորհրդով կոլտնտեսությունը մշակեց երեք հեկտար ծխախոտ, որի սածիլը տրամադրեց Գորիսի կոլտնտեսությունը։ Ագրոտեխնիկի խորհրդով Շուռնուխի կոլտնտեսությունը մշակեց եգիպտացորեն և շաքարի ճակնդեղ, իսկ հացահատիկային կուլտուրաների բերքահավաքի ժամանակ «Ավանգարդ» կոլտնտեսությունն ինքնագնաց կոմբայնով հավաքեց վերոհիշյալ կոլտնտեսության հացահատիկի բերքի մի զգալի մասը։ Ետ մնացող տնտեսություններին

շեֆական օգնություն են ցույց տալիս նաև Սյունիքի, Նորաշենիկի, Վերիշենի սովխոզները և Խնածախ, Տեղ, Խնձորեսկ գյուղերի կոլտնտեսությունները։

Պարտիական կոմիտեի և արտադրական վարչության աշխատողները հետ մնացող կոլտնտեսությունների գործերով սկսել են զբաղվել ոչ թե ընդհանրապես, այլ կոնկրետ, շերտավորված կերպով, առաջին հերթին հանձնարարված գործի նկատմամբ բարձրացնելով արտադրության հրամանատարական կադրերի պատասխանատվությունը։ Միաժամանակ նրանք տեղերում օգնում են պարտիական կազմակերպություններին արտադրության վճռական տեղամասերում ճիշտ տեղաբաշխելու և օգտագործելու կոմունիստների ու կոմերիտականների ուժերը, ամրապնդելու աշխատանքային կարգապահությունը, ապահովելու բոլոր աշխատունակ մարդկանց ակտիվ մասնակցությունը կոլտնտեսությունների և սովխոզների գործերին։ Պարտիական կոմիտեն իր ամենօրյա կազմակերպական-քաղաքական աշխատանքով ձգտում է, որ սկզբնական պարտիական կազմակերպություններն ավելի կոնկրետ ղեկավարեն կոլտնտեսությունների և սովխոզների էկոնոմիկան, արդյունավետ օգտագործեն գյուղատնտեսական մթերքների ավելացման ռեզերվները և պատասխանատվություն կրեն յուրաքանչյուր տնտեսության արտադրական պլանների կատարման և գերակատարման համար։

Մեզ մոտ զգալիորեն կրճատվել է նիստերի ու խորհրդակցությունների թիվը։ Պարտիական կոմիտեի և արտադրական վարչության աշխատողներն իրենց ժամանակի մեծ մասն անց են կացնում արտադրության մեջ, գործնական օգնություն են ցույց տալիս պարտիական կազմակերպություններին և տնտեսությունների ղեկավարներին։ Մշակվել և կոլտնտեսություններին հանձնարարվել է ղեկավար աշխատողների և մասնագետների աշխատանքի վարձատրման նոր կարգ, ըստ որի վարձատրությունը խիստ կախման մեջ է դրվում գյուղատնտեսական մթերքների արտադրությունից և իրացումից։ Խոշորացնելով մանր ֆերմաները և բրիգադները, վերացնելով ավելորդ հաստիքները, վարչա-կառավարչական ապարատից և սպասարկող անձնակազմից կրճատվել է 180 մարդ։ Դրանից ստացվող տարեկան տնտեսումը կազմում է 100 000 ռ.։

Տնտեսությունն ամրապնդելու նպատակով վերջին ժամանակներս արտադրության վճռական տեղամասերը լրացուցիչ կերպով մշտական աշխատանքի են ուղարկվել 172 կոմունիստներ, որի շնորհիվ բրիգադներում ու ֆերմաներում ստեղծվել են պարտիական 24 նոր խմբեր, դրանով իսկ ավելի ուժեղացվել է պարտիական կազմակերպությունների ազդեցությունն ու վերահսկողությունն արտադրության նկատմամբ։

Այդ միջոցառումների շնորհիվ հնարավոր է դարձել ավելի արդյունավետ օգտագործել հողը, տեխնիկան ու բանվորական ուժը, զգալիորեն ավելացնել գյուղատնտեսական մթերքների արտադրությունը և հանրային անասունների գլխաքանակը։ Գորիսի արտադրական վարչության կոլտնտեսություններն ու սովխոզները 1963 թ. առաջին կիսամյակում, անցյալ տարվա համապատասխան ժամանակաշրջանի համեմատությամբ, մսի արտադրությունն ավելացրել են 784, կաթինը՝ 600 ցենտներով, ձվինը՝ 302 հազար հատով։ Ժամկետից շուտ կատարվեց պետությանն անասնաբուծական մթերքներ վաճառելու առաջին կիսամյակի առաջադրանքը. 1962 թվականի համեմատությամբ պետությանն է հանձնվել ավելի շատ միս, կաթ, բուրդ և ձու։ Առաջին կիսամյակում ձեռք բերած բարձր ցուցանիշների համար մեր արտադրական վարչությունն



արժանացավ ՀԿԿ Կենտկոմի և Հայկական ՍՍՌ Մինիստրների սովետի փոխանցիկ կարմիր դրոշին։

Գործերը լավ են ընթանում նաև ներկայումս. սկզբնական պարտիական կազմակերպությունները ջանում են ժամանակին ու բարձր որակով ավարտել դաշտային աշխատանքները, կերի կուտակումը, հանրային հոտը լավ նախապատրաստել ձմեռային շրջանին։

Ակնբախ են տեղաշարժերը, ձեռք բերվածը։ Սակայն մեր գործունեության մեջ դեռևս կան լուրջ թերություններ, որոնց արագ հաղթահարման վրա մեր ուշադրությունը հրավիրեց ՀԿԿ Կենտկոմի նախագահությունը։

Բանն այն է, որ պարտիական կոմիտեն ու արտադրական վարչությունը դեռևս խոր կերպով հետամուտ չեն լինում յուրաքանչյուր տնտեսության և, հատկապես հեռավոր ու տնտեսապես հետ մնացող կոլտնտեսությունների և սովխոզների գործունեությանը, վճռական միջոցների չեն դիմում ամրապնդելու վերջիններիս էկոնոմիկան։ Բավական է նշել, որ արտադրական վարչության 50 կոլտնտեսություններից 15-ը երկար ժամանակ է ինչ հետ են մնում։ Պարտիական կոմիտեն անհրաժեշտ աշխատանք չի կատարում կոլտնտեսային ու սովխոզային արտադրության կազմակերպման, բրիգադների ու ֆերմաների գործունեության բարելավման գործում սկզբնական պարտիական կազմակերպությունների, ինչպես և բոլոր կոմունիստների դերն ու պատասխանատվությունը բարձրացնելու համար։

Պարտկոմի աշխատողները քիչ են լինում մասնավորապես հեռավոր գյուղերում և միշտ չէ, որ հարկ եղած օգնությունն են ցույց տալիս սկզբնական պարտիական կազմակերպություններին՝ բարձրացնելու տնտեսության պարտիական ղեկավարման մակարդակը, գործողության մեջ դնելու հանրային արտադրության հարուստ ռեզերվները։ Օրինակ, Շիշկերտի կոլտնտեսությունը մեծ հնարավորություններ ունի խոշոր եղջերավոր անասնաբուծությունը զարգացնելու և տնտեսության այդ ճյուղի մեջ մասնագիտանալու համար։ Այնինչ հանրային հոտում պակաս է կովերի գլխաքանակը, հետևապես և կաթի արտադրությունը։ Այժմ կոլտնտեսությունը յուրաքանչյուր 100 հեկտար գյուղատնտեսական հողատարածության դիմաց պահում է 7 կով և յուրաքանչյուր ֆուրաժային կովից ստանում է երկու անգամ ավելի քիչ կաթ, քան ստանում են նրա հարևան առաջավոր տնտեսությունները։

Արավուս գյուղի կոլտնտեսությունում, անցյալ տարվա համեմատությամբ, իջել է կաթի արտադրությունը, պակասել են դրամական եկամուտները, սիստեմատիկաբար թերակատարվում են հացահատիկի արտադրության առաջադրանքները։ Պատճառն այն է, որ այստեղ արտադրության հրամանատարները պատասխանատվություն չեն զգում հանձնարարված գործի համար և չեն ջանում անհապաղ շտկելու ստեղծված վիճակը։ Կոլտնտեսությունում խախտվում են անասունների կերակրման ու խնամքի զոոտեխնիկական և ցանքերի մշակման ագրոտեխնիկական կանոնները, ոչինչ չի արվում անասունների ցեղի բարելավման, աշխատանքի առաջավոր ձևերի արմատավորման ուղղությամբ։ Դժբախտաբար, պարտիական կազմակերպությունը հաշտվել է կոլտնտեսության հետ մնալու փաստի հետ և չի մտածում տնտեսության ղեկավարությունն ամրապնդել լավագույն ու գործիմաց մարդկանցով։

Արտադրության կազմակերպման հարցերով անբավարար են զբաղվում նաև Սևաքար, Ջայքենդ, Շաքաքին, Քյուրուտ, Ղուրդղուլախ, Տանձատափ,

Աղբուլաղ գյուղերի կոլտնտեսությունների սկզբնական պարտիական կազմակերպությունները, որի պատճառով վերը հիշված կոլտնտեսությունները տևականորեն ետ են մնում։

Կարևոր նշանակություն ունի արտադրության վճռական տեղամասերում կոմունիստների ուժերի տեղաբաշխումը։ Սակայն այդ գործում մի շարք տեղերում դրությունը լավ չէ։ Օրինակ, Գիրաթաղի կոլտնտեսության սկզբնական պարտիական կազմակերպության 17 անդամներից անմիջականորեն արտադրության մեջ աշխատում են միայն երկուսը, իսկ Փայահանում՝ ոչ մեկը։ Այս գյուղերում արտադրության մեջ չեն աշխատում նաև ղեկավար աշխատողների ընտանիքի անդամները։ Ծավի կոլտնտեսությունում կոմունիստներից շատերին կարելի է տեսնել պահեստապետի, պահակի և այլ երկրորդական աշխատանքներում։ Երբ վերջերս պարտիական կազմակերպությունը փորձ արեց անասնապահության մեջ մշտական աշխատանքի ուղարկել մի քանի կոմունիստների, կազմակերպության անդամներից և ոչ մեկը դրան չհամաձայնվեց, իսկ պարտկազմակերպությունը հաշտվեց դրա հետ։

Գյուղատնտեսական էկոնոմիկայի հետագա բարձրացման գործում վճռական է ղեկավար կադրերի դերը։ Կարելի է նկատել, երբ համանման հողային ու կլիմայական պայմաններ, տեխնիկա և միևնույն հնարավորություններ ունեցող տնտեսություններից մեկում գործերը լավ են գնում, մյուսում՝ վատ։ Ճիշտ է ասված, որ գործի հաջողությունը մարդկանց, արտադրության ճիշտ ղեկավարման մեջ է։ Գորիսի պարտիական կազմակերպությունները դեռևս լավ չեն զբաղվում, ես կասեի լուրջ ուշադրություն չեն հատկացնում կադրերի, հատկապես կոլտնտեսության նախագահների, բրիգադավարների, օղակավարների և մեխանիզատորների ընտրության, տեղաբաշխման և դաստիարակության հարցերին։ Գիրաթաղի, Սևաքարի, Աղբուլաղի, Հալիձորի կոլտնտեսությունների նախագահներն օժտված չեն արտադրության կազմակերպչի ունակությամբ, չունեն համապատասխան գյուղատնտեսական գիտելիքներ ու փորձ։ Նրանց մոտ բացակայում է պատասխանատվության զգացումը։ Դժբախտաբար, թե՛ պարտկոմը և թե՛ վերոհիշյալ գյուղերի կոմունիստները գործնական ու վճռական միջոցներ չեն դիմել նման կադրերին աշխատանքից ազատելու ուղղությամբ։

Կոլտնտեսության 50 նախագահների կեսից ավելին չունեն մասնագիտական կրթություն, իսկ թերի միջնակարգ և տարրական կրթություն ունեցողների թիվը հասնում է 19-ի։ Արտադրական վարչության տնտեսությունում աշխատող 257 ֆերմայի վարիչներից և բրիգադավարներից բարձրագույն կրթություն ունեն միայն 5 հոգի, իսկ թերի միջնակարգ ու տարրական կրթություն՝ 200 մարդ։ Եվ դա այն դեպքում, երբ Գորիսի և Ղափանի շրջաններում կան հարյուրավոր բարձրագույն և միջնակարգ կրթությամբ խանդավառ ու շնորհալի երիտասարդներ։ Մոտ 25 կոլտնտեսություններ (Մալդաշ, Տանձատափ, Բարձրավան, Նոր Առաջաձոր, Ղուրդղուլախ, Ներքին Հանդ, Շիկահող, Ծակատեն, Կաղնուտ, Գիրաթաղ, Բահաղու, Փիրլու, Գյարդ, Փայահան, Քյուրուտ և այլն) բոլորովին չունեն գյուղատնտեսական մասնագետներ։ Խնածախ, Արծվանիկ և Կոռնիձոր գյուղերում մասնագետների առկայության պայմաններում որպես բրիգադավարներ և ֆերմայի վարիչներ աշխատում են համապատասխան կրթություն չունեցող մարդիկ։

Կոլտնտեսությունների ետ մնալու պատճառներից մեկն էլ այն է, որ դեռևս ցածր է արտադրության վարման կուլտուրան։ Անբավարար է տնտեսու-



թյունների մասնագիտացման, ըստ կլիմայական և գյուղատնտեսական ենթագոտիների ցանքատարածությունների կառուցվածքի բարելավման, գիտության նվաճումների ու առաջավոր փորձի արմատավորման, հողի արդյունավետ օգտագործման ուղղությամբ տարվող աշխատանքները։ Լուրջ թերություններ կան անասունների ցեղային կազմի բարելավման, արհեստական սերմնավորման արմատավորման, կերակրման և խնամքը զոոտեխնիկական կանոններով կազմակերպելու ասպարեզում։ Պատշաճ հաստատակամություն չի ցուցաբերվում արտադրության մեջ անասունների կերակրման ու խնամքի առաջավոր, առավել ռացիոնալ մեթոդներն արմատավորելու ուղղությամբ։ Դեռևս արդյունավետ չի օգտագործվում տնտեսություններում մեքենա-տրակտորային պարկը, թույլ է հատկապես շարահերկ կուլտուրաների մշակման և անասնաբուծության աշխատատար պրոցեսների մեքենայացման մակարդակը։ Լուրջ բարելավման ու կատարելագործման են կարոտ գյուղատնտեսական էկոնոմիկայի զարգացման այնպիսի կարևորագույն լծակներ, ինչպիսիք են՝ աշխատանքի նորմավորման ու վարձատրման կարգը, աշխատողների նյութական շահագրգռվածության սիստեմը։

Ինչ խոսք, որ այդ ամենը չէր կարող բացասաբար չանդրադառնալ նաև գյուղատնտեսական արտադրանքի և, հատկապես, անասնաբուծական մթերքների արտադրության ինքնարժեքի վրա։ Արտադրական վարչության տնտեսություններում բարձր է արտադրանքի ինքնարժեքը. միջին հաշվով կովի կաթի մեկ ցենտների ինքնարժեքը 1962 թվականին կազմել է 1 ռ. 60 կոպեկ, տավարի մսինը՝ 119 ռ. 84 կ., հավի մսինը՝ 200 ռ., 1000 ձվի ինքնարժեքը՝ 162 ռուբլի, իսկ առանձին տնտեսություններում այն ավելի բարձր է։ Այսպես, օրինակ, Ղուրդղուլաղ գյուղի կոլտնտեսությունում մեկ ցենտներ կովի կաթի ինքնարժեքն այդ նույն ժամանակաշրջանում կազմել է 31 ռ. 90 կ., Ուժանիսում՝ 39 ռ. 27 կ., Փիրլուում՝ 60 ռ. 70 կ. և այլն։ Տավարի մսի մեկ ցենտների ինքնարժեքը Ուժանիսի կոլտնտեսությունում եղել է 271 ռ. 51 կ., Ջայքենդում՝ 281 ռ., Գիրաթաղում՝ 306 ռ., Բահաղլուում՝ 365 ռ., Շունուխիում՝ 426 ռ.։ Առանձին տնտեսություններում բարձր է նաև խոզի և ոչխարի մսի ինքնարժեքը։

Դեռևս պարտիական կոմիտեն և վարչությունը բավարար աշխատանք չեն կատարում գյուղատնտեսական օգտագործելի յուրաքանչյուր 100 հեկտար հողատարածության դիմաց անասունների գլխաքանակի խտության և անասնաբուծական մթերքների ավելացման գծով։ Անասունների գլխաքանակը յուրաքանչյուր 100 հեկտար հողի հաշվով արտադրական վարչության տնտեսություններում 1962 թվականին, միջին հաշվով, եղել է՝ կովեր 10 գլուխ, ոչխարներ և այծեր՝ 139, իսկ Հալիձոր, Յայջի, Շինուհայր և ուրիշ գյուղերի կոլտնտեսություններում՝ ընդամենը 4—7 կով և 80—100 ոչխար։ Յուրաքանչյուր 100 հեկտար հողատարածության դիմաց արտադրվել է կաթ՝ 123,5 ցենտներ, միս բոլոր տեսակի (սպանդանոցային քաշով)՝ 33,5 ցենտներ, իսկ առանձին տնտեսություններում դրությունն ավելի վատ է։ Մի շարք կոլտնտեսություններում ավելի քիչ անասուններ կան, քան պահում են կոլտնտեսականները։ Այսպես, Շաբադինում կոլտնտեսականներն իրենց անձնական օգտագործման տակ ունեն 67 կով և դա այն ժամանակ, երբ հանրային հոտում կա միայն 25 կով, Գիրաթաղում կոլտնտեսականներն ունեն 97, իսկ կոլտնտեսությունը՝ 50, Փիրլուում՝ կոլտնտեսականները՝ 113, իսկ կոլտնտեսությունը՝ 21 կով, Գեղիում կոլտնտեսականները՝ 121, իսկ կոլտնտեսությունը՝ 44 կով և այլն։

Գիրաթաղի կոլտնտեսականներն իրենց անձնական օգտագործման տակ ունեն 1012, իսկ տնտեսությունը միայն 871 գլուխ ոչխար, Փիրլուում՝ կոլտնտեսականներն ունեն 1356, իսկ կոլտնտեսությունը՝ 738 գլուխ ոչխար և այլն։ Ինչպես կարելի է նկատել, առանձին գյուղերում կոլտնտեսականները 1,5—3 անգամ ավելի շատ անասուններ են պահում, քան հանրային տնտեսությունը։ Մի՞թե դրանով չի բացատրվում, որ մի շարք տնտեսություններում ընկած է աշխատանքային կարգապահությունը, դանդաղ է զարգանում հանրային անասնապահությունը։ Հանրային տնտեսության զարգացման և նրա եկամտաբերության բարձրացման միջոցով պետք է վերջ տալ այդ աններելի վիճակին։

Պարտիական կոմիտեն դեռ չի հասել այն բանին, որ գաղափարական աշխատանքը բոլոր տեղերում և, առաջին հերթին, ետ մնացող տնտեսություններում, նպաստի տնտեսական պլանների կատարմանը։ Ագիտատորները, պրոպագանդիստները և գյուղական ինտելիգենցիայի ներկայացուցիչները զեկուցումներով և զրույցներով քիչ են հանդես գալիս աշխատավորների առաջ և հաճախ էլ նրանց ելույթները սերտորեն չեն կապվում տվյալ կոլտնտեսության և սովխոզի արտադրության կոնկրետ խնդիրների լուծման հետ, կրում են վերացական բնույթ։ Աշխատավորության համար քիչ դասախոսություններ և զեկուցումներ են կարդացվում այնպիսի կարևոր թեմաների շուրջ, ինչպիսիք են՝ աշխատանքի արտադրողականության բարձրացման, ինքնարժեքի իջեցման ուղիների, տնտեսական հաշվարկի արմատավորման, գյուղատնտեսական կուլտուրաների շարահերկ սիստեմի առավելությունների, կոլտնտեսային արտադրության պլանավորման, աշխատանքի կազմակերպման և վարձատրության, շահութաբերության, տնտեսության մասնագիտացման, ինտենսիֆիկացման և գյուղատնտեսական էկոնոմիկայի շատ ուրիշ հարցերի վերաբերյալ, մի բան, որն աշխատավորներին և ղեկավար կադրերին կօգներ ավելի արդյունավետ վարելու տնտեսությունը։

Մեր առջև ծառացած են լուրջ խնդիրներ՝ բարձրացնել յուրաքանչյուր կոլտնտեսության ու սովխոզի էկոնոմիկան, վճռականորեն հաղթահարել աշխատանքում եղած թերությունները և ամենակարճ ժամկետում ետ մնացող բոլոր տնտեսությունները հասցնել առաջավորների մակարդակին։ Այդ նպատակով մշակել ու իրականացնում ենք մի շարք արդյունավետ միջոցառումներ։ Գլխավոր ուշադրությունը դարձնում ենք կադրերի ճիշտ ընտրության, տեղաբաշխման և դաստիարակության, աշխատանքի լավ կազմակերպման ու վարձատրման կարգի բարելավման հարցերին։

Որպեսզի հաջողությամբ կենսագործվեն այդ խնդիրները, անհրաժեշտ է վճռականորեն բարձրացնել սկզբնական պարտիական կազմակերպությունների մարտունակությունը, բոլոր կոմունիստների դերն ու պատասխանատվությունն արտադրության մեջ։ Անհրաժեշտ է կազմակերպական և գաղափարական աշխատանքի բարելավման ու կատարելագործման միջոցով մոբիլիզացնել գյուղի աշխատավորների ուժերը, զարգացնել նրանց ստեղծագործական ակտիվությունն ու նախաձեռնությունը և այն ամբողջապես նպատակաուղղել գյուղատնտեսական էկոնոմիկայի հետագա արագաթափ վերելքին։

ՔՐ. ՊԵՏՐՈՍՅԱՆ

ՀԿՊ Գորիսի գյուղական արտադրական կոմիտեի քարտուղար

---

# ՀԱՍԱՐԱԿԱԿԱՆ ՀԻՄՈՒՆՔՆԵՐԸ ԳԱՂԱՓԱՐԱԿԱՆ ԱՇԽԱՏԱՆՔՈՒՄ

Պարտիան ուժեղ է կոմունիստների ակտիվությամբ, բարձր գիտակցականությամբ և մարտական համախմբվածությամբ։ Պարտիական աշխատանքը ըստ էության հասարակական գործունեության ոլորտ է և այդ գործին ակտիվ մասնակցելը յուրաքանչյուր կոմունիստի պարտքն է։

Ինչպես ամբողջ երկրում, նույնպես և մեր ռեսպուբլիկայում վերջին տարիներս պարտիական կյանքում լայն տարածում են գտել ու արմատավորվում են հասարակական հիմունքները։ Պարտիական կոմիտեներում հասարակական հիմունքներով ստեղծվել և հաջողությամբ գործում են բազմաթիվ բաժիններ, տեսչական խմբեր, զանազան հանձնաժողովներ, իսկ մի քանի քաղկոմներում ու շրջկոմներում ընտրված են նաև արտահաստիքային քարտուղարներ։ Ներկայումս ռեսպուբլիկայի պարտիայի քաղկոմներում ու շրջկոմներում, արտադրական կոմիտեներում հասարակական հիմունքներով աշխատում են ավելի քան երկու հազար մարդ։ Բնորոշ է այն, որ արտահաստիքային պարտիական աշխատողների թիվը երեք անգամ շատ է բոլոր պարտիական կոմիտեների հաստիքային աշխատողներից։ Հասարակական գործունեության մեջ ընդգրկված են արդյունաբերության ու շինարարության, գյուղատնտեսության առաջավորներ, մասնագետներ, ուսուցիչներ և ուրիշներ։

Հրահանգիչը պարտիական ապարատի հիմնական դեմքն է։ Այժմ չկա մի քաղկոմ, շրջկոմ և պարտիական արտադրական կոմիտե, որտեղ չլինեն հասարակական հիմունքներով գործող հրահանգչական խմբեր։ Արտահաստիքային հրահանգիչների թվի ընդլայնումն օգնում է պարտիական կոմիտեներին՝ ավելի խոր թափանցելու գործի էության մեջ, ավելի լավ ճանաչելու մարդկանց, ժամանակին և օպերատիվ կերպով լուծելու հասունացած այս կամ այն հարցը։

Ներկայումս միայն պարտիայի Երևանի քաղաքային կոմիտեում հասարակական հիմունքներով գործում են մոտ 60 հրահանգիչներ, որոնք ամրացված են պարտկազմակերպություններին և ժողովրդական տնտեսության առանձին ճյուղերին, կուլտուրայի ու արվեստի հաստատություններին։ Իրենց հաստատուն տեղը գրավելով պարտիական աշխատանքում, արտահաստիքային հրահանգչական խմբերն ակտիվ մասնակցություն են ցուցաբերում պարտիայի քաղաքային կոմիտեի գործունեությանը։

Ռեսպուբլիկայի բազմաթիվ պարտիական կոմիտեներում ստեղծվել են պարտիական արտահաստիքային հանձնաժողովներ, որոնք զբաղվում են զանազան հարցերի նախնական ուսումնասիրությամբ։ Ընթացիկ տարվա անցած վեց ամսում ՀԿՊ Երևանի քաղկոմի պարտիական արտահաստիքային հանձնա-

ժողովները քննարկել են 104 անձնական գործ, իսկ Սպանդարյանի շրջկոմի պարտիական հանձնաժողովը՝ պարտիայի մեջ ընդունվելու 544, ինչպես և 48 կոմունիստի անձնական գործեր։

Փորձը ցույց է տալիս, որ այդ հանձնաժողովներն օգնում են խույս տալու կոմունիստների գործերի ձևական քննարկումներից, հնարավորություն են ընձեռում ավելի հանգամանորեն ծանոթանալու պարտիայի շարքերն ընդունվող յուրաքանչյուր մարդու արժանիքներին, բազմակողմանի ու խոր քննարկելու գործերն այն կոմունիստների, որոնք թույլ են տվել պարտիական կարգապահության խախտումներ։

ՀԿՊ Դիլիջանի արդյունաբերական-արտադրական կոմիտեն միակն է մեր ռեսպուբլիկայում, որ չունի ոչ մի հաստիքային բաժին։ Պարտիական կոմիտեում ստեղծվել են արտահաստիքային մի քանի բաժիններ. հանձնարարված գործը հաջողությամբ են կատարում արդյունաբերության ու շինարարության, կազմակերպական և գաղափարական աշխատանքի բաժինները։ Պարտիական աշխատանքում կոմունիստներին ավելի լայնորեն մոբիլիզացնելու նպատակով պարտկոմիտեն վերոհիշյալ բաժիններին առընթեր կազմակերպել է հասարակական խորհուրդներ։ Առանձնապես մեծ գործունեություն է ծավալել այն խորհուրդը, որն զբաղվում է սկզբնական և ցեխային պարտկազմակերպությունների աշխատանքի փորձի ուսումնասիրության, ընդհանրացման և տարածման գործով։ Հանձնաժողովը հատուկ ուշադրություն է դարձնում կոմունիստական աշխատանքի և կենցաղի զուգակցման, մարդկանց նկատմամբ ամենօրյա հոգատարություն ցույց տալու վրա։

Հասարակական հիմունքների զարգացումը ոչ միայն օգնում է կոմիտեններին ավելի խոր թափանցելու արտադրության մեջ և օպերատիվ կերպով լուծելու հրատապ հարցերը, ուժեղացնելու կապը սկզբնական պարտկազմակերպությունների հետ և աշխուժացնելու վերջիններիս գործունեությունը, այլև նախապատրաստելու պարտիական ու սովետական աշխատողների ռեզերվները։ Այսպես, երկու տարի առաջ ՀԿՊ Լենինականի քաղաքային կոմիտեն առաջավոր մեքենավար, հրահանգիչ, Հայկական ՍՍՌ Գերագույն սովետի դեպուտատ Սուրեն Մանուչարյանին ընտրեց պարտիայի քաղկոմի արտահաստիքային քարտուղար։ Իր ամենօրյա եռանդուն աշխատանքով, սկզբնական պարտիական կազմակերպությունների հետ ունեցած սերտ կապի շնորհիվ, նա սեր և հարգանք էր վայելում քաղաքի կոմունիստների, աշխատավորների շրջանում։ Հենց այդ նկատառումով վերջերս նա ընտրվեց աշխատավորների դեպուտատների Լենինականի քաղաքային սովետի գործադիր կոմիտեի նախագահ։

ՍՄԿՊ Կենտկոմի նոյեմբերյան պլենումից և պարտիական օրգանները արտադրական սկզբունքով վերակազմելուց հետո ռեսպուբլիկայի պարտիական կազմակերպությունները ձգտում են ամեն կերպ զարգացնել հասարակական հիմունքները պարտիական աշխատանքում։ Հասկանալի է, որ հասարակական հիմունքները պետք է արմատավորել ելնելով յուրաքանչյուր պարտիական կազմակերպության կոնկրետ պայմաններից և նրա առջև ծառացած խնդիրներից։ Կարևորն այն է, որ հասարակական գործունեության այդ ձևերն ու մեթոդները նպաստեն կազմակերպական կենդանի աշխատանքին։ Հասարակական հիմունքները զարգանում են տարբեր ուղղություններով և այստեղ, ինչպես ոչ մի տեղ, յուրաքանչյուր պարտկազմակերպություն կարող է բավական արժեքավոր ներդրում կատարել կոլեկտիվ փորձի մեջ։



Հասարակական հիմունքները մեծ թափ են ստացել նաև պարտիայի գաղափարական ճակատում։ Ռեսպուբլիկայի պարտիական և կոմերիտական քաղաքական լուսավորության ցանցում, որտեղ ընդգրկված են ավելի քան 300 հազար կոմունիստներ ու անպարտիականներ, աշխատում են ավելի քան 10 հազար պրոպագանդիստներ, դասախոսներ, կոնսուլտանտներ։ Պարտիական կոմիտեների և Գիտելիք ընկերության ավելի քան յոթ հազար դասախոսներ դասախոսություններով, զեկուցումներով պարբերաբար հանդես են գալիս աշխատավորության առաջ. կան մոտ 20 հազար ագիտատորներ, որոնք շնորհակալ աշխատանք են կատարում լայն մասսաների շրջանում։

Պրոպագանդիստների ու ագիտատորների այդ մեծ բանակին մշտական տեսական և մեթոդական օգնություն ցույց տալու նպատակով ստեղծվել և լայն տարածում են գտել հասարակական հիմունքներով գործող քաղաքական լուսավորության կաբինետները, որոնց թիվը ներկայումս ռեսպուբլիկայում հասնում է 145-ի։ Դրանցից շատերը դարձել են սկզբնական պարտիական կազմակերպությունների գաղափարական աշխատանքի կազմակերպման կենտրոններ, պրոպագանդիստների, ագիտատորների և աշխատավորների սիրելի վայրը։

Սպիտակի շրջանում երկար ժամանակ պրոպագանդիստների ու ագիտատորների հետ տարվող աշխատանքը սահմանափակվում էր նրանով, որ տարին երկու-երեք անգամ շրջկենտրոնում հավաքում էին պրոպագանդիստներին ու ագիտատորներին և նրանց համար ընդհանուր դասախոսություններ կարդում։ Դա չէր բավարարում նրանց, հարկավոր էր գտնել օգնության ավելի գործուն եղանակներ։ Երկու տարի առաջ Սպիտակի գյուղատնտեսական արտադրական վարչության Հարթագյուղի կոլտնտեսության պարտկազմակերպության պրոպագանդիստների առաջարկով ու նախաձեռնությամբ ստեղծվեց հասարակական հիմունքներով գործող քաղաքական լուսավորության կաբինետ։ Կաբինետի վարիչ հաստատվեց պարտբյուրոյի անդամ, փորձառու պրոպագանդիստ Հայկազ Աֆրիկյանը։ Կոլտնտեսության ղեկավարությունը կաբինետի համար առանձնացրեց հարմար շենք, բաժանորդագրեց թերթեր ու հանդեսներ։ Կաբինետին առընթեր ստեղծվեց 13 հոգուց բաղկացած մեթոդական խորհուրդ, որի անդամները ամենօրյա մեթոդական ու տեսական օգնություն են ցույց տալիս պրոպագանդիստներին ու ագիտատորներին, պարտիական լուսավորության ցանցի ունկնդիրներին։

Կաբինետը պարբերաբար կազմակերպում է պրոպագանդիստների ու ագիտատորների համար սեմինար պարապմունքներ։ Մեթոդական խորհրդի անդամները լսում են առանձին քաղխմբակների պարապմունքները և սեմինարները, քննարկում իրենց ուսումնասիրությունների արդյունքները, արդյունավետ օգնություն ցույց տալիս պրոպագանդիստներին։

Գյուղում դասախոսական աշխատանքի կոորդինացման ու բարելավման նպատակով, կաբինետը կազմում է բոլոր հասարակական կազմակերպությունների գծով կարդացվող դասախոսությունների, զեկուցումների ընդհանուր պլան և հետևում, որ դրանք կազմակերպվեն ժամանակին ու անցնեն գաղափարական բարձր մակարդակով։

Պրոպագանդիստներն ու ագիտատորները կաբինետում միշտ անհրաժեշտ նյութեր են գտնում գյուղատնտեսական մթերքների արտադրության ու վաճառ-

քի պլանների կատարման, արտադրության առաջավորների փորձի, ինչպես նաև կոլտնտեսության առանձին ֆերմաների ու բրիգադների գործունեության մեջ տեղ գտած թերությունների վերաբերյալ։ Այստեղ հատուկ ուշադրություն է հատկացվում առաջավոր փորձի պրոպագանդային, դրական օրինակի հիման վրա մարդկանց դաստիարակմանը։ Օրինակ, անվանի հովիվ Մերուժան Աֆրիկյանը վերջին տարիներին 100 մայր ոչխարից ստանում է 115—120 գառ, իսկ ամեն մի մայր ոչխարից՝ 4 կիլոգրամ բուրդ։ Առաջավոր փորձի տարածման նպատակով քաղաքական լուսավորության կաբինետը նախապատրաստեց և կազմակերպեց նրա ելույթը սկզբում պրոպագանդիստների սեմինարում, ապա գյուղատնտեսության էկոնոմիկան ուսումնասիրող խմբակներում ու սեմինարներում։ Հարթագյուղի կոլտնտեսությունը բոլոր ցուցանիշներով կատարում ու գերակատարում է արտադրական պլանները, այս գործում, անկասկած, իր համեստ բաժինն ունի նաև հասարակական հիմունքներով գործող քաղլուսկաբինետը։

Քաղաքական լուսավորության կաբինետների մեթոդական խորհուրդները նույնպես բազմատեսակ ու հետաքրքրական գործ են կատարում։ ՀԿՊ Օրջոնիկիձեի շրջկոմի քաղլուսկաբինետի 25 հոգուց բաղկացած մեթոդական խորհուրդը գլխավորում է պատմական գիտությունների դոկտոր-պրոֆեսոր Ջավեն Գրիգորյանը։ Խորհրդի կազմում են փորձառու պրոպագանդիստներ, մանկավարժներ, ժողտնտխորհի, պետպլանի աշխատողներ, այդ թվում Հայկական ՍՍՌ Մինիստրների սովետի պետպլանի նախագահ Լ. Խաչատրյանը, դոկտոր-պրոֆեսոր Գ. Սևակը և ուրիշներ, որոնք մեծ սիրով ու ջանասիրությամբ են կատարում իրենց հասարակական պարտականությունները և անձնական օրինակ հանդիսանում շատերի համար։

Ուսումնական տարվա ընթացքում, որպես կանոն, մեթոդական խորհրդի անդամները պարբերաբար մասնակցում են քաղխմբակների պարապմունքներին ու սեմինարներին, հենց տեղում խորհուրդներ տալիս պրոպագանդիստներին։ Նրանք լավագույն պրոպագանդիստների փորձը ուսումնասիրում ու քննարկում են մեթոդական խորհրդում և այն դարձնում պրոպագանդիստների սեփականությունը։ Այսպես, օրինակ, Արարատ գինու կոմբինատի պրոպագանդիստների փորձը ուսումնասիրելուց հետո, կազմվեց հատուկ մեթոդական նամակ և, մեթոդական խորհրդի կողմից ուղարկվեց շրջանի բոլոր պարտկազմակերպություններին։

Մեթոդական խորհուրդը հատուկ ուշադրություն է նվիրում նաև պրոպագանդիստի լեզվական կուլտուրային։ Անցյալ ուսումնական տարում այդ հարցը հանգամանորեն ուսումնասիրվեց և քննարկվեց պրոպագանդիստների շրջանային սեմինարում, որն առաջ բերեց մտքերի աշխույժ փոխանակություն։ Մեթոդական խորհրդի առանձին սեկցիաների նախագահները միաժամանակ հանդիսանում են պրոպագանդիստների մշտապես գործող սեմինարների ղեկավարներ։

Ներկայումս պարտիայի գաղափարական ողջ աշխատանքն ուղղված է կոմունիզմի նյութատեխնիկական բազայի ստեղծման տեմպերի արագացմանը, նոր՝ կոմունիստական հասարակական հարաբերությունների զարգացմանը և աշխատավորության կոմունիստական դաստիարակությանը։ Այդ նպատակով կատարելագործվում են մասսաների վրա գաղափարական ներգործման ձևերն ու մեթոդները, զարգանում են հասարակական հիմունքները։



Ռեսպուբլիկայի քաղաքներում ու գյուղերում, կոլտնտեսություններում և սովխոզներում ստեղծված են բազմաթիվ ինստիտուտներ, երիտասարդ ռացիոնալիզատորների դպրոցներ, կոնստրուկտորական բյուրոներ, կոմունիստական աշխատանքի և փարոսների դպրոցներ, կուլտուրայի, գիտության ու տեխնիկայի համալսարաններ, ինչպես նաև՝ կոմունիստական կենցաղին աջակցող խորհուրդներ և այլն։ Կուլտուրայի, գիտական աթեիզմի, ժողովուրդների բարեկամության ժողովրդական համալսարանի թիվը հասնում է 157-ի, ուր ընդգրկված են ավելի քան 10 հազար մարդ։ Գաղափարական աշխատանքի այս բոլոր նոր օջախներում գործերը ամբողջապես կատարվում են հասարակական հիմունքներով։

Մոսկվայի, Լենինգրադի, Կիևի պարտիական կազմակերպությունների օրինակով մեր ռեսպուբլիկայի համարյա բոլոր քաղկոմներում, շրջկոմներում, արտադրական կոմիտեներում և խոշոր պարտիական կազմակերպություններում ստեղծվել են գաղափարական հանձնաժողովներ, որոնք կոչված են կոորդինացնելու գաղափարական բոլոր հիմնարկների գործունեությունը և նրանց ջանքերն ուղղելու գլխավոր խնդիրների կենսագործման նպատակին։

Մեկուկես տարուց ավելի է, ինչ ՀԿՊ 26 կոմիսարների շրջկոմին առընթեր ստեղծված է գաղափարական հանձնաժողով։ Իր գոյության առաջին իսկ օրից այս հանձնաժողովին հաջողվել է այնպես կազմակերպել իր գործունեությունը, որով անհամեմատ ավելի հետաքրքրական և կենսունակ է դարձել քաղլուսկաբինետների ու մեթոդական խորհուրդների, պրոպագանդիստների մշտապես գործող սեմինարների, դասախոսական խմբերի աշխատանքը։ Գաղափարական հանձնաժողովի նախաձեռնությամբ, բոլոր տնային կառավարչություններին առընթեր կազմակերպված են ագիտացիոն հրապարակներ, ուր պարբերաբար անց են կացվում դասախոսություններ, զեկուցումներ, թեմատիկ երեկոներ և այլն։

Պարտիայի Կիրովականի քաղաքային կոմիտեին առընթեր գաղափարական հանձնաժողովը, որի ղեկավարն է քաղկոմի քարտուղար ընկ. Հ. Ոսկանյանը, հատուկ ուշադրություն է նվիրում գաղափարական բնագավառի բոլոր օղակներում հասարակական հիմունքների ընդլայնմանը։ Այդ ուղղությամբ Կիրովականում բավականին արժեքավոր փորձ է կուտակվել։ Վերջերս քաղաքի պարտիական-սովետական ակտիվի համար ստեղծված է հասարակական հիմունքներով գործող պարտիական դպրոց. այստեղ բավականին հաջող գործում է կոմունիստական աշխատանքի փորձն ուսումնասիրող և ընդհանրացնող հանձնաժողովը։

Մեծ հետաքրքրություն է ներկայացնում նաև տնային կառավարչություններին առընթեր ստեղծված կոմունիստական կենցաղին աջակցող խորհուրդների գործունեությունը։ Բացի այդ պետք է ասել, որ բավականին հաջող է ընթանում պրոլետարական ինտերնացիոնալիզմի և ժողովուրդների բարեկամության գաղափարների պրոպագանդան աշխատավորության շրջանում։ Այս առումով ուշադրության է արժանի Իջևանի գյուղական արտադրական պարտիական կոմիտեին առընթեր ժողովուրդների բարեկամության համալսարանի գործունեությունը։ Համալսարանի աշխատանքում ներգրավված են ո՛չ միայն մեր ռեսպուբլիկայի, այլև եղբայրական Վրաստանի ու Ադրբեջանի պարտիական, սովետական ղեկավար աշխատողներ, նշանավոր գիտնականներ և այլ գործիչներ։

Սակայն դեռևս որոշ պարտիական կոմիտեներ հարկ եղած ուշադրությունը չեն հատկացնում գաղափարական հանձնաժողովների, քաղլուսկաբինետների, դասախոսական խմբերի, արտահաստիքային բաժինների ու հրահանգիչների, հասարակական հիմունքներով գործող մյուս հիմնարկների ու կազմակերպությունների գործունեությանը, որպեսզի նրանք գործեն արդյունավետ ու ստեղծագործաբար, ժամանակին առաջ քաշեն ու լուծեն գաղափարական աշխատանքի կարևորագույն խնդիրները։

Պարտիան գործադրում է բոլոր միջոցները, որպեսզի հասարակական հիմունքներն ավելի ու ավելի լայն տարածում գտնեն մեր կյանքի բոլոր ասպարեզներում։ Առաջիկայում այդ ուղղությամբ պետք է ընթանա ՀԿՊ Կենտկոմի և Երքաղկոմի քաղլուսատան գործունեությունը։ Տեղերում կա զգալի փորձ, որի ուսումնասիրությունը և լայն կիրառումը մեր առաջնահերթ խնդիրն է։

Պարտիական կոմիտեների պատշաճ օգնության դեպքում այս ասպարեզում մեր հաջողություններն ավելի մեծ կլինեն։ Պետք է ջանալ հաղթահարել հասարակական հիմունքներով գործելու մեթոդների այն թերագնահատումը, որը մենք տեսնում ենք շատ վայրերում։

Արդի էտապում գաղափարական աշխատանքի բարելավման և կատարելագործման վերաբերյալ ՍՄԿՊ Կենտկոմի հունիսյան պլենումի որոշումները պարտիական կազմակերպություններից պահանջում են սիստեմատիկորեն զբաղվել հասարակական հիմունքների զարգացմամբ։ «Գաղափարական գործունեության մեջ,— ասաց պլենումում ընկ. Իլյիչովը,— հասարակական հիմունքների զարգացումը ո՛չ թե նվազեցնում, այլ բարձրացնում է պարտիական ղեկավարմանը ներկայացվող պահանջները»։ Անհրաժեշտ է հաղթահարել ձևամոլության դրսևորումներն այս կենդանի ստեղծագործական աշխատանքում, որոնել ու գտնել գաղափարական ներգործման նորանոր եղանակներ և, որ ամենակարևորն է, շատ մարդկանց ներգրավեն հասարակական գործունեության տարբեր ոլորտներում։

Ս. ԱԲՐԱՀԱՄՅԱՆ
ՀԿՊ Կենտկոմի և Երքաղկոմի
քաղլուսատան վարիչ



# ՈՒԺԵՂԱՑՆԵԼ ԱՇԽԱՏԱՎՈՐՆԵՐԻ ԻՆՏԵՐՆԱՑԻՈՆԱԼ ԴԱՍՏԻԱՐԱԿՈՒԹՅՈՒՆԸ

Սովետական Միության ժողովուրդների եղբայրական բարեկամությունը, որը ծնունդ է առել ու կոփվել կապիտալից ազատագրվելու և նոր կյանքի կառուցման համար նրանց մղած համատեղ պայքարի հերոսական տարիներին, սոցիալիզմի մեծագույն նվաճումն է։ Զոդված մարքսիզմ-լենինիզմի վեհ գաղափարներով, կոմունիզմի կառուցման միասնական նպատակով, սոցիալիստական ազգերը եղբայրական փոխօգնությամբ ու համագործակցությամբ լուծում են կոմունիստական շինարարության վիթխարի խնդիրները։

Սովետական ժողովուրդների օրավուր ամրապնդվող այդ մեծ բարեկամության բարերար արդյունքները կարելի է ավելի կոնկրետ ու ակներև տեսնել նաև մեզ մոտ՝ Ալավերդու արդյունաբերական-արտադրական գոտու ձեռնարկություններում, մեր մարդկանց ամենօրյա պրակտիկ գործերում, նրանց վարքագծում։ Հանքերում, գործարաններում, կառույցներում ու տրանսպորտում հայերի հետ միասին աշխատում և ապրում են ռուսներ, հույներ, ադրբեջանցիներ, վրացիներ, ուկրաինացիներ և այլ ազգերի բազմաթիվ ներկայացուցիչներ. իրենց փառապանծ գործերով նրանք բազմապատկում են մեր հայրենիքի հզորությունը։

Ահա Ալավերդու պղնձաքիմիական կոմբինատի քիմիական ցեխի կոմունիստական աշխատանքի կոչման արժանացած կոլեկտիվը, ուր Աշոտ Սիմոնյանի, Արտավազդ Բարսեղյանի, Ազատ Սարգսյանի հետ համերաշխ ու խանդավառ աշխատում են ուկրաինացիներ՝ Նիկոլայ Իգնատենկոն, Եմելյան Խուդոբինը, հույն Ֆյոդոր Սամարչևը, մոլդավ Սիմոն Բենոն իր ռուս կնոջ՝ Վերայի հետ և ուրիշներ։ Այս ինտերնացիոնալ կոլեկտիվի անդամների հոգևոր կերպարում ու վարքագծում կան շատ ընդհանուր գծեր, որոնք ձևավորվել են համատեղ աշխատանքի ու ապրելակերպի համանման պայմաններում։ Մեր կյանքը հարուստ է նման օրինակներով։

Այդ բարեկամությունը դրսևորվում է նաև սովետական ռեսպուբլիկաների հետ ունեցած փոխադարձ տնտեսական ու կուլտուրական բազմակողմանի կապերում։ Պղնձաքիմիական կոմբինատի, Թումանյանի հրակայուն նյութերի, Այրումի խճի, Ստեփանավանի բարձր հաճախականության սարքավորումների գործարանների, Ախթալայի հանքերի և արդյունաբերական մի շարք այլ ձեռնարկությունների արտադրանքն առաքվում է մեր անծայրածիր հայրենիքի բազմաթիվ ռեսպուբլիկաները, մարզերն ու երկրամասերը, ձեռնարկությունները, կոլտնտեսություններն ու սովխոզները։ Միաժամանակ գոտու արդյունաբերական ձեռնարկություններն իրենց անհրաժեշտ հումք, նյութեր ու սարքավորումներ են ստանում Միության տարբեր քաղաքներից։

Մեզ մոտ տարեցտարի աճում է կապիտալ ներդրումների ծավալը։ Հասկանալի է, որ այդ վիթխարի աշխատանքները հնարավոր չէ կատարել միայն

սեփական ուժերով ու տեղական կադրերով։ Օգնության ձեռք են մեկնել եղբայրական ռեսպուբլիկաների բանվորները և ինժեներա-տեխնիկական աշխատողները, անշահախնդիր օգնություն և օժանդակություն են ցույց տալիս Մոսկվայի «Հիդրոխիմ-ինստիտուտը», Իվանովոյի ավտոմատիկայի գիտահետազոտական ինստիտուտի ֆիլիալը, Լենինգրադի լեռնամետալուրգիական ինստիտուտը և Միութենական այլ գիտահետազոտական և նախագծային կազմակերպությունների կոլեկտիվներ։ Օրինակ, պղնձաքիմիական կոմբինատի վերակառուցմանը մասնակցում են Միութենական ու Կովկասյան ավելի քան տասը մասնագիտացված մոնտաժային կազմակերպությունների բրիգադաներ։

Ալավերդցիների հիշողության մեջ դեռ երկար ժամանակ վառ կմնա Մոսկվայի հատուկ մոնտաժային կազմակերպության բրիգադայի անդամների անձնուրաց աշխատանքը պղնձաքիմիական կոմբինատի հարյուր մետր բարձրություն ունեցող երկաթբետոնե խոշոր ծխնելույզի կառուցման գործում, ծխնելույզ, որի շնորհիվ քաղաքի մթնոլորտը կմաքրվի ավելորդ գազերից։ Այդ նույն կոմբինատում կոնտակտային եղանակով ծծմբաթթվի և էլեկտրոլիզի երրորդ հերթի վրա հսկայական աշխատանք են կատարում Օրջոնիկիձե քաղաքի մոնտաժային կազմակերպության բրիգադաները։ Մոսկվայի «Գիպրոխիմ» ինստիտուտի կոլեկտիվը կազմել է նոր կառուցվող թթծման ցեխի տեխնոլոգիական մասերի նախագծերը։ Ալավերդու երկաթուղային նոր կայարանը կառուցվեց երկաթուղային տրանսպորտի կովկասյան նախագծող կազմակերպության կոլեկտիվի կազմած նախագծերով։

Մեր առաջավոր բանվորները, ինժեներա-տեխնիկական աշխատողները պարբերաբար լինում են երկրի համասեռ արդյունաբերական ձեռնարկություններում, ծանոթանում արտադրության ու աշխատանքի կազմակերպման ղրվածքին, առաջավոր փորձին և լավը, օրինակելին վերցնում ու ստեղծագործաբար կիրառում իրենց մոտ։

Պարտիական կազմակերպությունները կազմակերպական ու գաղափարական ներգործման բազմապիսի միջոցներով ջանում են աշխատավորների շըրջանում վառ պահել ու խորացնել ժողովուրդների բարեկամությունը։

Տարեցտարի ավելի է ամրապնդվում Ալավերդու և Վրացական ՍՍՌ Զեստափոնիի արդյունաբերական-արտադրական գոտիների ձեռնարկությունների կոլեկտիվների տրադիցիոն մրցությունը։ Յուրաքանչյուր անգամ մրցության արդյունքների ամփոփումը վեր է ածվում բարեկամության վառ ցույցի։

Շուրջ հինգ տարվա պատմություն ունի Թումանյանի հրակայուն նյութերի գործարանի և Նովգորոդի մարզի Բորովիչի աղյուսագործների սոցիալիստական մրցությունը։ Բազմիցս նեղ պահերին վերջիններս արդյունավետ տեխնիկական օգնություն են ցույց տվել իրենց հայ մրցակիցներին։ Այսպես, օրինակ, Բորովիչի կոլեկտիվը նրանց եղբայրաբար տրամադրել է գնդային աղացի շրջանային զրահներ. զգալիորեն ավելացրել է բովախառնուրդ աղալը։ Այստեղ ստացվել ու տեղադրվել է նաև շարժվող հրապարակը, որի միջոցով վերացել է նախկին պրիմիտիվ աշխատաեղանակը։ Թումանյանցիներն իրենց մրցակիցներից են սովորել բովախառնուրդը ճիշտ պատրաստելը։ Բորովիչից ուղարկված գծագրերի համաձայն տեղում պատրաստվեց ավտոմատ կշեռք, որի չափումներին համապատասխան կազմվում է բովախառնուրդը՝ ապահովելով արտադրանքի բարձր որակը։

Երկաթուղային մագիստրալները կամուրջի նման իրար են կապել Սանահինի և Վրացական ՍՍՌ Գուրջիանիի երկաթուղայինների սրտերը։ Տասը տարի է, ինչ նրանք մրցում են միմյանց հետ և ջանք չեն խնայում գերազանցելու իրար ժողովրդա-տնտեսական բեռների փոխադրման գործում։ Պղնձաքիմիական կոմբինատի էլեկտրոլիզի ցեխի կոլեկտիվը մշտական նամակագրական կապ է պահպանում Մոսկվայի էլեկտրալիտային գործարանի կոլեկտիվի հետ։

Ալավերդու երիտասարդ հայրենասերները, բարձր պահելով ինտերնացիոնալիզմի վսեմ սկզբունքները, կոմերիտական ուղեգրերով մեկնում են հեռավոր Արևելքի խամ ու խոպան հողերը և սովետական մյուս երիտասարդների հետ իրենց ավանդը ներդնում կոմունիզմի կառուցման գործում։

Աշխատավորության ինտերնացիոնալ դաստիարակությանը նպաստում է Սովետական Միության տարբեր ազգերի կուլտուրական ժառանգության և հոգևոր արժեքների ցուցադրումը։ Հաճախակի մեր հայրենիքի տարբեր քաղաքների ստեղծագործական կոլեկտիվներն իրենց հյուրախաղերով էսթետիկական մեծ հաճույք են պատճառում ալավերդցիներին։ Վերջին տարում մեր աշխատավորության առաջ հանդես են եկել Խարկովի, Սուխումիի, Բելոռուսական ՍՍՌ էստրադային նվագախմբերը, Ադրբեջանի երգի-պարի պետական անսամբլը, Ռյազանի մարզի և Աբխազիայի ֆիլհարմոնիաների երգի-պարի անսամբլները և այլ կոլեկտիվներ։

Սպորտը նույնպես ազգերի մերձեցման ակտիվ գործոն է։ Շատ հաճախ մեր սպորտային կոլեկտիվները հյուրնկալում են հարևան ռեսպուբլիկաների սպորտսմեններին, փոխադարձ այցելության գնում նրանց մոտ։ Սանահինի կայարանի ծանրորդները մրցում են Վրացական ՍՍՌ Սամտրեդիի և Խաշուրիի երկաթուղային ծանրորդների հետ, Ալավերդու վոլեյբոլիստները՝ մարնեուլցիների հետ, հաճախ իրար փոխայցելում են Ալավերդու և Թբիլիսիի [redacted] գործարանի, Զեստափոնիի ֆուտբոլի հավաքականները։

Աշխատավորներին պրոլետարական ինտերնացիոնալ ոգով դաստիարակելու նպատակով, պարտիական, արհմիութենական և կոմերիտական կազմակերպություններն անց են կացնում զանազան միջոցառումներ՝ պարբերաբար կազմակերպում են զրույցներ, դասախոսություններ, հարց ու պատասխանի և թեմատիկ երեկոներ, հավաքներ, ցուցահանդեսներ, պրոպագանդելով սովետական ռեսպուբլիկաների և սոցիալիստական երկրների տնտեսական ու կուլտուրական շինարարության մեծագույն նվաճումները, կոմունիստական աշխատանքի նրանց փորձը, ժողովուրդների բարեկամության լենինյան գաղափարները։ Ընթացիկ տարում գոտու արդյունաբերական ձեռնարկություններում, հիմնարկներում և ուսումնական հաստատություններում կարդացվել են մի քանի տասնյակ զեկուցումներ, դասախոսություններ՝ «Ազգերի մերձեցումը և ժողովուրդների բարեկամության ամրապնդումը», «Ժողովուրդների լենինյան բարեկամությունը», «Կուբայի և ՍՍՌՄ-ի բարեկամությունը անխախտ է», «Սայաթ-Նովան անդրկովկասյան ժողովուրդների մեծ երգիչն է», «Հայ և վրաց ժողովուրդների դարավոր բարեկամությունը», «Բուլղարական կուլտուրայի և սլավոնական երկրների դպրության մասին» և այլ թեմաներով։ Սովետական բանակի 45-ամյակին նվիրված «Հիշենք, բարեկամներ, տարիներն անցած» թեմայով երեկոն, որը տեղի ունեցավ Շամլուղի հանքափորների ակումբում, միշտ վառ կմնա նրա մասնակիցների հիշողության մեջ։ Հանդես գալով երեկոյում, նրա մասնակիցները վերհիշում էին հայրենիքի ազատության համար մարտնչած իրենց մարտական ընկերներին։ Ալավերդու երիտասարդ ինտելի-

գենցիայի համաքաղաքային հավաքում խոսում էին հայրենիքի մեծագույն հաջողությունների, կոմունիզմի գործին իրենց նվիրվածության մասին։ Համերգային ծրագիրը բովանդակում էր ՍՍՌՄ ժողովրդական երգեր ու պարեր։

Մեր պարտիան, մեծ Լենինը սովորեցնում են, որ կոմունիզմի սերունդը հարկավոր է ձևավորել մանկական հասակից, խնամել ու կոփել նրան պատանեկան հասակում։ Այդ առումով պարտիական կազմակերպություններն ամեն ինչ անում են, որպեսզի աճող սերունդը դաստիարակվի ինտերնացիոնալիզմի, սոցիալիստական ազգերի միջև հոգևոր ու կուլտուրական կապերի ամրապնդման ոգով։ Պարտիական, կոմերիտական կազմակերպությունները և մանկավարժներն այդ գործը կազմակերպելիս հաշվի են առնում երեխաների տարիքային առանձնահատկությունները, նրանց հակումներն ու ձգտումները։

Ինտերնացիոնալ դաստիարակության օջախ է Ախթալայի Ալ. Մյասնիկյանի անվան արտադրական ուսուցմամբ միջնակարգ դպրոցը, որտեղ սովորում են ութ ազգերի երեխաներ. դպրոցում ուսուցումը տարվում է ռուսերեն, հայերեն և ադրբեջաներեն։

Այստեղ ստեղծված է տարբեր ազգերի ուսուցիչներից բաղկացած ինտերնացիոնալ դաստիարակության խորհուրդ, որի նախաձեռնությամբ դպրոցում հաճախակի կազմակերպվում են ՍՍՌՄ ժողովուրդների երգի-պարի ստուգատեսներ, բարեկամության ցերեկույթներ։

Անչափ ջերմ անցավ Բարեկամություն ու Եղբայրություն թեմայով երեկոն, որին, բացի պիոներ-դպրոցականներից, մասնակցում էին նաև ծնողները՝ հանքափորներ, շինարարներ, թոշակառու կոմունիստներ։ Ռուս երեխան երգում էր հայերեն, հույնն արտասանում ռուսերեն, ադրբեջանցին պարում վրացական պար և այլն։ Ժողովուրդների օրավուր ամրապնդվող բարեկամության մասին ելույթ ունեցան ուսուցիչներ, ծնողներ, կոմունիստական աշխատանքի շարժման մասնակիցներ, հին կոմունիստներ... Պիոներական դրուժինան սիստեմատիկաբար անց է կացնում Մենք ինտերնացիոնալ դպրոցի սաներ ենք թեմայով հավաքույթներ։ Աշակերտների ձեռքով գցած դպրոցական այգին կոչվում է Բարեկամության այգի։

Քաղաքի Ստ. Շահումյանի անվան միջնակարգ դպրոցի պատանի մաթեմատիկոսների խմբակն արդեն երրորդ տարին է, որ սերտ նամակագրական կապի մեջ է Կազանի համալսարանի ֆիզիկո-մաթեմատիկական ֆակուլտետի հետ։ Խմբակի անդամները համալսարանից ստացել են ռուս խոշորագույն մաթեմատիկոս Լոբաչևսկուն վերաբերող լուսանկարներ և նամակագրական կապ ունեն նրա թոռների հետ։ Դպրոցում ամեն տարի նոյեմբերի 4-ին նշվում է մեծ մաթեմատիկոսի ծննդյան օրը։

Հայրենական պատերազմի տարիներին Ալավերդի քաղաքի Ս. Սպանդարյանի անվան դպրոցի շենքը տրամադրվեց հոսպիտալին։ Այդ հոսպիտալում վախճանվեցին երկու ռազմիկներ։ Նրանց թաղեցին դպրոցից ոչ հեռու, բարձունքի վրա։ Պատերազմից ութ տարի անց դպրոցականները որոշեցին հավերժացնել այդ անհայտ զինվորների հիշատակը և իրենց ուժերով գերեզմանաթմբին կանգնեցրին մի փառահեղ հուշարձան, չորս կողմը ծառեր տնկեցին, ծաղիկներ ցանեցին։ Այդ ամենն աշակերտները կատարեցին իրենց ուսուցչի՝ Ս. Փարսադանյանի ղեկավարությամբ։ Այնուհետև երեխաները Լենինգրադի ռազմա-ծովային թանգարանի միջոցով պարզեցին զոհվածների ով լինելը և սերտ կապ հաստատեցին զոհվածների հարազատների հետ։



Մեր երեխաները նամակագրական կապեր ունեն սովետական ռեսպուբլիկաների և սոցիալիստական երկրների պիոներների հետ։ Ահա թե ինչ է գրում Ջորագէսի դպրոցական Աիդա Միքայելյանը իր հեռավոր ընկերուհուն։

«Բարև, իմ սիրելի բուլղար ընկերուհի Իոնոչկա։

Քեզ գրում եմ հեռավոր Հայաստանից, այն ռեսպուբլիկայից, որտեղ հայերի հետ եղբայրացած ապրում և ստեղծագործում են տարբեր ազգություններ։

Ես և դու, Բոնոչկա, վաղեմի բարեկամներ ենք, այդ գալիս է դարերի խորքից և ավելի է ամրապնդվում մեր հրաշալի ժամանակներում...

Հարգելի քույրիկ, հուլիսի 30-ին լրանում է իմ և քո բարեկամության հովանավոր, մեր կոմունիստական պարտիայի 60-ամյակը։

Մեր դպրոցը երախտագիտորեն նախապատրաստվում է այդ փառապանծ հոբելյանը արժանավայել նշելու...

Առայժմ այսքանը։ Սպասում եմ նամակի»։

Պլովդիվից Կիրիլովվա Բոնոչկան նրան պատասխանում է.

«Բարև, իմ քնքուշ քույրիկ, իմ սիրելի ընկերուհի Աիդոչկա։ Այսօր ստացա քո նամակը, և ինձ հետ ցնծաց մեր ողջ դասարանը։

Հարգելի Աիդոչկա, շատ շնորհակալ եմ ձեզ մոտ՝ Հայաստան, հրավերքի համար։ Շատ զգացված եմ, շատ...

Սիրելի քույրիկս, ուղարկում եմ ռուս բուլղարական բառարան։ Ես ուսումնասիրում եմ ձեր մայրենի լեզուն, իսկ դուք սովորեցեք մերը...

Ես գտնում եմ, որ մենք ձեզ հետ քույրեր ենք։ Երկու ամենասրտակից, ամենալավ ընկերուհի քույրեր՝ բուլղար և հայ»։

Աշխատավորների ինտերնացիոնալ դաստիարակության գործում մենք ունենք թերություններ, ամեն ինչ չի արված այդ ուղղությամբ։ Միշտ չէ, որ ձեռնարկած միջոցառումներն արդյունավետ ու ներգործուն են, երբեմն այդ գործում նկատվում են ձևամոլության տարրեր։

ՍՄԿՊ Կենտկոմի հունիսյան պլենումը պարտավորեցրեց պարտիական կազմակերպություններին՝ ուժեղացնել աշխատավորներին սոցիալիստական ինտերնացիոնալիզմի ոգով դաստիարակելու աշխատանքը, ամրապնդել Սովետական Միության ժողովուրդների եղբայրական բարեկամությունը, անհաշտ պայքար մղել նացիոնալիզմի բոլոր տեսակի դրսևորումների դեմ։

Այդ նպատակով նախատեսվում է իրականացնել որոշ միջոցառումներ։ Ամենից առաջ որոշել ենք ընդլայնել ու կատարելագործել գաղափարական աշխատանքի ձևերն ու մեթոդները, հաճախակի կազմակերպել կինոֆեստիվալներ, սովետական գրողների ստեղծագործությունների քննարկումներ, հավաքներ, երեկոներ, հիմնադրել ժողովուրդների բարեկամության համալսարան, ուժեղացնել ցուցադրական ագիտացիան և այլն։ Միաժամանակ որոշակի աշխատանք է կատարվում եղբայրական ռեսպուբլիկաների կոլեկտիվների միջև ծավալվող սոցիալիստական մրցությունն ավելի ամրապնդելու, նրանց միջև տնտեսական ու կուլտուրական կապերը խորացնելու նպատակով։

Ա. ՄԱՆՈՒՉԱՐՅԱՆ

Ալավերդու արդյունաբերական-արտադրական պարտիական կոմիտեի քարտուղարի տեղակալ

---

## ԷԿՈՆՈՄԻԿԱՅԻ ՀԱՐՑԵՐ

# ՔԻՄԻԱԿԱՆ ԱՐԴՅՈՒՆԱԲԵՐՈՒԹՅԱՆ ԶԱՐԳԱՑՄԱՆ ՀԵՌԱՆԿԱՐՆԵՐԸ

Ս. ԹԵՎՈՍՅԱՆ

(ՔԻՄԻԱԳՈՐԾԻ ԽՈՀԵՐ)

ՔԻՄԻԱԿԱՆ արդյունաբերությունը մեզ մոտ ծնունդ է առել սովետական իշխանության հաստատման առաջին տարիներին: Նրա զարգացման տեմպերը բարձր են եղել ժողովրդական տնտեսության մյուս ճյուղերի համեմատությամբ: Քիմիայի զարգացման խնդիրները միշտ էլ եղել են մեր պարտիայի ու կառավարության ուշադրության կենտրոնում: Սակայն նրա զարգացումն ավելի մեծ թափ է ստացել պարտիայի Կենտրոնական Կոմիտեի 1958 թվականի մայիսյան պլենումից հետո: Եվ դա պատահական չէ: Հատկապես վերջին մեկ ու կես տասնամյակի ընթացքում քիմիական օրգանական սինթեզը, բարձր մոլեկուլյար միացություններն այնպիսի հախուռն զարգացում ստացան, որ դժվար է ցույց տալ թեկուզ մի բնագավառ, լինի դա արդյունաբերության, գյուղատնտեսության, գիտության, տեխնիկայի, բժշկության և այլն, ուր այս կամ այն չափով այդ միացությունները չկիրառվեն:

Ներկայումս կարելի է սինթեզել քիմիական բարձր մոլեկուլյար նյութեր, որոնք իրենց ֆիզիկական-քիմիական հատկություններով զգալիորեն գերազանցում են բնական պոլիմերային նյութերից: Դա հնարավորություն տվեց և դեռ շատ ու շատ հնարավորություններ կտա քիմիան ի սպաս դնելու մարդկության բարեկեցության բարձրացմանը:

Ինչո՞ւմն է բանը. ինչո՞ւ է մարդկությունն այսօր այդպես ամուր կառչել քիմիայից, քիմիական արդյունաբերությունից: Բանը նրանում է, որ գնալով ավելի ու ավելի են փոքրանում մարդկության կարիքները բավարարող բնական նյութերի տեսակարար ծավալը, նրանց քանակը: Եվ իրոք, երկրագնդի մակերեսն անփոփոխ մեծություն է, նրա հողային զանգվածները նույնպես մշտական են. ճիշտ է, մինչև այսօր այդ հողերի, կարելի է ասել, դեռ առյուծի բաժինը չի օգտագործվում այս կամ այն պատճառներով (աղուտներ, ճահիճներ, անապատներ), բայց կասկածից վեր է, ժամանակին կօգտագործվեն, սակայն դրանք նույնպես սահմանափակ են:

Ուրեմն ի՞նչ է մնում անել. դիմել արհեստական միջոցների. այսպես է պատասխանում մարդու հանճարը: Իսկ այդ արհեստական միջոցը քիմիան է, «ամենակարող» քիմիան:

Այո՛, քիմիան մեզ կտա ամեն ինչ:

Բավական է միայն նշել, որ ներկայումս մարդկությանը հայտնի են մի քանի միլիոն անուն սինթեզված՝ օրգանական աշխարհին վերաբերվող նյութեր և մի քանի հարյուր հազար էլ՝ անօրգանական նյութեր: Պատկերացրեք միայն, մի քանի միլիոն... Անհրաժեշտ է նշել, որ այդ թիվն ավելանում է օրըստօրե: Գիտնականները հաստատում են, որ նոր սինթեզվող նյութերի թիվն օրական հասնում է մի քանի հարյուրի:

Ահա ձեզ քիմիական հրաշքը, ահա նրա ամենազոր կարողությունները:

Եվ իրոք, քիմիան այսօր արհեստական ու սինթետիկ թելերի անսպառ աղբյուր է, մի վարար ու հորդառատ աղբյուր: Արհեստական ու սինթետիկ թելերը կփոխարինեն բամբակին, բնական մետաքսին, կանեփին, վուշին և այլ բազմաթիվ թելանյութեր արտադրող բուսական աշխարհին: Մենք դրանով հնարավորություն կստանանք տասնյակ միլիոնավոր հեկտարներ ազատել այդ կուլտուրաներից ու այն օգտագործել սննդամթերքի արտադրության համար:

Սինթետիկ թելերը կփոխարինեն բրդին, ու այն ժամանակ մենք կզարգացնենք մսատու ոչխարների տեսակները: Սինթետիկ նյութերը կփոխարինեն բոլոր տեսակի կաշիներին և մենք կունենանք տասնյակ անգամ էժան ու անսահմանափակ քանակությամբ կոշկեղեն ու կաշվե այլևայլ բազմաթիվ իրեր՝ մարդկության պահանջմունքները լրիվին բավարարելու համար:

Սինթետիկ խեժերը, պլաստիկ մասսաները լրիվին կփոխարինեն կահույք ու կահ-կարասիներ պատրաստելու համար օգտագործվող անտառանյութերին, և մեր անտառներն այլևս չեն ոչնչացվի:

Համապատասխան պլաստիկ մասսաները շինարարությունից ամբողջովին դուրս կվանեն թանկարժեք և անպահույն անտառանյութերը: Դրա շնորհիվ շինարարության ինքնարժեքը կփոքրանա տասնյակ անգամ. պլաստիկ մասսաները հնարավորություն կտան կառուցելու ամբողջական շարժական ու անշարժ տներ, վրաններ և նման շատ ու շատ կառույցներ: Սինթետիկ խեժերի ու պլաստիկ մասսաների կիրառումը հնարավորություն կտա մեքենաշինության մեջ խնայելու տասնյակ միլիոն տոննաների հասնող սև ու գունավոր, հազվագյուտ ու ցրված մետաղներ:

Առանց քիմիայի այսօր չի կարելի պատկերացնել ո՛չ գիտության և ոչ էլ տեխնիկայի զարգացում: Առանց քիմիայի չէին լինի ռադիոէլեկտրոնիկան, հաշվիչ մեքենաները, կիսահաղորդիչները, թերմո-միջուկային ռեակցիաները, հրթիռային տեխնիկան, մեր փառապանծ տիեզերանավերը:

Սակայն միայն արդյունաբերության, գիտության ու տեխնիկայի ասպարեզներով չեն սահմանափակվում քիմիայի դերն ու նշանակությունը: Կա նաև գյուղատնտեսություն, որը սնունդ է տալիս մարդկությանը: Այստեղ քիմիայի դերը ոչ պակաս է, եթե չասենք շատ առավել, քան արդյունաբերության մեջ: Այս բնագավառում քիմիան հնարավորություն է տալիս սինթեզելու և ստեղծելու բազմանուն պարարտանյութեր, որոնց կիրառումը մարդկության առջև բաց է անում լայնատարած, անսահմանափակ հորիզոններ: Ագրոտեխնիկական կանոնները ճիշտ կիրառելու և պարարտանյութերն օգտագործելու դեպքում հացահատիկների բերքատվությունը հեկտարից կարելի է հասցնել 60—70 ցենտների, այսօրվա 10—12 ցենտների փոխարեն, շաքարի ճակնդեղի բերքատվությունը՝ մինչև 800—1000 ցենտների, այսօրվա 250—300 ցենտների դիմաց, խաղողի բերքատվությունը՝ 500—600 ցենտների, 60—70 ցենտների դիմաց և այլն:

Այս ամենը չի սպառում քիմիայի հնարավորությունները: Հայտնի է, որ

բուսական աշխարհն ունի բազմահազար տեսակի վնասատուներ (կենդանական-միջատային և բուսական-մոլախոտային)։ Բուսական աշխարհի ամենաահավոր թշնամին մորեխն է, որի զանգվածների կշիռը, առանձին դեպքերում, հասնում է մինչև 50000—100000 տոննայի և նա օրական ոչնչացնում է (ուտում է) իր քաշին հավասար կանաչ մասսա (առաջին հերթին հացահատիկի արտերը)։ Բուսական աշխարհի այս սոսկալի ավերարների դեմ պայքարելու գործում նորից մեր բարեկամն է ու մեզ օգնում է ամենազոր քիմիան։ Այն մարդկությանը հնարավորություն է տվել ստեղծելու բազմաթիվ թունավոր նյութեր, որոնց օգնությամբ մարդը կարողանում է պայքարել այդ ամենաահռելի թշնամու դեմ։ Չափազանցություն չի լինի և համարձակորեն կարելի է ասել, որ եթե չլինեին այդ թունաքիմիկատները, մարդկությունն անզոր կլիներ փրկելու իր քրտինքի վաստակը՝ հողի բերքն ու բարիքները։

Քիմիան մեզ հնարավորություն է տալիս ստեղծելու համապատասխան հորմոններ, որոնց օժանդակությամբ արագացվում է բույսի աճը, ավելանում բերքատվությունը։

Մեծ է քիմիայի դերը նաև անասնապահության բնագավառում։ Անասնաբուժական նպատակների համար թողարկվում են ոչ միայն բազմաթիվ զանազան դեղորայք ու բուժիչ նյութեր, այլև սինթեզվում են քիմիկատներ, որոնք կիրառվում են որպես կեր՝ կենդանու մսատվությունը բարձրացնելու նպատակով։ Այսպես, եթե խոշոր եղջերավոր անասունը որոշ ժամանակի ընթացքում կարողանում է մարսել (խառնված ու մշակված կոշտ կերի հետ) մեկ կիլոգրամ կարբամիդ (միզանյութ), ապա նրա քաշը (միայն քիմիկատի հաշվին) ավելանում է 6 կիլոգրամով. նման օրինակները բազմազան են ու բազմաթիվ։ Այսպիսին է տակավին ժողովրդական տնտեսության մեջ քիմիայի օգտագործման ոչ լրիվ ցանկը։

●

ԱՆԴՐԿՈՎԿԱՍԻ տնտեսական շրջանի քիմիական արդյունաբերության զարգացմանն էր նվիրված այս տարվա օգոստոսի 6—9-ին Բաքվում տեղի ունեցած Վրացական, Հայկական և Ադրբեջանական ՍՍՌ-ների քիմիագործների անդրանիկ խորհրդակցությունը։ Խորհրդակցության պլենար նիստում կարդացվեցին 4 և սեկցիաների նիստերում՝ 2 հիմնական զեկուցումներ։ Զեկուցումները վերաբերում էին քիմիայի զարգացման բոլոր բնագավառներին՝ 1964—1970 թվականների միջև ընկած ժամանակաշրջանում։

Մենք այստեղ նպատակ չունենք լրիվ հաշվետվություն ներկայացնելու, բայց անհրաժեշտ ենք գտնում մեջբերել որոշ տվյալներ, քանի որ այդ խորհրդակցությունում ուրվագծվեցին նաև մեր ռեսպուբլիկայի քիմիական արդյունաբերության զարգացման հեռանկարները։

Այդ խորհրդակցության արդյունքները, նրա որոշումները, ըստ երևույթին, հիմք կծառայեն համապատասխան որոշումներ ընդունելիս (վերադաս մարմինների կողմից), մանավանդ որ խորհրդակցությունը հրավիրել էր Սովետական Միության կոմունիստական պարտիայի Կենտրոնական Կոմիտեի Անդրկովկասյան բյուրոն։

Խորհրդակցությունում վերլուծվեց և ամփոփվեց Անդրկովկասյան եղբայրական ռեսպուբլիկաների քիմիական արդյունաբերության արդի վիճակը։



Անդրկովկասն ունի խիստ զարգացած քիմիական արդյունաբերություն. 1959—1962 թվականների ընթացքում այդ արդյունաբերության մեջ կապիտալ ներդրումների ծավալն ավելի քան 2 անգամ գերազանցել է նախորդ 7 տարիների կապիտալ ներդրումների ծավալին. յոթնամյակի մնացած երեք տարիների ընթացքում (1963—1965 թվականներ) այդ ծավալն ավելանալու է ևս երկու անգամ։

Քիմիական արդյունաբերության համախառն արտադրանքը 1965 թվականին, 1958 թվականի համեմատությամբ, աճելու է ավելի քան 4 անգամ։ Անդրկովկասի տնտեսական շրջանի քիմիական արդյունաբերության տեսակարար կշիռն ըստ ամենայնի զգալի է, մեծ տոկոս է կազմում երկրի ողջ քիմիական արդյունաբերության ընդհանուր ծավալի մեջ։ Մի քանի տասնյակ նյութեր ու քիմիկատներ մեզ մոտ՝ Անդրկովկասյան տնտեսական շրջանում արտադրվում են ավելի մեծ քանակությամբ, քան միութենական մյուս տնտեսական շրջաններում։ Ավելին, մի քանի տեսակի նյութեր ու քիմիկատներ արտադրվում են միայն մեզ մոտ՝ Անդրկովկասյան տնտեսական շրջանում։

Յոթնամյակի մնացած տարիներին ուժեղ թափով զարգանալու է հատկապես բարձր մոլեկուլյար միացությունների բնագավառը և, առաջին հերթին, այն նյութերի արտադրությունը, որոնք անմիջապես օգտագործվելու են ժողովրդական սպառման առարկաների (մանրաթելեր, պլաստիկ մասսաներ ու խեժեր, արհեստական կաշիներ) թողարկման և թունաքիմիկատներ, պարարտանյութեր և այլն արտադրելու համար։

Խորհրդակցությունն ուրվագծեց մեր ապագան քիմիայի գծով։

Գալիք 6—7 տարիներին քիմիական արդյունաբերության համախառն արտադրանքն աճելու է շուրջ 6 անգամ, առանձին բնագավառներում՝ 8—12, իսկ մի շարք նյութերի ու տեսակների արտադրությունը՝ 15—20 անգամ։ Նման այսպիսի թափ կունենա նաև մեր ռեսպուբլիկայի քիմիական արդյունաբերությունը։ Ինչպես հայտնի է, բնական գազը երրորդ տարին է ինչ հաջողությամբ օգտագործվում է ժողովրդական տնտեսության մի շարք բնագավառներում։ Հայտնի է նաև, որ այդ հումույթի բազայի վրա Երևանի Կիրովի անվան գործարանում կառուցվում է մի խոշոր արտադրական օբյեկտ՝ բնական գազից ացետիլեն ստանալու նպատակով։ Բավական է նշել, որ այդ արտադրությունն ամենախոշորն է Սովետական Միությունում։ Հենց այս հիմնական հանգույցն էլ քիմիական արդյունաբերության զարգացման հիմքն է։

Ամենից առաջ, այդ ացետիլենի բազայի վրա մոտ երկու և կես անգամ աճելու է քլորոպրենային կաուչուկի արտադրությունը. համապատասխանորեն կաճեն նաև կաուստիկ սոդայի, աղաթթվի, քլորբենզոլի և մի շարք այլ նյութերի արտադրությունը։ Կիրովի անվան գործարանը կարտադրի մի քանի հազար տոննա ամենաընտիր կրոտիլին հերբիցիդը։ Այս բոլոր միջոցները միասին վերցրած հնարավորություն կտան գործարանի համախառն արտադրանքն ավելացնելու մոտ 3 անգամ։ Արտադրության նոր օբյեկտների կառուցումն ու վերակառուցումն այստեղ կավարտվի 1965—1966 թվականներին։ Այդ նույն ացետիլենի բազայի վրա կկառուցվի և շահագործման կհանձնվի սինթետիկ բրդաթելի, այսպես կոչված, «վինոլ» գործարանը։ Կկառուցվեն այդ մանրաթելը վերամշակող գործարաններ ու ֆաբրիկաներ, ուր կաշխատեն առնվազն մեծ թվով մարդիկ (բանվորներ, ծառայողներ, ինժեներա-տեխնիկական անձնակազմ)։ Բոլոր ձեռնարկությունները միասին վերցրած կթողարկեն մի քանի

տասնյակ միլիոն ռուբլու համախառն արտադրանք: Կիրովի անվան գործարանին կից կկառուցվի խոշոր ֆացախաքքվի գործարան, որի համար հումույթ կհանդիսանա եղբայրական Ադրբեջանից բերվող, այսպես կոչված, գազային բենզինը: Այս թթվի մի մասը կօգտագործվի «վինոլ»-ի գործարանում, իսկ մյուսը՝ հարևան պոլիվինիլացետատ գործարանում: Վերջինս, իր հերթին, խիստ կլայնացվի՝ նույնպես ի հաշիվ ացետիլենի. այս գործարանի համախառն արտադրանքը գերազանցելու է Կիրովի անվան գործարանի արտադրությունը, որն արդի պայմաններում համարվում է քիմիայի գիգանտը:

Չի կարելի պատկերացնել զարգացած քիմիական արդյունաբերություն՝ առանց կոնտրոլի: Իսկ վերջինիս համար հարկավոր են քիմիական ռեակտիվներ, որի պահանջը մեծ է ընդհանրապես Սովետական Միությունում: Այդ պահանջը բավարարելու նպատակով վերադաս մարմինների որոշմամբ մեր երկրում կառուցվելու են քիմիական ռեակտիվների մի շարք ձեռնարկություններ: Դրանցից մեկի շինարարությունն արդեն սկսված է մեզ մոտ՝ Երևանում, որի առաջին հերթը կավարտվի և շահագործման կհանձնվի 1965 թվականին, իսկ մյուս հերթերը՝ 1966—1967 թվականներին: Այդ գործարանի մեծ նշանակությունը պատկերացնելու համար բավական է նշել, որ այստեղ աշխատելու են շուրջ 450 ինժեներներ:

Նախատեսված է և արդեն վերադաս օրգանների հավանությանն են արժանացել մոտ ապագայում ռեսպուբլիկայում քիմիական արդյունաբերության մի քանի կարևորագույն ու խոշոր ձեռնարկությունների կառուցումն ու ընդարձակումը: Մեր ռեսպուբլիկայի քիմիական արդյունաբերության թագն ու պսակն է լինելու քիմիական նոր, խոշոր կոմբինատը (Մասիսում): Այդ մի խոշոր ձեռնարկություն է, որն ընդգրկելու է շուրջ 200 հեկտար տարածություն: Կապիտալ ներդրումների ծավալն այստեղ կկազմի տասնյակ միլիոն ռուբլի: Գործարանը կարտադրի մի քանի հարյուր հազար տոննա զանազան տեսակի քիմիկատներ՝ խեժեր, պլաստիկ մասսաներ և այլ նյութեր: Ձեռնարկության թողարկած խեժերի բազայի վրա կկառուցվեն մի քանի գործարաններ՝ պլաստիկ մասսաների վերամշակման համար: Դժվար է ասել, թե ինչպիսի պարամետրեր կունենան այս արտադրությունները, սակայն մոտավորապես կարելի է ասել հետևյալը. գործարաններում աշխատանքները կլինեն լրիվ մեքենայացված և ավտոմատացված: Այստեղ մշտապես կաշխատեն հազարավոր մարդիկ, որոնցից առնվազն 3000—4000-ը ինժեներա-տեխնիկական անձնակազմում:

Ռեսպուբլիկայի քիմիական արդյունաբերության նշանավոր ձեռնարկություններից է Կիրովականի մետաքսաթելի գործարանը: Սրա առաջին հերթը գործարկվեց անցյալ տարի, որի տարեկան արտադրական կարողությունն է մի քանի հազար տոննա մանրաթել: Նախատեսվում է գործարանն ընդարձակել, որի կարողությունը կկրկնապատկվի. ձեռնարկության լրացուցիչ օբյեկտների կառուցումները կսկսվեն 1965 և կավարտվեն 1967 թվականին:

Առաջիկայում ավելի քան քառապատկվելու է Կիրովականի քիմիական կոմբինատի արտադրանքի ծավալը: Այստեղ կստեղծվի կարբամիդի (միզանյութի) նոր արտադրություն: Մեծ է դրա նշանակությունը մեր երկրի գյուղատնտեսության համար: Առավել մեծ է դրա նշանակությունը ռեսպուբլիկայի համար: Բանը նրանում է, որ այն ամենաբարձրորակ պարարտանյութն է և պարունակում է համեմատաբար ավելի սակավ խառնուրդներ՝ բալաստ: Իսկ



վերջինս, ինչպես հայտնի է, վատացնում է հողի ստրուկտուրան: Այսպիսով, մեր երկրի գյուղատնտեսության համար կարբամիդն ունի անգերագնահատելի նշանակություն: Բացի դրանից, ինչպես վերը նշվեց, կարբամիդը ծառայում է նաև որպես կեր՝ բտող քիմիկատ, որի նշանակությունը մեր ռեսպուբլիկայի համար նույնպես անգերագնահատելի է: Նախատեսվում է այստեղ ավելացնել սինթետիկ կոուչուկի արտադրությունը. կազմակերպվելու են նրա նորանոր տեսակների արտադրությունը և վերամշակվող լաբորատորիաներ: Ավելի քան հնգապատկվելու է ռետինա-տեխնիկական իրերի արտադրությունը, որի համախառն արտադրանքի ծավալը հասնելու է շուրջ 50 միլիոն ռուբլու:

Հայտնի է, որ մեր ռեսպուբլիկան անտառազուրկ է, հետևաբար դժվար է կազմակերպել պարկետի մեծածավալ արտադրությունը, որի հետևանքով էլ հաճախակի ձգձգվում է շինարարությունը և, առաջին հերթին, բնակարանային ու կուլտուր-կենցաղային օբյեկտների կառուցումները: Այս տեսակետից էլ լինոլեումի արտադրության կազմակերպումը մեզ մոտ բառիս բուն իմաստով, փրկություն է շինարարների համար: Այդ նպատակով մոտակա տարիներին խիստ մեծացվելու է պոլիպլաստ գործարանը: Այստեղ 1965—1966 թվականներին կարտադրվի ավելի քան մեկ միլիոն քառակուսի մետր լինոլեում: Գործարանը կարտադրի նաև մեծ քանակությամբ թաղանթներ, ծածկոցներ, ծակոտկեն-սպունգային ռետինե իրեր, հագուստեղեն, արհեստական կաշիներ, հումույթ՝ զալանտերեայի արտադրության համար և այլն: Վերակառուցվելու է նաև ներկերի գործարանը, որի արտադրանքը տարեկան կհասնի շուրջ 10000 տոննայի: Կառուցվելու է մի նոր խոշոր գործարան՝ կենցաղային քիմիան զարգացնելու նպատակով: Սրանք են մոտավորապես քիմիայի զարգացման առաջիկա 5—7 տարվա ուրվագծերը:

●

Այժմ մի քանի խոսք համեմատաբար հեռավոր ապագայի մասին:

Անտարակույս բնական գազի մուտքը մեզ մոտ հիմնովին վերափոխեց ռեսպուբլիկայի ժողովրդական տնտեսության հիմքերի հիմքը: Այն հնարավորություն տվեց հիմնովին վերակառուցել մեր էներգետիկան: Հայտնի է, որ մեր հիդրոէներգետիկ ռեսուրսները խիստ սահմանափակ են և ապագայում զարգանալու մեծ հեռանկարներ չունեն: Բնական գազի մուտքը հնարավորություն տվեց վերակառուցելու հարյուրավոր կաթսայատներ, գազիֆիկացնելու քաղաքներ ու ավաններ և այլն:

Սակայն, ցավոք սրտի, պետք է նշել, որ գազի այն քանակը, որ մենք ստանում ենք եղբայրական Ադրբեջանից, առայժմ խիստ սահմանափակ է և այն հնարավորություն չի տալիս հետագայում արագ կերպով զարգացնելու և ուժեղացնելու մեր ռեսպուբլիկայի ժողովրդական տնտեսությունն ամբողջովին վերցրած: Հետևաբար հարկավոր է հենց այժմվանից ձեռք առնել պրակտիկ միջոցներ էներգետիկ բազան ամուր հիմքերի վրա դնելու համար: Ճիշտ է, համապատասխան վերադաս մարմիններն այդ մասին արդեն հոգում են և ձեռք են առել մի շարք միջոցներ, որոնք մեծ չափով կնպաստեն գործին: Սակայն, մեր կարծիքով, հարկավոր են նաև լրացուցիչ միջոցառումներ: Այդ միջոցառումներից մեկը Գրոզնի—Թբիլիսի գազամուղի կառուցումն է, որը շահագործ-

ման կհանձնվի ընթացիկ տարում: Այդ բանը հնարավորություն կտա Վրաստանի ժողովրդական տնտեսության մեջ օգտագործել Գոռզնուց ստացվող գազը, իսկ Ղարադաղից ստացվող գազը կմատակարարվի միայն մեր ռեսպուբլիկային և դրանով իսկ կավելանան մեր պաշարները: Այժմ Ադրբեջանի երկրաբանության և ընդերքի պահպանության վարչությունը մեծ ջանքեր է գործադրում գազի պաշարները բազմապատկելու նպատակով: Բացի դրանից, միութենական վերադաս մարմինները նախագծում են միութենական մյուս ռեսպուբլիկաներից ու տնտեսական շրջաններից գազամուղ կառուցել դեպի Անդրկովկաս: Ռեսպուբլիկայի երկրաբանության և ընդերքի պահպանության վարչությունը մեծ գործեր է կատարում Հայաստանում գազի պաշարներ հայտնաբերելու ուղղությամբ:

Այս բոլորը, իհարկե, շատ լավ է. սակայն մենք գտնում ենք, որ էլ ավելի լավ կլինի ու ավելի հզոր բազա կստեղծվի, եթե այժմվանից շահագրգռված կազմակերպությունները մտահոգվեն Բաքվից՝ Թբիլիսի—Երևան նավթամուղ կառուցելու աշխատանքներով:

Իր ժամանակին, ինչպես հայտնի է, մեծահամբավ ռուս գիտնական Մենդելեևը նավթը և գազը, որպես վառելանյութ օգտագործելը համարել է ոչ նպատակային: Նավթն ու գազը, ասել է նա, պետք է ծառայեն միմիայն իրենց նպատակին՝ քիմիային: Այժմ հասել է ժամանակը, որպեսզի լիովին իրագործվի մեծ գիտնականի այդ իդեան:

Մեր կարծիքով, Անդրկովկասում գոյություն ունեցող ու նախագծվող բոլոր ջերմաէլեկտրակայանները պետք է փոխադրել մազութի: Այն ժամանակ մենք կունենանք գազի հսկայական պաշարներ, որոնց հիման վրա կզարգացնենք քիմիական արդյունաբերությունը: Բնական գազի առյուծի բաժինը այրվում է ջերմաէլեկտրակայանների կաթսայատներում: Եթե Հայաստանի ու Վրաստանի գոյություն ունեցող ու նախագծվող Ջէկ-երը (ТЭЦ) փոխադրել մազութի ու այդ քանակի վրա գումարել ռեսպուբլիկաներում սպառվող մյուս Նավթանյութերի քանակները (բենզին, սպիտակ նավթ, զանազան տեսակի յուղեր ու քսուքներ, բիտումներ և այլն), ապա կստացվի, որ մոտ 7—10 տարուց հետո այդ քանակությունները կհասնեն միլիոնավոր տոննաների և միանգամայն կարդարացվի վերը մատնանշված նավթամուղի կառուցումը: Նավթամուղը ոչ միայն կազատի գազի հսկայական պաշարները այրելու նպատակով օգտագործելուց, այլև նավթաքորման գործարանները (որպիսիք, անտարակույս, պետք է կառուցվեն Հայաստանում ու Վրաստանում), իրենք կհանդիսանան նորանոր ելանյութերի աղբյուրներ՝ նավթաքիմիան ու քիմիան մեր ռեսպուբլիկաներում զարգացնելու նպատակով: Սա միանգամայն հասունացած հարց է, որով պետք է զբաղվել այսօր:

Մենք ձեռքի տակ չունենք նավթամթերքների փոխադրման հաշվարկումներ. սակայն կասկածից վեր է, որ դրանք միլիոնավոր տոննաների են հասնում: Պարզ է, որ պոմպային եղանակով դրանց փոխադրումները բազմիցս ավելի էժան կլինեն, քան երկաթուղով:

Սրանք հարցեր են, որոնք իրենց դրական լուծումը կստանան առաջիկա տարիներին: Այն ժամանակ մենք կունենանք ամենալայն հնարավորություններ դուրս գալու համաշխարհային ասպարեզ և ողջ մարդկությանն ապացուցելու, թե որպիսի հրաշքներ կարող է գործել սոցիալիստական սիստեմը: Այդ մենք կանենք, քանի որ ունենք անսպառ պաշարներ և տաղանդավոր քիմիկոսների մի հզոր բանակ, որին գլխավորում է մեր փառապանծ պարտիան:

---

# ԲՆԱԿԱՐԱՆԱՅԻՆ ՇԻՆԱՐԱՐՈՒԹՅԱՆ ՆՈՐ ՈՒՂԻՆԵՐ

Հ. ԻՍԱԲԵԿՅԱՆ

ՃԱՐՏԱՐԱՊԵՏՈՒԹՅՈՒՆԸ, անկասկած, կարող է ազդել կենցաղի կազմավորման, նրա վերափոխման վրա, տալով նրա զարգացմանը որոշող ընթացք, սակայն միայն այն դեպքում, երբ այդ վերափոխումների համար կան արդեն սոցիալական և տնտեսական նախադրյալներ: Մինչև երեսնական թվականները, երբ մեր ռեսպուբլիկայում բնակելի տների կառուցումը շատ սահմանափակ էր և անգամ Երևանում տարեկան մի քանի տասնյակից չէր անցնում, երբ դպրոցները, մանկապարտեզները, մանկամսուրները խիստ սակավաթիվ էին, երբ դեռ նոր էր ստեղծվում պետական խանութների, ճաշարանների և սպասարկման այլ օբյեկտների ցանցը և չէին լուծված սոցիալական շատ պրոբլեմներ, հիմնովին վերակառուցել կենցաղը անհնար էր:

Անհատի պաշտամունքի մտայնության և այլ պատճառներով ճարտարապետության զարգացումը, հանդիպելով առօրյա գործնական խնդիրների լուծման դժվարություններին, տեղի տվեց անհատի պաշտամունքից բխող մոնումենտալիզմին. շքեղությունը դարձավ թերությունները սքողելու միջոց, իսկ կենցաղի կազմակերպման խնդրում տուրք տրվեց քաղքենիական տրամադրություններին:

Չնայած այդ թերություններին, տարեցտարի մեծ թափով առաջ էր գնում բնակարանային և այլ շինարարությունը. ստեղծվում էին նոր, անհամեմատ լավ հարմարություններ բնակչության սպասարկումը բարելավելու համար, սակայն այդ ամենը նպատակայաց ձևով չէր արվում, չէին օգտագործվում կենցաղի վերակառուցման համար արդեն կիրառելի դարձած հնարավորությունները: Այսպես, օրինակ, բնակելի տների առաջին հարկերում կառուցվող խանութները, ճաշարանները և այլն չէին կապվում բնակելի թաղամասի սպասարկման կառուցվածքի հետ, չէին ծառայում այդ կառուցվածքի վերափոխմանը, այլ միայն շենքի «ճ ա ր տ ա ր ա պ ե տ ա կ ա ն կ ե ր պ ա ր ի» դրսևորմանը, տալով այդ հարկին շքեղ հարդարանք և 5—6 մետր բարձրություն, որն անհրաժեշտ էր համարվում շենքին մոնումենտալ տեսք տալու համար, բայց բոլորովին ավելորդ էր ֆունկցիոնալ տեսակետից և ոչ բնորոշ բնակելի տան համար:

Դպրոցների նախագծման բնագավառում ճարտարապետական միտքը տասնյակ տարիներ աշխատում էր միայն կոմպոզիցիոն լուծումների տարբե-

րակների (շենքի հարկայնության, կոնֆիգուրացիայի, ֆիզկուլտուրայի և հանդիսատեսային դահլիճների սանդղավանդակների դասավորության) և նման այլ խնդիրների վրա, անտեսելով ուսուցման ձևերի պրոբլեմները՝ ուսուցումը կյանքի հետ կապելու, մասնագիտացման, պոլիտեխնիզացիայի, գիշերօթիկ դարձնելու և այլ պրոբլեմներ, որոնք վերջին տարիներին բազում փոփոխություններ կրեցին:

●

ԲՆԱԿԱՐԱՆԱՅԻՆ շինարարությունը մինչև 1954 թվականը Երևանում և ռեսպուբլիկայի այլ վերակառուցվող քաղաքներում կատարվում էր հիմնականում քաղաքի կառուցապատված հին տերիտորիայի վրա, քանդվող հին շենքերի, կամ ազատ մնացած տեղերում, քաղաքի տարբեր մասերում իրարից անջատ, այսպես կոչված հատ-հատ տներով: Այդ պայմաններում ամեն մի շենք ունենում էր իր շրջապատի շենքերից անկախ ճարտարապետություն, որովհետև դրանք հետագայում պիտի քանդվեին, փոխարինվեին նորերով: Այդպիսով ամեն մի ճարտարապետ, ազատ լինելով շրջապատի և այլ պարտավորեցնող հանգամանքներից, նախագծում էր հաճախ քմահաճ կերպով, անձամբ որոշելով հարկերի բարձրությունը, բնակարանների մեծությունը, նրանց տիպն ու հարմարությունները և այլն, ելնելով ոչ թե միևնույն ընդհանուր հիմունքներից, այլ այս կամ այն պատվիրատու հիմնարկի ցանկություններից, նրանց հնարավորություններից և հաճախ՝ սխալ առաջադրանքներից, թույլ տալով բազմաթիվ ավելորդություններ (գլխավորապես արտաքին ձևավորման մեջ) և թերություններ կենսական հարմարություններում:

1954 թվականը շրջադարձային տարի հանդիսացավ սովետական ճարտարապետության համար: Մոսկվայում գումարված շինարարների համամիութենական խորհրդակցությունում բացահայտվեցին ճարտարապետության նախագծման թերությունները նորակառույցներում և նշվեցին ճարտարապետության զարգացման նոր ուղիներ: Այդ ժամանակվանից նախագծման և շինարարության մեջ մեր ռեսպուբլիկայում զգալի փոփոխություններ են տեղի ունեցել հատկապես բնակելի և մասսայական հասարակական շենքերի նախագծման բնագավառում, որոնց կառուցումը յոթնամյակի գլխավոր պրոբլեմներից մեկը հանդիսանալով, բնականաբար գտնվում է ճարտարապետական նախագծման ուշադրության կենտրոնում:

Առաջին կարևորագույն միջոցառումը տիպային նախագծումն էր: Այդ անհրաժեշտ էր, նախ՝ բարձրորակ և միասնական հիմունքներով ստեղծված նախագծեր ստանալու համար, երկրորդ՝ հնարավորություն կտար ավելի մեծ մասշտաբներով կիրառելու շինարարության մեջ հավաքովի միատեսակ կոնստրուկցիաները, իրականացնելու շինարարության մեքենայացման կարևորագույն պրոբլեմը:

Անցյալում շինարարության մեքենայացումը, նրա տեմպերի արագընթացը կաշկանդվում էին առանձին տեղերում հատ-հատ շենքերի կառուցմամբ: Հետևաբար անհրաժեշտ էր կենսագործել կարևոր միջոցառումը՝ կոմպլեքսային շինարարությունը կենտրոնացնել մի տեղում, իսկ այդ հնարավոր էր իրականացնել միայն քաղաքի հին կառուցապատված մասերից դուրս՝ նրա մերձակա ազատ հողամասերի վրա, որի շնորհիվ նախագծողը հնարավորություն կունենար անկաշկանդ և ցանկացած ձևով կազմելու հատակագիծը:



Այդ կարևոր միջոցառումներն իրագործելու նպատակով Երևանում ընտրվեց Հրազդանի աջափնյա տեղամասը: Այդ թաղամասի հատակագծման հեղինակը դարձավ արվեստի վաստակավոր գործիչ, ճարտարապետ Մ. Մազմանյանը: Նրա նախագծի հիմքում դրված էին նյութական կոնկրետ միջոցների վրա հիմնված, բնակիչների կենցաղի, կյանքի պայմանները վերափոխելու ռեալ հնարավորություններ:

Այստեղ կառուցումներից ազատ 290 հեկտար հողամասի վրա նախատեսված է կառուցել բնակելի տներ 730000 քառակուսի մետր ընդհանուր մակերեսով, որը անձին 9 քառակուսի մետր տրամադրելու դեպքում կբավականացնի 81000 բնակչի: Այդ բնակելի շրջանը մի ամբողջական միավոր է լինելու. նրա սահմաններում կստեղծվեն բնակիչների կենցաղային, կուլտուրական և այլ սպասարկման համար անհրաժեշտ բոլոր շենքերն ու հարմարանքները: Բնակելի շրջանը բաժանվում է ավելի փոքր միավորների, այսպես կոչված՝ *միկրոշրջանների*:

Բնակելի և հասարակական շենքերը քաղաքում նախկինում կառուցվում էին պատահական դասավորությամբ և սպասարկումն անհամաչափ և անհարմար էր: Միկրոշրջանն իրենից ներկայացնում է մի մեծ թաղամաս (կվարտալ), ավելի մեծ, քան կառուցում էին առաջներում. նրա սահմաններում, առանց շրջապատող մագիստրալ փողոցները դուրս գալու, բնակիչները միկրոշրջանի ներսում կունենան մանկապարտեզ-մսուրներ, դպրոցներ, խանութներ, փոքրիկ այգի՝ հանգստի համար, խաղահրապարակներ, լողավազաններ և սպորտային այլ հարմարանքներ: Մի խումբ միկրոշրջանների համար նախատեսվում են սպասարկման այնպիսի օբյեկտներ, ինչպես՝ լվացքատուն, ճաշարան, կամ խոհանոց՝ կիսաֆաբրիկատներ բաց թողնելու համար, ակումբ, կապի բաժանմունք, բուժկայան և այլն: Իսկ ամբողջ շրջանի կենտրոնում նախագծվում է կառուցել առևտրական, կուլտուրական և ադմինիստրատիվ կենտրոններ, որտեղ տեղադրված կլինեն ծածկված շուկան, ունիվերսալ խանութը, կուլտուրայի տունը, շրջանի ադմինիստրատիվ և այլ հասարակական շենքեր: Շրջանի հանգստի ու կուլտուրայի այգին ձգվելու է շրջանի երկարությամբ, Հրազդանի գեղատեսիլ ձորի եզրին, իր բոլոր անհրաժեշտ հարմարություններով:

Երբ այս բոլորն արդեն մոտիկ ապագայում կիրականանա, կյանքի պայմաններն այդ շրջանում անհամեմատ ավելի լավ կլինեն, քան քաղաքի ավելի վաղ կառուցված մասերում և բնակիչների կենցաղը մի քայլով ավելի կմոտենա կոմունիստական կենցաղի ձևերին:

Շրջանի կառուցապատման համար օգտագործվել են հայկական ռեսպուբլիկայի բնակելի և հասարակական շենքերի տիպային նախագծերը (կազմված Հայպետնախագծում): Տիպային նախագծերը կազմվում են այնպես, որ ամենախիստ խնայողության հետ մեկտեղ շենքում ստեղծվեն բոլոր անհրաժեշտ հարմարությունները, նրանց շինարարության մեջ օգտագործվեն միատեսակ կրկնվող հավաքովի շինարարական մասեր (սյուներ, ծածկի պանելներ, դռներ, լուսամուտներ, սանդուղքներ և այլ մասեր), որոնք նախօրոք պատրաստվում են շինարարական գործարաններում և հավաքվում տեղում, շենքի վրա, նպաստելով շինարարական աշխատանքների մեքենայացմանն ու արագացմանը:

Թաղամասի շինարարությունն սկսվել է ընդամենը չորս-հինգ տարի

առաջ, իսկ այնտեղ արդեն կառուցված է մոտ 190 հազար քառակուսի մետր բնակելի մակերես, որտեղ ապրում են 25 հազարից ավելի բնակիչ, այսինքն՝ այնքան՝ որքան ապրում էին նախապատերազմյան Երևանում: Մեկ բնակչին ընկնող բնակելի մակերեսի միջին բաժինը հասնում է մոտ 8 մետրի. այդ մեծ նվաճում է: Այստեղ ամեն մի ընտանիք ստացել է մեկուսացված բնակարան՝ բոլոր հարմարություններով:

Բնակելի շենքերի կառուցմանը զուգահեռ կառուցվել են 6 մանկապարտեզ և մանկամսուր՝ 1000 երեխաների համար, 4 դպրոց՝ 4200 դպրոցականների համար: Այսպիսով երեխաները մանկապարտեզ ու դպրոց են գնում հենց իրենց միկրոշրջանի սահմաններում: Բոլոր միկրոշրջաններում անհրաժեշտ տարածություն կա ընդարձակ ու կանաչազարդ բակերի և խաղահրապարակների համար: Նախագծում նախատեսված (բայց դեռ չկառուցված) խանութների փոխարեն կառուցված են ժամանակավոր կոլտնտեսային շուկա և կրպակներ: Մոտ ժամանակներս կավարտվեն թաղամասի բարեկարգման հիմնական աշխատանքները: Անցած կարճ ժամանակամիջոցում այդպիսի մեծ մասշտաբի կառուցումները, անշուշտ, հնարավոր դարձան ազատ հողամասի վրա շինարարության կենտրոնացման, տիպային նախագծերի կիրառման, հավաքովի կոնստրուկցիաների օգտագործման և աշխատանքային պրոցեսների համեմատաբար ավելի ռացիոնալ մեքենայացման շնորհիվ:

Մ ԵԶՆԻՑ շատերը, սովոր լինելով նախկին 3 մետր և ավելի բարձրությամբ ու մեծ (18, 20, 25 քառ. մետր) սենյակներ ունեցող բնակելի տներին, չեն կարողանում հանդուրժել նորերը: Այդպիսի մարդիկ մոռանում են, որ նախկինում մենք կառուցում էինք համեմատաբար քիչ բնակարաններ և կառուցվող 2—3 սենյականոց բնակարաններում բնակեցնում 2—3 ընտանիք. պարզ է, որ այդպիսի բնակարաններում սենյակները, խոհանոցը և մյուս հարմարությունները պետք է մեծ լինեին: Իսկ այժմ մի ընտանիքի տրվում է առանձին բնակարան՝ բոլոր հարմարություններով, բայց ավելի փոքր տարածությամբ:

Ոմանք դատում են նաև այսպես, որ եթե մենք այսօր խնայողության համար փոքրածավալ բնակարաններ ենք կառուցում, ապա հետագայում, երբ նյութական հնարավորությունները կավելանան, նորից կսկսենք ավելի մեծածավալները կառուցել, հետևաբար այժմյան փոքր բնակարանները կարժեզրկվեն: Սակայն, եթե այսօր մեր նպատակն է ամեն մի ընտանիքի բավարարել առանձին բնակարանով, ապա մեր ապագա խնդիրն է՝ ընտանիքի ամեն մի անդամին ապահովել առանձին սենյակով: Այդ նշանակում է, որ այսօրվա փոքր բնակարաններում (որտեղ հաճախ դեռ բնակեցվում են նախատեսվածից շատ մարդիկ), հետագայում թվով ավելի քչերը պետք է ապրեն: Այսպիսով, բնակարանային պայմանների լավացումը պետք է ընթանա ոչ թե սենյակները մեծացնելու, այլ նրանց քանակն ավելացնելու ուղիով, որն, անշուշտ գերադասելի է: Չպետք է մոռանալ, որ հետագայում բնակարանի ֆունկցիաները գնալով պակասելու են կուլտուր-կենցաղային և այլ հասարակական շենքերի ավելացման և նրանց ավելի ինտենսիվ օգտագործման շնորհիվ: Մենք ավելի շատ օգտվելու ենք հասարակական ճաշարաններից, ավելի շատ երեխաներ կընդգրկվեն գիշերօթիկ դպրոցներում ու մանկապարտեզներում, լվացքը դուրս կգա



բնակարանից (միկրոշրջանի մեքենայացված լվացքատունը շատով կազատագրի կանանց այդ ծանր աշխատանքից). ավելի շատ ժամանակ կնվիրենք սպորտին, նանապարհորդություններին. ընտանեկան հանդեսները, խնջույքները տեղի կունենան ակումբում, ճաշարանում, որտեղ այդ նպատակով կստեղծվեն հատուկ հարմարություններ:

Հետագայում բնակարանը, որպես «ընտանիքի ամրոց», որպես կահավորված թանգարան, սեփականություն կուտակելու, ժառանգություն թողնելու հանգամանք աստիճանաբար կվերանա. այն կաշկանդում է մարդու ազատությունը, կապում իր հետ, իսկ այդ հակասում է կոմունիստական բարոյականության, կենցաղին:

Ինչ վերաբերում է սենյակի բարձրությանը՝ 2,5 մետր, ապա, իհարկե, 2,7 մետր բարձրությունը թերևս ավելի լավ կլիներ, բայց, ինչպես հին հունական իմաստությունն է ասում՝ մարդ ապրում է ոչ թե ինչպես ուզում է, այլ ինչպես կարող է: Հարկի բարձրության իջեցումը ծավալի խնայողության հիմնական միջոցներից մեկն է, և մենք չենք կարող չօգտագործել այն. փաստորեն որոշ բարձրությունից (2,2) ավելին սպառողական արժեք է ներկայացնում էսթետիկական առումով միայն: Եթե մենք կարողանանք 2,5 մետր բարձրության հետ ունենալ ոչ մեծ, այլ բավարար մակերեսներով բնակարան, բոլոր բարձրորակ հարմարություններով, որը շատ կարևոր է, կահավորված համապատասխան կահույքով, ապա հարկի ցածր լինելը չի նկատվի, որովհետև այդ հարաբերական հասկացություն է և փոքր սենյակների համար համապատասխանորեն ավելի համաչափ: Մասամբ էլ սովորության հարց է այդ: Օրինակ, Անգլիայում հարկի մինիմալ բարձրությունը նորմաներով սահմանված է 2,4 մետր: Ինչ վերաբերում է այդ հարցի լուծմանը կլիմայական պայմանների տեսակետից, ապա ուսումնասիրությունները ցույց են տալիս, որ հարկի բարձրությունը, ամառվա շոգը մեղմացնելու տեսակետից, էական նշանակություն չունի: Այդ խնդիրը այլ կերպ է լուծվում:

Այս ամենը լավ է: Բայց մենք չենք կարող չնշել այն թերությունները, որ կան Հրազդանի աջափնյա շրջանի կառույցներում:

Առաջին և ամենալական թերությունը շինարարական աշխատանքների սխալ հերթականությունն է: Մեր կարծիքով, ազատ տարածության վրա շինարարությունը պետք է սկսեին ոչ թե շենքերի, այլ, առաջին հերթին, ճանապարհների, ջրմուղ-կոյուղու և բարեկարգման ու ստորերկրյա այլ հիմնական սարքավորումների կառուցմամբ: Ճիշտ է, դրա հետևանքով որոշ ժամանակով կձգձգվեր շենքերի կառուցումը, սակայն հետագայում կնպաստեր դրանց բարձրորակությանը և արագ ավարտմանը: Մինչդեռ այստեղ շինարարությունն սկսվեց թաղամասի մի ծայրից՝ բնակելի շենքերի կառուցմամբ. դրանց զուգահեռ սկսեցին հասարակական որոշ շենքերի (մանկական և հասարակական) կառուցումը: Չնայած արդեն երեք տարի է, ինչ շատ շենքեր բնակեցված են, բայց բակերում շարունակվում են բարեկարգման աշխատանքները, երբեմն էլ քանդելով շենքերի որոշ մասեր ու բարեկարգման սարքավորումներ, իսկ դրանք կրկնակի կառուցումներ են և ավելորդ աշխատանք ու միջոցներ են պահանջում:

Չեն կառուցվել նախատեսված խանութները և միկրոշրջանի այլ սպասարկման շենքերի մի մասը: Ոռոգման ցանցի կառուցման ուշացման պատճառով ձգձգվում են կանաչապատման աշխատանքները: Շինանյութերի պահեստ-

ները տեղամասում դասավորված են անհաջող, դրանք զբաղեցնում են այն տարածությունը, որ նախատեսված է կառուցել հանգստի ու կուլտուրայի այգին: Այդպիսով այգու կառուցման և կանաչապատման աշխատանքները կհետաձգվեն մինչև ամբողջ թաղամասի շինարարությունն ավարտելը:

Թերություններ կան նաև բնակելի տների տիպային նախագծերում: Մեկ սենյականոց բնակարանները չունեն լիարժեք պատշգամբներ, կամ բոլորովին զուրկ են դրանցից: Խոհանոցները փոքր են և անհրաժեշտ սարքավորումը չի տեղավորվում: Անհարմար ու նեղ են նախասրահները, համատեղված սանհանգույցները: Ինչ խոսք, որ պետք է գործադրել բոլոր հնարավոր միջոցները բնակարանային շինարարությունն էժանացնելու համար: Սակայն, մեր կարծիքով, չի կարելի հրապուրվել միայն նորմաներով թույլատրվող մինիմալ չափերով. անհրաժեշտ է գտնել էժանացման այլ միջոցներ՝ շինարարության ռացիոնալ վերափոխումների միջոցով: Պետք է նշել, որ այդ մինիմալ չափերը կառուցման ընթացքում հաճախ խախտվում են, որի հետևանքով միջանցքները, սանհանգույցները, դռներն ու լուսամուտները, խոհանոցները մինիմալ նորմաներից փոքր են ստացվում և առաջացնում բնակչության արդարացի դժգոհությունը:

Թաղամասում օգտագործված տիպային բնակելի տներն ունեն նաև քաղաքաշինական էական թերություններ: Շենքերն այստեղ դասավորված են նոր սկզբունքներով, ոչ թե կվարտալի կարմիր գծի վրա, փողոցին զուգահեռ, այլ որոշ դեպքերում՝ և՛ փողոցին ուղղահայաց կամ անկյան տակ, ելնելով ոչ թե փողոցը ձևավորելու տեսակետից, այլ աշխարհի կողմերի հանդեպ շենքի առավել նպատակահարմար դիրքից, կամ տեղանքին, ռելիեֆին հարմարվելու անհրաժեշտությունից: Սակայն բնակելի շենքերը նախագծված են, անտեսելով այդ կարևոր հանգամանքը, դրանք ունեն մի կողմում փողոցի ճակատ՝ երեսպատված տուֆով և մյուս կողմում՝ բակի ճակատ, պատշգամբներով, առանց տուֆի երեսպատման: Այդ շենքերը հարմարեցված են կառուցապատման նախկին պայմաններին, երբ շենքը մի ճակատով նայում էր փողոցին, իսկ մյուսը թաքնված էր լինում բակի կողմում և չէր երևում փողոցից: Մինչդեռ այդ թաղամասում դրանք դրված են այնպես, որ նրա երկու ճակատներն էլ փողոցի հանդեպ գտնվում են նույն պայմաններում և այդ հանգամանքն առաջ է բերում թե՛ կենցաղային անհարմարություններ և թե տրամաբանորեն չարդարացված տեսք: Մյուս թերությունն այն է, որ ամբողջ կառուցապատումը կատարվում է 2—3 տիպային նախագծով, որոնք, սակայն, շատ քիչ են տարբերվում միմյանցից: Այս հանգամանքը մի կողմից նվազեցնում է կառուցապատման հնարավորությունները տեղանքին հարմարվելու տեսակետից, մյուս կողմից՝ ստեղծվում է անդուր միօրինակություն, որն ավելի ուժեղանում է նրանով, որ բոլոր կառուցված շենքերը երեսպատված են միևնույն արթիկ-տուֆով: Միօրինակություն կա նաև կառուցապատման կոմպոզիցիոն ձևերի մեջ:

Բազմազանությունը մենք չենք համարում բնակելի շենքերի ճարտարապետության համար անհրաժեշտ կամ բնորոշ ձև, որովհետև, ունենալով միևնույն ֆունկցիան, նրանք չեն կարող չնմանվել իրար: Սակայն կարելի է օգտագործել հարկայնությամբ, սիլուետով տարբեր տիպի բնակելի շենքեր, իսկ նույն տիպի շենքերը կարող են տարբերվել շենքի մանրամասների տարբերակներով: Կարելի էր հասարակական շենքերը երեսպատել այլ քարով՝ բնակելի շենքերից տարբերելու համար: Մոսկվայի Չերյոմուշկիի միկրոշրջաններում (շատե-



րը դրանք նմանեցնում են մեր այս շրջանին, անվանելով Երևանյան Չերյոմուշկի) նույնպիսի միօրինակ տիպային շենքեր են, թեև դրանք ավելի համեստ տեսք ունեն, զուրկ լինելով մեր գեղեցիկ քարի երեսպատումից: Սակայն Չերյոմուշկիի թաղամասերի շենքերի միօրինակությունը խախտվում է նրանց ավելի ազատ դասավորությամբ, շենքերի մանրամասնությունների հարուստ տարբերակներով (պատշգամբների ճաղերը, շքամուտքերի ձևերը, ֆիվերը, պատերի գունավորումը և այլն), բազմապիսի կանաչազարդումով: Այնտեղ բակերում կառուցված են հետաքրքրական ճարտարապետական մանր կառուցվածքներ՝ երեխաների համար կան զանազան խաղերի հարմարանքներ, տաղավարներ, ջրավազաններ, նստարաններ, հովանոցներ և այլն: Նշված բոլոր միջոցները, չնչին ծախսեր են պահանջում, սակայն բոլորովին ձևափոխում են շենքերի, բակերի և ամբողջ թաղամասերի տեսքը:

Հրազդանի աջափնյա թաղամասում կհանդիպենք ո՛չ միայն շենքերի մասերի, չափերի, էլեմենտների դասավորության խախտումների, այլև՝ անորակ բետոնից ու երկաթ-բետոնից կառուցված մասերի, որոնք արդեն քայքայվում են, կտեսնենք անորակ պարկետ, դուռ ու լուսամուտ, հավաքովի մասերի անհուսալի միացումներ, անորակ սարքավորում և դրանց վատ դասավորում, կաթոցներ կտուրից, ջրի և կոյուղու խողովակներից:

Սակայն սխալ կլիներ շինարարության վատ որակի համար մեղադրել միայն շենքերը կառուցողներին, շինարարներին: Այստեղ մեղք ունենք և մենք՝ նախագծողներս. հաճախ չենք գտնում տվյալ կառուցվածքի կամ մասի ռացիոնալ ձևը, օրինակ, պատշգամբների երկար բետոնե հավաքովի մասերը և դրանց երկարյա միացումները, որոնք և՛ բարդ են, և ո՛չ բոլորովին հուսալի: Ի՞նչ մեղք ունեն պարկետ հավաքողները կամ դուռ ու լուսամուտ պատրաստողները, եթե նրանք թաց փայտանյութ են օգտագործում: Ինչպիսի՞ն կարող է լինել սանհանգույցների և խոհանոցների սարքավորումների որակը, եթե դրանց բազմաթիվ մասեր ու բարդ միացումներ հենց շենքի վրա են պատրաստվում, պրիմիտիվ միջոցներով: Էլ չենք ասում այն մասին, որ սարքավորման պատրաստի մասերը շատ հնացած են:

Շինարարության որակի հարցում մեծ դեր պետք է խաղա նաև նախագծող հեղինակների՝ ճարտարապետների, կոնստրուկտորների հեղինակային հսկողությունը, որը սակայն այստեղ, հատկապես տիպային շենքերի կառուցման ժամանակ, շատ թույլ է: Հեղինակային հսկողությունը ո՛չ միայն կնպաստի շինարարության որակի բարելավմանը, այլև հեղինակներն իրենց հերթին շինարարության մեջ կտեսնեն սեփական նախագծերի առավելություններն ու թերությունները, կառուցողների հետ մեկտեղ, իրար օգնելով, իրարից սովորելով կվերացնեն թե նախագծերի, թե կառուցման սխալները:

●

ԱՅՍՏԵՂ հարկ կա խոսելու նաև մի շատ բացասական երևույթի մասին, որը բնորոշ է բնակարանային շինարարությանն առհասարակ և այս թաղամասին՝ մասնավորապես: Այդ՝ պետությունից ստացած բնակարանների մասսայական վերակառուցումն է բնակիչների կողմից, որն այնպիսի մասշտաբների է հասել, որ կատարյալ չարիք է դարձել մեր բնակարանային ֆոնդի համար: Շատ բնակիչներ պետությունից բնակարանն ստանալով որպես վարձա-

կալ, այն համարում են իրենց սեփականությունը և սկսում վերափոխել ու վերակառուցել իրենց հայեցողությամբ, չնայած որ պետական հատուկ օրենքներով այդ խիստ արգելված է: Նրանք հաշվի չեն առնում շենքի ընդհանուր տեսքը, շենքի կոնստրուկցիաների սեյսմոկայունությունը: Բնակիչները հաճախ իրենց վերակառուցումներով խախտում և թուլացնում են ոչ միայն միջնորմները, այլև կրող հիմնական պատերը: Նրանք ծանրաբեռնում են պատշգամբների առանց այն էլ ոչ շատ կայուն կոնստրուկցիաները նոր պատերով և այլ կառուցվածքներով, պատշգամբները դարձնում են խոհանոց, խոհանոցը՝ սենյակ, կառուցում են նոր պատշգամբներ, տեղափոխում են ջրմուղի, կոյուղու և այլ սարքավորումները: Սովորական պայմաններում այդ վերափոխումներն անվնաս են անցնում, սակայն չպետք է մոռանալ, որ մեր ռեսպուբլիկան ենթակա է ուժեղ երկրաշարժերի ու ցնցումների և դրանք կարող են մեծ աղետների պատճառ դառնալ:

Անհրաժեշտ է խիստ միջոցներ ձեռք առնել հիշյալ անօրինական, կամայական շ ի ն ա ր ա ր ո ւ թ յ ա ն դեմ, որովհետև այդ հասարակական գույքի փչացման ամենաանթույլատրելի ձևն է: Բոլոր տեսակի նպատակահարմար և թույլատրելի վերափոխումները պետք է կատարվեն բնակարանային բաժինների գիտությամբ և նրանց միջոցով, եթե անգամ այդ արվում է բնակիչների հաշվին: Սակայն պետք է ասել, որ հաճախ բնակարանային բաժիններն իրենց անփույթ և անհոգի վերաբերմունքով հարկադրում են բնակիչներին վերակառուցել, վերանորոգել բնակարանը:

Կյանքը ցույց է տալիս, որ մեր պայմաններում բնակիչները գերադասում են ծածկել բակի պատշգամբների կողքի բացվածքը (որը կից է սանդղավանդակի լուսամուտին) և ունենալ պատշգամբում պահարան-պահեստ: Եվ իրոք այդ անհրաժեշտություն է: Կամ այն բնակելի տներում, որոնց պատշգամբները դուրս են գալիս հյուսիսային կողմը, որտեղ արև չի լինում և ցուրտ քամի է փչում, բնակիչները գերադասում են ապակեպատել: Սա կլիմայական պայմաններից (կամ թերևս շենքի անհաջող դրվածքից) բխող հանգամանք է, հետևաբար անհրաժեշտ է հաշվի առնել նախագծերում: Կամ, ասենք առաջին հարկերի պատշգամբների ապակեպատումը, որը նույնպես կենցաղային անհրաժեշտություն է, տիպային նախագծերում դարձյալ չի նախատեսվում: Ամեն մի բնակիչ այդ անում է ըստ իր ճաշակի և հասկացողության, տարբեր ձևերով, տարբեր գույներով, իջեցնելով շենքի ընդհանուր տեսքը:

Այս փաստերը ցույց են տալիս, որ հիշյալ վերափոխումների մի մասը հետևանք է նախագծերի թերությունների, որոնք պետք է հաշվի առնել հետագայում, բնակելի տների կառուցումը նախագծելիս:

Շահումյանի բնակելի թաղամասի կառուցման փորձն իր թերություններով հանդերձ ցույց է տալիս, որ Երևանի բնակելի տարածությունների հետագա ավելացումը հիմնականում պետք է կատարվի մեծ զանգվածներով և ազատ հողամասերի վրա: Մեր կարծիքով, պետք է նաև շարունակել քանդել քաղաքի հին, կիսախարխուլ շենքերը, վերակառուցումներ կատարել կենտրոնական մասում, որի շնորհիվ ավելի կգեղեցկանա մեր մայրաքաղաքի այդ մասը: Փորձը ցույց է տալիս, որ Շահումյանի թաղամասի և քաղաքի այլ մասերում նույն տիպի շենքերի բնակելի մակերեսի արժեքի տարբերությունը մեծ չէ, չնչին խնայողություն է լինում. դրա պատճառն այն է, որ այստեղ ավելի մեծ ծախսեր են արվում բարեկարգման աշխատանքների վրա: Սակայն այստեղ



մենք չունենք հին բնակելի մակերեսի կորուստ, շինարարությունը կատարվում է ավելի արագ տեմպերով (որը շատ կարևոր է) և այստեղ կարող ենք կատարել կոմպլեքսային շինարարություն, բնակելի շենքերի հետ մեկտեղ ստեղծելով բնակիչների համար անհրաժեշտ բոլոր կենսական պայմանները, որը դժվար, իսկ երբեմն էլ անհնար է լինում կատարել քաղաքի կառուցապատված մասերում:

Շահումյանի թաղամասի մեկ երրորդն է դեռ կառուցված: Հետագա շինարարությունը կարող է կատարվել անհամեմատ ավելի արագ և հաջող՝ օգտագործելով կատարված աշխատանքի փորձը և ստեղծված հնարավորությունները: Դրա համար նախ և առաջ անհրաժեշտ է վերացնել տիպային նախագծերի թերությունները, լրացնել դրանք նոր տիպերով, որոնք պետք է ավելի հարմարեցված լինեն կառուցապատման նոր ձևերին: Բոլոր ջանքերը հարկ է գործադրվեն, որ շինարարությունն իրոք կոմպլեքսային լինի, հասարակական շենքերը կառուցվեն, բարեկարգման աշխատանքները և կանաչապատումը կատարվեն անհրաժեշտ հերթականությամբ, նորից շինարարություն չկատարվի արդեն բնակեցված մասերում:

Մեծ ջանքեր են պետք շինարարության որակը բարձրացնելու համար: Այս բնագավառում կարևոր դեր ունեն կատարելու թե՛ ճարտարապետներն ու կոնստրուկտորները, թե՛ պլանավորող մարմիններն ու արտադրական ձեռնարկությունները և թե՛, իհարկե, ամենից շատ՝ շինարարները:

Ավելորդ չենք համարում այստեղ մեկ անգամ ևս բարձրացնել նոր բնակարանային շինարարությանը համապատասխանող նոր կահույքի արտադրության հարցը: Հին կահույքը, էլեկտրական լուսավորության և այլ սարքավորումներ հարմար չեն նոր բնակարաններին: Նոր, հարմար և ավելի էժան նմուշներ արդեն կան, միայն անհրաժեշտ է արագացնել դրանց արտադրությունը:

Շահումյանի թաղամասում ապրելու են մոտ 80 հազար մարդ: Սակայն այդ շրջանը քաղաքի հիմնական արդյունաբերական և աշխատանքի այլ վայրերից շատ հեռու է: Նպատակահարմար չէ, որ մոտ 25 հազար աշխատավորներ ամեն օր այնտեղից աշխատանքի գնան քաղաքի հեռավոր մասերը, զբաղեցնելով առանց այն էլ ծանրաբեռնված տրանսպորտը: Անհրաժեշտ է այդ թաղամասի մոտ ստեղծել աշխատանքի նոր օբյեկտներ, մանավանդ կանանց համար, որպեսզի նրանք գործեն շրջանին մոտիկ վայրերում, իրենց աշխատավայրը գնան առանց մասսայական տրանսպորտից օգտվելու:

Շահումյանի թաղամասն այսօր դեռ անավարտ է ու թերի, բայց ավելի լավ հարմարություններ ունի բնակիչների համար, քան շատ թաղամասեր, իսկ երբ շինարարությունն ավարտվի և նախագիծն ամբողջապես իրականացվի, այն կարող է և պետք է դառնա մայրաքաղաքի ամենաբարեկարգ ու գեղեցիկ թաղամասերից մեկը:



Գիտությունը և կյանքը

# ԿԵՆԴԱՆԻ ԲՋՋԻ ՄՈԼԵԿՈՒԼՆԵՐԸ

Գ. Մ. ՖՐԱՆԿ

ՍՍՌՄ ԳԱ բիոֆիզիկայի ինստիտուտի
դիրեկտոր

## *ԼՈՒՍԱՄՈՒՏՆԵՐ ԴԵՊԻ ԱՆՀԱՅՏ ԱՇԽԱՐՀԸ*

Գիտության բազմաթիվ պրոբլեմների մեջ կան միանգամայն հատուկ կարգի պրոբլեմներ: Դրանց նկատմամբ կիրառելի է, թերևս, «վեհասքանչ» բառը: Այդ վեհասքանչությունը կապված է ոչ միայն այդ պրոբլեմների հիմնավորության հետ, այլև նրանց լուծման ժամանակ երևան հանվող անհայտի մասշտաբների հետ:

Դրանք բնության վեհասքանչ առեղծվածներ են և դրանցից յուրաքանչյուրի լուծումը լուսամուտ է բացում դեպի միանգամայն նոր աշխարհ:

Անվանենք օրինակի համար երեք այդպիսի առեղծված: Առաջինը՝ դա տիեզերքի առեղծվածն է: Երկրորդը՝ ատոմային միջուկի կազմության առեղծվածը: Երրորդը՝ կյանքի էության առեղծվածը:

Մի՞թե կիսով չափ չբացեցին լուսամուտը դեպի նոր աշխարհ սովետական գիտնականների հիանալի հաջողությունները հզոր տիեզերական հրթիռների ստեղծման գործում և սովետական տիեզերագնացների անմոռանալի սխրագործությունները: Տիեզերքի նվաճման գործում արդեն արվել է ամենաառաջին և ամենակարևոր քայլը, որով լիիրավ հպարտանում է մեր հայրենիքը: Արդեն մեր առջև ծագեցին առաջին անակընկալությունները, հայտնաբերվեցին երևույթներ, որոնց մասին մենք առաջ չէինք կասկածում: Իսկ դեռ որքա՜ն անակնկալություններ են մեզ սպասում, երբ սովետական մարդիկ, անկասկած, առաջինը կսկսեն անմիջականորեն հետազոտել մեր արեգակնային սիստեմի մոլորակները:

Մենք իրավունք ունենք հպարտանալու նաև մեր ֆիզիկոսների հիանալի հետազոտություններով միջուկի բնագավառում, միջուկային մասնիկների՝ նրանց ստեղծած վիթխարի արագացուցիչներով, որոնք մի քանի տարի սրանից առաջ մեզ ֆանտաստիկ կթվային: Այդ ամենը տվեց իր պտուղները:

Այժմ հերթը պատկանում է բիոլոգիային և կենսական երևույթների էության իմացությանը:

Այդ պրոբլեմների մեր բաղդատումը պատահական չէ: Նրանք բոլորն էլ վեհասքանչ են իրենց նշանակությամբ, մեր առջև երևան հանվող անհայտի մասշտաբներով: Նրանք բոլորն էլ պահանջում են մեծ ջանքեր, ամենաբարդ բազմական տեխնիկա:

## *ԹԱՓԱՆՑԵԼ ԿԵՆԴԱՆԻ ՕՐԳԱՆԻԶՄԻ ԳԱՂՏՆԻՔՆԵՐԻ ՄԵՋ՝ ՏԱՐԲԵՐ ԿՈՂՄԵՐԻՑ*

Դեռ երկու-երեք տասնամյակ սրանից առաջ դժվար էր կամուրջ գցել կենդանի օրգանիզմի կազմության մասին գիտության՝ այսպես կոչված մորֆոլոգիայի, կյանքի քիմիական հիմունքների՝ փոխանակային պրոցեսների մասին գիտության և, վերջապես, կենդանի օրգանիզմի ֆունկցիաների ուսումնասիրության՝ ֆիզիոլոգիայի միջև: Կյանքի երևույթների այդ կողմերով զբաղվում էին տարբեր պրոֆիլների մասնագետներ, այս կամ այն բնագավառում գտնված բաները քննվում և հրապարակվում էին զգալի չափով մեկուսացված ձևով: Այժմ այդ բոլոր բնագավառներում հետազոտությունները շատ սերտ կերպով մոտեցան միմյանց: Ծագեց միասնական, կոմպլեքսային մոտեցման հնարավորությունը կյանքի երևույթների էության իմացության համար: Առաջ անկախ մոտեցումների այդպիսի սերտ միահյուսումը զարգացման ներկա էտապում ամենաբնորոշն է գիտության կենդանի օրգանիզմի ուսումնասիրության մեջ: Այժմ հատկապես մոտեցել են կենդանի օրգանիզմի կազմության մասին գիտությունը և կենսական պրոցեսների բիոքիմիական հիմունքների մասին գիտությունը: Այդ մոտեցումը տեղի ունեցավ այն պատճառով, որ կենդանի օրգանիզմի կազմության հետազոտումից ավելի քան հարյուր տարի հետո սովորական լուսային միկրոսկոպի օգնությամբ բիոլոգները վերջերս «ճեղքեցին» ենթամիկրոսկոպիկ բնագավառը: Նրանք ոչ միայն նկարագրում են առանձին բջիջների և բջջի ներքին վանդակային կառուցվածքների ձևը, չափերն ու փոխհարաբերությունները միմյանց հետ, այլև տեսնում են անմիջականորեն կենդանի սիստեմի մոլեկուլյար կազմությունը: Էլեկտրոնային միկրոսկոպիայի աչքի ընկնող հաջողությունները թույլ տվեցին մորֆոլոգիային՝ մինչև այժմ նկարագրական գիտությանը, խոսելու ֆիզիկա-քիմիական և քիմիական լեզվով:

Տարբեր ուղղությունների հետազոտությունների այդպիսի միահյուսումը հնարավոր դարձավ որոշ միջանկյալ դիսցիպլինների ծագման շնորհիվ: Այդ դիսցիպլինները ծառայում են կարծես իբրև կամուրջ վանդակային, առաջներում հեռավոր բնագավառների միջև, դրանք ցեմենտում են իրար: Այդպիսի դեր, օրինակ, խաղում են երիտասարդ գիտությունները՝ բիոլոգիական ֆիզիկան, ֆիզիկական բիոքիմիան: Դրանց պետք է դասել նաև ինչ-որ չափով այդ դիսցիպլիններից պայմանականորեն անջատվող ֆիզիկաքիմիական բիոլոգիան և մոլեկուլյար բիոլոգիան:

Եթե բիոլոգիական գիտության զարգացման ավելի վաղ էտապում ֆիզիկական և ֆիզիկաքիմիական տեսանկյուններով տարվող հետազոտությունները մի տեսակ մեկուսացնում և քննարկում էին կյանքի երևույթների միայն մի կողմը, ապա ներկա մոմենտին այդ հետազոտություններն օգնում են ամբողջովին առած ուսումնասիրվող երևույթների էության մասին սինթետիկ պատկերացումների ստեղծմանը:

Դա խիստ փոխում է բիոֆիզիկական գիտության դեմքը: Մոտիկ անցյալում բիոֆիզիկայի խնդիրները սահմանափակվում էին որոշ բիոլոգիական պրոցեսների ֆիզիկական սխեմաների մշակմամբ: Միաժամանակ, նկատի ունենալով այդ պրոցեսների էության մասին եղած անբավարար գիտելիքները, ստեղծվող սխեմաները հարուստ էին արհեստական ենթադրություններով և «վերացական» էին, «կախված» ռեալ տեղի ունեցող երևույթներից:

Այժմ ենթամիկրոսկոպիկ բնագավառի, անմիջական տեսունակության և մոլեկուլյար կառուցվածքի ու մոլեկուլյար փոխարկումների քանակական ուսումնասիրության բնագավառի վիթխարի ճեղքումը ստեղծում է ժամանակակից բիոֆիզիկայի նոր հիմքը:

Այդ հիմքի օգտագործումը նոր է սկսվում: Նրա վրա շատ տեսակետներից դեռ ոչինչ չի կառուցված: Երևույթների տարբեր կողմեր գտնըվում են իմաստավորման ու քանակական անալիզի տարբեր ստադիաներում: Սակայն այն բոլոր նորը, ինչ արդեն ստացվել է այդ բնագավառում, իր արմատներով օրգանապես աճում է բիոլոգիական պրոցեսների հենց սրտում:

Այդ պլանում հետազոտությունները ամբողջ աշխարհում արտակարգ արագ են զարգանում, շոշափելով բիոլոգիայի ամենատարբեր բնագավառները և ամենաբազմազան պրոբլեմները, այդ պատճառով էլ հնարավոր չէ տալ նրանց ընդհանուր բնութագիրը:

Ուստի մենք կշոշափենք միայն որոշ օրինակներ ժամանակակից բիոֆիզիկայի ու ֆիզիկական բիոքիմիայի բնագավառից և առաջին հերթին կանգ կառնենք բջջային պրոցեսների որոշ հարցերի վրա:

## *ԿՅԱՆՔԻ ԿԵՆԴԱՆԻ «ԱՂՅՈՒՍԻԿՆԵՐԸ»*

Զարմանալի անակնկալություններ էին հետամտում բիոլոգ-գիտնականներին կենդանի բջիջ՝ թվում էր, թե շատ վաղուց մանրակրկին ուսումնասիրված կազմության մեջ:

Ինչպես հայտնի է, կենդանի բջիջը դա պարզագույն կենդանի սիստեմ է: Բարձրագույն օրգանիզմների օրգաններն ու հյուսվածքները կազմված են մեծ քանակությամբ բջիջներից, որոնք, չնայած իրենց թվացող բազմազանությանը, օժտված են որոշ, քիչ թե շատ տիպիկ կառուցվածքով, «աղյուսիկների» նման: Այդպիսի պատկերացումը, իհարկե, շատ ավելի պայմանական է, քանի որ կենդանի օրգանիզմում առանձին բջիջների միջև տեղի է ունենում ոչ միայն անընդհատ փոխազդում, այլև հենց նրանց գոյությունը զգալի չափով կախված է նրանց «հարևաններից» և ողջ օրգանիզմից ամբողջովին առած: Կենսական պրոցեսներն ընթանում են բջիջների շատ սերտ կոոպերացման շնորհիվ և առանձին բջիջներ, որոնք ունեն միայն որոշ ինքնավարություն, միևնույն ժամանակ զգում են մյուս բջիջների կարիքը սեփական ֆունկցիաների անխափան կատարման համար:

Բջիջները, որպես կանոն, տեսանելի չեն հասարակ աչքով և հայտնագործվեցին միկրոսկոպի գյուտի ու բիոլոգիայում այն կիրառելու շնորհիվ: Նրանց չափերն են մի քանի հազարերորդական միլիմետրից մինչև մի քանի հարյուրերորդական միլիմետրը:

Սակայն «պարզագույն», կամ, ինչպես երբեմն

ասում են, «տարրական» բառը չի հանդիսանում կենդանի բջջի թեկուզ փոքր ինչ ճիշտ բնութագիրը: Բջիջն արտակարգ բարդ է: Հաշված է, որ նրա մեջ պարունակվող կանսական քիմիական նյութերի քանակությունը կարող է գերազանցել հարյուր հազարից: Թերևս չկա քիմիական ռեակտիվների ոչ մի պահեստ, որն ունենար զանազան նյութերի այնպիսի հարուստ ասորտիմենտ, ինչպիսին որ պարունակվում է միկրոսկոպիկ բջջում: Բայց ամենագլխավորն այն է, որ բջիջը պահեստ չէ: Նրա մեջ նյութերը գտնվում են շարժման մեջ, մասնակցում են հարյուրավոր ու հազարավոր քիմիական ռեակցիաների, անընդհատ տրոհվում են, վերականգնըվում ու նորից ստեղծվում, վերարտադրվում ու կուտակվում: Նյութերի փոխանակությունը կյանքի պահպանման ու զարգացման հիմքն է:

Փոխանակային պրոցեսները կառավարվում են հարյուրավոր ու հազարավոր ֆերմենտներով և կատալիզատորներով: Այդ պրոցեսների թիվն այնքան մեծ է, նրանց կայունությունն ու ինքնականոնավորելիությունն այնպես բարձր են, որ միկրոսկոպիկ բջիջը իր բարդությամբ շատ կարգերով գերազանցում է յուրաքանչյուր ավտոմատացված քիմիական ձեռնարկությունից: Բայց, որ ամենագլխավորն է, այդ պրոցեսները բջջում կատարվում են շատ ավելի մեծ արագությամբ, քան առաջներում ենթադրվում էր:

Նշանակիր ատոմների մեթոդը ցույց տվեց, որ կյանքի հիմքում ընկած է նյութի բազմապատիկ շրջանառելիությունը՝ փոխանակային պրոցեսների իսկական «քիմիական մրրիկը»:

•

## *ՆՇԱՆԱԿԻՐ ԱՏՈՄՆԵՐԸ ՊԱՏՄՈՒՄ ԵՆ ԲՋՋԻ ՄԱՍԻՆ*

Առաջներում կիրառվող քիմիական անալիզի կլասիկ եղանակները, որպես կանոն, պահանջում էին ուսումնասիրվող նյութի քայքայում: Նրանք թույլ էին տալիս ասել, թե հետազոտող ինչպիսի քիմիական բաղադրիչ մասերից է կազմված հյուսվածքը: Կարելի էր նաև հաշվի առնել, թե ինչպիսին է օրգանիզմի միջոցով նյութի կլանման ու անջատման բալանսը: Միայն արհեստական բեռնավորումների ստեղծումը, օրինակ՝ օրգանիզմի մեջ մտցվող շաքարի կոնցենտրացիայի բարձրացումը կամ սպիտակուցային նյութերի կոնցենտրացիայի միանվագ բարձրացումը հնարավորություն էր տալիս դիտել ներքին քիմիական հավասարակշռության և «հավասարեցման» ու նորմալացման արագությունների փոփոխումը: Բայց սովորական պայմաններում նույն այդ շաքարի, սպիտակուցի կամ նրանց բաղադրիչների՝ պոլիպեպտիդների ու ամինաթթուների մոլեկուլները անհուսալիորեն կորչում էին նույնանուն մոլեկուլների մեջ, որոնցից կազմված է կենդանի օրգանիզմը: Սկզբունքորեն անլուծելի էր այն հարցը, թե սննդի հետ տվյալ պահին ստացված շաքարի կամ սպիտակուցի մոլեկուլը որքան ժամանակ կմնա օրգանիզմում և առաջին հերթին այն դեպի ուր կուղղվի: Գոյություն ունեցող քիմիական հավասարակշռության դեպքում, երբ ընթացող պրոցեսները զգալի չափով քողարկվում են նույնանուն նյութի հանդիպական տեղափոխությամբ, որպես կանոն, դժվար էր, իսկ երբեմն էլ բոլորովին անհնարին էր պատասխանել այն հարցին, թե ինչպիսին են կատարվող երևույթների իսկական արագությունները, օրգանիզմի ներսում նյութի տեղաշարժման արագությունը:

Սկզբունքային թռիչք կատարվեց միայն նշանակիր ատոմների՝ ռադիոակտիվ իզոտոպների օգտագործման շնորհիվ:

Դա ֆիզիկական բիոքիմիայի ռելսերի վրա բիոքիմիայի՝ նյութերի փոխանակության մասին գիտության անցնելու, այսինքն փոխանակային պրոցեսների ուսումնասիրման ֆիզիկական մեթոդներն օգտագործելու լավագույն օրինակներից մեկն է:

Ինչպես հայտնի է, ժամանակակից միջուկային տեխնիկայի օգնությամբ կարելի է ստանալ Մենդելեևի աղյուսակի գործնականորեն ամեն մի էլեմենտի ռադիոակտիվ «վարիանտը»: Այդ էլեմենտը պահպանում է իր բոլոր քիմիական հատկությունները, բայց օժտված է ռադիոակտիվ ճառագայթման լրացուցիչ ընդունակությամբ: Այդ ճառագայթումը թույլ է տալիս հայտնաբերել ածխածնի, կալիումի, նատրիումի, ֆոսֆատի, կալցիումի և այլնի անկայուն իզոտոպները, որոնք ներկա են անհետացող, որևէ քիմիական անալիզի համար անմատչելի փոքր քանակություններում:

Ռադիոակտիվ մոլեկուլը կարող է կանսական եղանակներով մտցվել ամեն մի բարդության մոլեկուլի մեջ, օրինակ՝ շաքարի, սպիտակուցի, նուկլեինաթթվի և այլնի մոլեկուլի մեջ: Այդպիսի մոլեկուլ կարող է անսխալաբար գտնվել շարժվելու, տարբեր օրգաններում ու հյուսվածքներում կուտակվելու, տրոհվելու ու օրգանիզմից անջատվելու նրա ողջ ճանապարհին: Նյութերի փոխանակությունը դարձավ կարծես աչքով տեսանելի իզոտոպներով նշանակիր օրգանական մոլեկուլների ռադիոակտիվ ճառագայթման մեջ: Հետազոտության համար մատչելի դարձան նյութերի այն շարժման արագությունները, որ տեղի է ունենում բջիջների և հյուսվածքների լրիվ հավասարակշռության ու անփոփոխ քիմիական բաղադրության ֆոնի վրա:

Եվ ահա այստեղ, ինչպես արդեն ասվել է վերևում, հայտնաբերվեց, որ քիմիական նյութերի



տեղափոխությունը օրգանիզմում և փոխազդումը առանձին բջիջների միջև կատարվում են շատ ավելի մեծ արագություններով, քան ենթադրվում էր: Բջիջներն ու հյուսվածքները շատ անգամ փոխանակում են միևնույն նյութը: Որոշ ամինաթթուներ, օրինակ, գտնվելով մեկ բջջի սպիտակուցային մոլեկուլի կազմում, այդ մոլեկուլի տրոհումից հետո «տեղափոխվում են» և օգտագործվում սպիտակուցի կազմության համար մյուս բջիջում, իսկ երբեմն էլ մյուս հյուսվածքներում:

Եթե առաջ քիմիան ու բիոքիմիան ուսումնասիրում էին մեծ չափով քիմիական բաղադրությունը, ապա իզոտոպային ինդիկատորների կուտ ֆիզիկական մեթոդի կիրառումը, մեր կողմից ֆիզիկական բիոքիմիա անվանած գիտության բնագավառներից մեկի զարգացումը թույլ տվին անձամբ տեսնել պրոցեսները շարժման անընդհատ կատարվող փոխարկումներում:

Եթե միկրոսկոպի գյուտի շնորհիվ մեր առջև բացվեց բջիջների առաջ անտեսանելի աշխարհը, ապա միջուկային ֆիզիկայի հաջողությունները և բիոլոգիան վերազինող իզոտոպային ինդիկատորների երևան գալը հայտնագործեցին շարժվող քիմիական նյութերի աշխարհը, որ ընկած է կենսական պրոցեսների հիմքում: Բայց, որ ամենագլխավորն է, հիմքեր ստեղծվեց երևույթների միանգամայն նոր, քանակական քննարկման համար, պրոցեսների կինետիկայի ուսումնասիրման համար:

Փոխանակության միահյուսվող պրոցեսների ամբողջ «անսամբլներ» մատչելի դարձան անալիզի համար:

## *ՄՈԼԵԿՈՒԼՅԱՐ ԿԱԶՄՈՒԹՅՈՒՆԸ ՄԻԿՐՈՍԿՈՊԻ ՏԱԿ*

Շատ տարիներ բջջի կազմությունը համեմատաբար պարզ էր պատկերացվում: Մենք գիտեինք, որ գոյություն ունեն պրոտոպլազմա և նրա մեջ պարունակվող մանրագույն հատիկներ: Պրոտոպլազման, որն արդարացիորեն համարվում էր շատ կենսական հատկությունների կրողը, թվում էր փոքր-ինչ պղտորավուն, շատ թե քիչ մածուցիկ կոլոիդ: Բայց ահա էլեկտրոնային միկրոսկոպիայի հայտնվելու շնորհիվ ավելի լայնորեն բացվեց լուսամուտը դեպի բջջի ներքին անտեսանելի աշխարհը, և այն, ինչ պարզվեց գիտնականների աչքերի առջև, ջրջեց տասնամյակների ընթացքում կազմավորված պատկերացումները:

Էլեկտրոնային միկրոսկոպիայի ֆլորեսցենցող էկրանի վրա կամ էլեկտրոնա-միկրոսկոպիկ լուսանկարման ժամանակ ստացվող պատկերները տալիս են սովորական լուսային միկրոսկոպին մատչելի սահմաններից շատ հեռու մանրամասնություններ: Օգտակար խոշորացումը հնարավոր դարձավ ոչ թե 2000—2500 անգամ, այլ միլիոն և ավելի անգամ: Դա թույլ տվեց տեսնել ոչ միայն ներբջջային կառուցվածքները, այլև առանձին խոշոր մոլեկուլները, այսպես ասած, կենդանի բջջի մոլեկուլյար կազմությունը:

Շատ հետաքրքիր է, որ էլեկտրոնային օպտիկայի ու էլեկտրոնային միկրոսկոպների գյուտը միանգամից չտվեց իր պտուղները բիոլոգիայում: Սովորական միկրոսկոպիկ հետազոտությունների ժամանակ մենք գործ ունենք կամ թափանցիկ նուրբ օբյեկտների հետ կամ մի քանի միկրոն հաստության կտրվածքների հետ: Բայց այդպիսի կտրվածքները անթափանցիկ էին էլեկտրոնային փնջի համար: Պահանջվեց մի քանի տարի, որպեսզի երևան գա արդեն ոչ թե նուրբ կտրման, ինչպես սովորական միկրոսկոպիայի համար, այլ գերնուրբ կտրման միանգամայն նոր տեխնիկա: Հետազոտող օբյեկտները սովորեցին կտրել մինչև 0,01 միկրոն ֆանտաստիկ նուրբ շերտերով, այսինքն՝ առնվազն հարյուր անգամ ավելի բարակ, քան առաջ: Գերնուրբ կտրման յուրացումը, որ 15—20 տարի սրանից առաջ միանգամայն ֆանտաստիկ խնդիր կլիներ, պայմանավորեց էլեկտրոնային միկրոսկոպիայի «ոսկե դարի» գալուստը:

Մինչև միլիոն անգամ և ավելի մեծացնելիս կենդանի բջիջներում երևացին կառուցվածքներ, որոնց գոյության մասին մենք առաջ չէինք կասկածում:

Ամենահետաքրքիրը բազմաթիվ թիթեղիկների՝ մեմբրանների հայտնաբերումն էր, որոնք սովորաբար կազմված են մի սեռի մոլեկուլների երկու շերտից՝ մյուս սեռի մոլեկուլների «լցվածքի» մեկ կամ երկու շերտերով: Այդպիսի մոլեկուլյար կոմպլեքսները բջջի այն ամենապատասխանատու տեղամասերի ամենաբնորոշ առանձնահատկությունն են, որոնց մեջ ընթանում են բարդ, ճշտորոշ կարգավորվող պրոցեսներ:

«Բազմաթիթեղիկային» տիպի կանոնավորված կազմության մասին առաջին ենթադրությունն արվել է դեռ մինչև էլեկտրոնային միկրոսկոպիայի հայտնվելը՝ ռենտգենյան ճառագայթների, այսպես կոչված, դիֆրակցիայի հիման վրա: Նրանց ցրումը տարածության մեջ, երբ փունջը բաց էր թողնվում նյարդային մանրաթելի թաղանթով, անկանոն չեղավ, այլ տվեց պարզորոշ արտահայտված մաքսիմումներ որոշակի անկյունների տակ, վկայելով յուրահատուկ բնական վանդակի առկայության մասին:

Ամերիկացի հետազոտողներ Ֆ. Շմիդտը և Ա. Բիրը ենթադրեցին, որ այդ հետևանք է այն մոլեկուլյար համակենտրոն շերտերի շատ կանոնավոր ու ճշտագույն կազմության, որոնք

պատում են նյարդային թաղանթը նուրբ բազմաշերտ մեկուսանյութի սկզբունքով: Սակայն այդպիսի ենթադրությունը, որ հիմնված է անուղղակի տվյալների վրա, մի առանձին տպավորություն չգործեց, մինչև որ էլեկտրոնային միկրոսկոպի թույլատրող բարձր ունակության և օգտակար մեծ խոշորացումների շնորհիվ մենք կարողացանք տեսնել այդ խիստ զարմանալի կազմությունը: Այդ առաջին անգամ հաջողվեց էլեկտրոնային միկրոսկոպիայի գծով հայտնի շվեդական մասնագետ Ֆ. Շեստրանդին:

Սկզբում դա շատ բարդ տեխնիկա էր: Եվ Շեստրանդի թողած միակ նկարը մի քանի տարի շրջում էր մի ժուռնալից մյուսը, վկայելով բնության՝ առաջներում անտեսանելի գաղտնիքների մեջ թափանցելու մասին:

Նկարում մենք տալիս ենք նյարդային մանրաթելի թաղանթի այդպիսի բազմաշերտ կազմության բուն օրինակը. վերջերս մեր լաբորատորիայում այդ թաղանթը մանրամասն ուսումնասիրել է գիտական աշխատակից Վ. Լ. Բորովյագինը: Պարզորոշ երևում են, թե ինչպես մուգ շերտերը հերթով փոխվում են լուսավոր տարածություններով: Հիմք կա ենթադրելու, որ մուգ շերտերը դրանք սպիտակուցային մոլեկուլների շերտեր են, նրանք հերթով փոխվում են լիպիդային, այսինքն՝ ճարպային մոլեկուլների լուսավոր կրկնակի շերտերով, որոնք կարծես ցցապատի պես ուղղահայաց են մուգ շերտերին:

Հետաքրքրական է, որ շերտերը չեն նախորդում օրգանիզմի զարգացման վաղ ստադիաներում: Նյարդային մանրաթելի պատման պրոցեսը ընթանում է ոչ միայն սաղմնային զարգացման ժամանակ, այլ ինչ-որ չափով շարունակվում է նաև աճող և նույնիսկ չափահաս օրգանիզմների մոտ: Թե դա ինչպես է կատարվում, այժմ մեզ մոտ՝ լաբորատորիայում, մանրամասն հետազոտվում է:

Ինքնըստինքյան հասկանալի է, որ համակենտրոն շերտերի այդ բարձր կանոնավորության հայտնաբերումը և մեր կատարած առաջին քայլերը, որպեսզի հասկանանք, թե ինչպես է գոյանում այդ թաղանթը, ավելի շատ չլուծված հարցեր են դնում, քան բացատրում այն, ինչ մենք տեսնում ենք: Այժմ խնդիրը կայանում է նրանում, որպեսզի ավելի մոտենանք այդպիսի զարմանալի ենթամիկրոճարտարապետական գոյացման օրինաչափությունների ըմբռնողությանը:

Հետաքրքիր և հուսիչ պրոբլեմներ են ծագում այդ պրոցեսների հետագա ուսումնասիրության ժամանակ, որն ավելի ու ավելի է մեզ մոտեցնում զարմանալի միկրոճարտարապետի՝ բջջի աշխատանքի բուն էությանը:

Այդ կառուցվածքների բննարկման ժամանակ շատ ավելի կոնկրետ է դառնում նյարդային մանրաթելով նյարդային իմպուլսների անցկացման էության բացահայտման բիոֆիզիկական պրոբլեմը: «Մերկ» մանրաթելը, որը դեռ չի պատվել բազմաշերտ թաղանթով, շատ դանդաղ է անցկացնում իմպուլսները: Պատմանը զուգընթաց նրանց արագությունը մեծանում է մի քանի սանտիմետրից մինչև մի քանի մետր մեկ վայրկյանում: Սկզբնական ենթադրությունը այն մասին, որ թաղանթը հանդիսանում է մեկուսիչ և յուրատեսակ բազմաշերտ կոնդենսատոր, բարդանում է ակտիվ քիմիական պրոցեսներով, որոնք ընթանում են բիոլոգիապես ակտիվ նյութեր պարունակող այդ կառուցվածքներում: Այժմ խորապես հետազոտվում են նրանց դերն ու նշանակությունը:

## *ԲՋՋԻ ՔԻՄԻԱԿԱՆ ՖԱԲՐԻԿԱՆԵՐԸ*

Լուսային միկրոսկոպում պրոտոպլազմայի տեսանելի մանրիկ հատիկները, այսպես կոչված՝ միտոխոնդրիաները, ինչպես այժմ պարզվել է, հանդիսանում են յուրատեսակ բջջային քիմիական ֆաբրիկաներ: Էլեկտրոնային միկրոսկոպիայի հսկայական խոշորացումները թույլ տվին տեսնել, որ միտոխոնդրիաները բաղկացած են հենց բազմաթիթեղիկային կառուցվածքներից, որոնց մասին վերևում ասվել է: Միտոխոնդրիաներում բարդ քիմիական գործունեությունը կարծես բաժանված է «դարակների», որոնք նրանց լցնում են:

Սկզբում միտոխոնդրիաների կազմությունը նույնպես պարզ չէր: Թվում էր, թե նրանց մարմինը պատված է կրկնակի թաղանթով, ավելի խիտ շերտերի միջև եղած տարածությամբ: Ներսում եռաշերտ դարակները պատկերացվում էին անկախ: Հետագայում պարզվեց, որ միտոխոնդրիայի մարմնում գտնվող դարակները հանդիսանում են կարծես ներքին մեմբրանի շիվերը: Այլ խոսքով, միտոխոնդրիաներում կա մի կողմից, «հարկերի» բաժանում, իսկ մյուս կողմից, հաղորդակցության որոշ փակ ներքին սիստեմ այդ «հարկերի» միջև:

Միտոխոնդրիաների կառուցվածքը ամենևին էլ կայուն չէ: Գոյություն ունի վերջնականապես չստուգված մի ենթադրություն ևս, որ նրանց կյանքի տևողությունը ընդամենը մոտ չորս օր է: Նրանք անընդհատ ստեղծվում են և նորից տրոհվում, փոխում իրենց ներքին կառուցվածքը: Կենդանի բջջի այդ էներգետիկ ֆաբրիկաները ընդունակ են ձգվել, կլորացվել և ընդհանրապես անընդհատ փոխել իրենց ձևն ու չափերը: Նրանց վարքի իսկական պատկերը դեռ բոլորովին պարզ չէ: Էլեկտրոնային միկրոսկոպի տակ մենք տեսնում ենք միայն անշարժացած պատկերներ,



որոնք դուրս են եկել կյանքի պրոցեսից: Մեր ձեռքում գտնվում են կարծես կինոժապավենի մի քանի առանձին, միմյանցից հեռու կանգնած կադրեր: Այդ կադրերի միջոցով մենք կարող ենք տեսնել, որ միտոխոնդրիաները փոփոխվում են ժամանակի ընթացքում, բայց էկրանի վրա ամբողջ ժապավենը «պտտեցնել», տեսնել պրոցեսի իսկական դինամիկան մենք դեռ չենք կարող, այլ միայն կռահում ենք դրա մասին:

Լավ հայտնի է, որ միտոխոնդրիաներում տեղի է ունենում քիմիական պրոցեսների շատ բարդ ու հաջորդական շղթա: Կարելի է միտոխոնդրիաները առանձնացնել, բաժանել կտորների և հետազոտել նրանց ավելի ու ավելի մանր բեկորների քիմիական վարքը: Եթե պահպանված է հատիկի ամբողջությունը, ընթանում է քիմիական փոխարկումների ողջ կոնվեյերը: Որքան շատ ենք մենք մանրացնում կառուցվածքը, այնքան աղքատ ու կարճ են դառնում քիմիական պրոցեսների շղթաները և, վերջապես, մնում են միայն ֆերմենտային կատալիզի առանձին օղակները, որոնք դիտվում էին նաև առաջներում, երբ մենք անջատում էինք առանձին ֆերմենտներ զուտ քիմիապես, ողջ բջջի լրիվ քայքայմամբ: Այսպիսով, պրոցեսների ողջ անսամբլի կազմակերպված և, ընդգծում ենք, կառավարվող ընթացքի համար բջջի էներգետիկ ֆաբրիկայում կարևոր է պահպանել ողջ միտոխոնդրիան՝ բազմաթիթեղիկային, բազմակամերային կառուցվածքը՝ հաղորդակցվող հատվածներով:

## *ՖՈՏՈՍԻՆԹԵԶ ՄՈԼԵԿՈՒԼՆԵՐԻ ՄԱԿԱՐԴԱԿԻ ՎՐԱ*

Կենդանի բջիջում քիմիական պրոցեսների բարդ կազմակերպությունը անխուսափելիորեն պահանջում է բազմաթիթեղավորություն: Այն տեսնելով, մենք կարծես շփվում ենք մեծ արագությամբ և մեծ կարգով ընթացող բազմաստիճան—«բազմակասկադ» քիմիական պրոցեսների հիանալի կազմակերպվածության գաղտնիքների հետ: Դա դեռ ավելի մեծ չափով, քան միտոխոնդրիաներին, վերաբերում է կենդանի բնության մեջ տեղի ունեցող ամենահիմնական պրոցեսներից մեկին՝ ֆոտոսինթեզին, անօրգանական նյութերից օրգանական նյութերի ստեղծմանը:

Բույսերի կանաչ տերևի բջիջներում գտնվող քլորոպլաստները, որտեղ իրագործվում է այդ պրոցեսը արեգակնային լույսի էներգիայի օգտագործմամբ, գրեթե ամբողջովին կազմված են այդպիսի հազարավոր եռաշերտ թիթեղիկներից:

Այստեղ նույնպես հաջորդվում են մուգ ու լուսավոր շերտերը, և այդ շերտերը նույնպես ոչ թե պարզապես թիթեղիկների կիտուկներ են, այլ կարծես փակ, հարթ անոթիկներ՝ արտաքին մեմբրանների շիվեր: Ոչ մի կասկածի ենթակա չէ, որ ճյուղավորված հսկայական ներքին մակերևույթների և մի թիթեղիկից մյուսը հատկությունների թռիչքների առկայությունը այդ մակերևույթների վրա օժանդակում է ֆերմենտատիվ պրոցեսների ընթացքին և կլանվող արեգակնային էներգիայի այն կուտակմանն ու հետագա փոխարկմանը, որ կազմում է ֆոտոսինթեզի գաղտնիքները: Եվ այստեղ, տեսնելով այդ մոլեկուլյար կազմակերպությունը, մենք անխուսափելիորեն կապում ենք նրա հետ կենդանի բնության կարևորագույն պրոցեսներից մեկի էությունը, որի բացահայտումը բիոքիմիայի ու բիոֆիզիկայի համատեղ խնդիրն է:

Այդ կառուցվածքը ևս լիովին կոշտ չէ: Նա հարմարվում է պայմաններին, նրա մեծ թե փոքր էվոլյուցիան տեղի է ունենում նայած ֆունկցիաներին. դա լավ կարելի է ցույց տալ, աճեցնելով բույսերը լուսավորության տարբեր պայմաններում, այսինքն ֆոտոսինթետիկ ապարատի գործունեության տարբեր պայմաններում:

**(Շարունակությունը հաջորդ համարում):**



# ԳՐԱԽՈՍՈՒԹՅՈՒՆ ԵՎ ՔՆՆԱԴԱՏՈՒԹՅՈՒՆ

## ԱԹԵԻՍՏԻ ԳՐԱԴԱՐԱՆ ՄԱՏԵՆԱՇԱՐԻ ՄԱՍԻՆ

Ռեսպուբլիկայի քաղաքական և գիտական գիտելիքների տարածման ընկերությունն ընթացիկ տարվա առաջին չորս ամսում Աթեիստի գրադարան մատենաշարով հրապարակել է մի քանի գրքույկներ, որոնք իրենց թեմաներով՝ «Պատկերացում հոգու մասին (Ա. Ա. Կարապետյան), ժամանակակից բիոլոգիան և կրոնը (Հ. Գ. Բատիկյան), Կրոնական հավատքի առաջացումը (Հ. Ա. Աղայան), Արդյոք գոյություն ունի՞ ճակատագիր (Ա. Ա. Օդաբաշյան), Կրոնը և կինը (Տ. Ս. Մարգարյան), Մարքսիզմ-լենինիզմը կրոնի մասին (Թ. Ս. Իսայան), բավական բազմազան են և վատ չեն ընտրված։ Վերոհիշյալ բրոշյուրները, դատելով նրանց բովանդակությունից, կարծյոք նախատեսված են աթեիզմի պրոպագանդիստների համար։ Անշուշտ նրանց համար ևս պետք է հրապարակել մի շարք գրքեր, քանի որ պրոպագանդիստների պատրաստականությունից ու հմտությունից է կախված գիտա-աթեիստական պայքարի հաջողությունը։ Սակայն ընկերության գիտա-աթեիստական դաստիարակության օբյեկտը հավատացյալներն են, որոնց համար էլ պետք է ընտրվի հատուկ թեմատիկա, դյուրըմբռնելի, մատչելի ձևով պետք է շարադրվեն նրանց հուզող հարցերը։

Այս առումով հրապարակված բրոշյուրներն ընթերցողներին չեն բավարարում։ Դժբախտաբար, բրոշյուրների նշանակալի մասը տառապում է «ակադեմիզմով», բացակայում են կենդանի լեզուն և հյութեղ ոճը, ակներև չափով զերծ է ակտուալությունից։ Ավելին, հեղինակներից ոմանք իրենց շարադրանքում գրեթե չեն արձագանքում հակակրոնական պրոպագանդայի առջև ծառացած հրատապ հարցերին, բրոշյուրներում հայ ժողովրդի կյանքից առնված փաստերը սակավ են, իսկ մի քանիսն էլ սահմանափակվում են սոսկ պատմական հանգամանքների վկայակոչումով։

Այս տեսակետից բնորոշ է Կրոնը և կինը գրքույկը։ Հեղինակն իր շարադրանքում ամենևին նկատի չունի սոցիալիստական հասարակարգում ապրող հայ կնոջը։ Առհասարակ ժամանակակից սովետական հավատացյալ կինը մնացել է հեղինակի տեսադաշտից դուրս։ Միաժամանակ նա անտեսել է այն ճշմարտությունը, որ մեր իրականության մեջ դեռևս կան հավատացյալ կանայք (հասակավոր և ո՛չ միայն հասակավոր), գրբացներ, հավատացյալների կրոնական զգացմունքներն անազնիվ կերպով չարաշահողներ։ Մինչդեռ հեղինակը երկար ու բարակ խոսում է Ադամի ու Եվայի կրոնական առասպելի, կնոջ ու տղամարդու անհավասարության վերաբերյալ եղած հայացքի մասին։

Ինքնին հասկանալի է, որ այս չպետք է կազմեր բրոշյուրի առանցքը։ Չպետք է մոռանալ, որ այժմ եկեղեցին ևս կնոջ և տղամարդու անհավասարության մասին առաջվա պես չի դատում։ Կրոններն ու եկեղեցին ճկուն են՝ ժամանակի ոգուն հարմարվելու և նոր ձևերով ու մեթոդներով իրենց հաշիշը հրամցնելու մեջ։ Հազիվ թե հավատացյալ հայ կինն այժմ ամուսնու նկատմամբ իր «անհավասարությունը» հիմնավորի ավետարանական առասպելներով։

Հեղինակը գրում է. «Կրոնի սպասարկուներն ու շահագործողները այսօր էլ ձգտում են հավատացյալ մայրերի միջոցով թույլ չտալ մատաղ սերնդին բռնելու գիտության, լուսավորության ու տեխնիկայի տիրապետման ուղին, ազնիվ ու ստեղծագործական աշխատանքով ապրելու ուղին» (էջ 13)։ Հավանաբար հեղինակը նկատի ունի այն ռեակցիոն աղանդներին, որոնք այդպես են վարվում։ Բայց նման ընդհանրացումը կարոտ է լուրջ փաստարկումների։ Հեղինակը նմանապես ճիշտ չէ, երբ միայն քրիստոնեական կրոնին է վերագրում կնոջ «անմաքուր» էակ լինելու ըմբռնումը։

Անշուշտ, գրքույկը զերծ չէ դրական արժանիքներից։ Բայց նրա էջերում կան և անհաջող ձևակերպումներ, լեզվական սխալներ և պրիմիտիվ դատողություններ։ Այսպես, օրինակ, մեր կարծիքով չպետք էր ասել՝ քրիստոնեական «Աստվածաշունչ», ծննդաբերող կույս, վշտալի ցավակցություններ պատճառելով մարդկանց, ցածրացնում նրա արժանապատվությունը, աստվածաբանական առասպելականություն, հաղորդ տվող քահանա, գողտրիկ վախով նայել, ընտանիքը բուրում է և այլն։

Ուրախալի է, որ ռեսպուբլիկայի ճանաչված գիտնականները վերջերս հանրամատչելի բրոշյուրներով հանդես են գալիս լայն ընթերցողների առջև։ Հրապարակված բրոշյուրների թվում է նաև կենսաբանական գիտությունների դոկտոր Հ. Բատիկյանի գրքույկը։ Հայտնի է, որ հատկապես վերջին հարյուրամյակի ընթացքում գաղափարական ուժեղ պայքար է մղվել և մղվում է աշխարհայացքային կարևոր նշանակություն ունեցող այնպիսի հարցերի շուրջ, ինչպիսիք են՝ կենդանի նյութի առաջացումը և բուսական ու կենդանական աշխարհի էվոլյուցիան։ Ժամանակակից կենսաբանությունն իր տրամադրության տակ ունի շատ փաստական տվյալներ, որոնք հաստատում են աշխարհի մատերիալիստական ըմբռնումը։ Հեղինակին հաջողվել է ագրոբիոլոգիայի և միչուրինյան տեսության մի քանի փաստարկումներով ցույց տալ կրոնի ռեակցիոն էությունը։

Սակայն պետք է նշել, որ գրքույկում ընթերցողը չի գտնում արդի կենսաբանության մեծ նվաճումների գեթ սեղմ շարադրանքը և այդտեղից բխող կրոնական հավատալիքների սնանկության լուրջ քննադատությունը։ Շատ լավ կլիներ, եթե հարգելի գիտնականը կես մամուլի սահմաններում հանրամատչելիորեն անդրադառնար օրգանական նյութերի և նրանց բարձր մոլեկուլյար պոլիմերների վերածվելու ընթացքին, ցույց տար կյանքի պարզագույն ձևերից ավելի բարդերի առաջացումը, կենդանի նյութի ծագումը անկենդանից, սպիտակուցների բիոլոգիական սինթեզը, սպիտակուցը որպես կյանքի բոլոր պրոցեսների հիմք և կենդանի նյութի կարևորագույն բաղկացուցիչ մաս. ահա հարցեր, որոնց լուսաբանմանը մեծապես կարոտ է մասսայական ընթերցողը։ Հարցեր, որոնց գիտական շարադրանքը լրջորեն կօգներ հավատացյալներին՝ երես թեքելու կրոնից։ Մինչդեռ հեղինակն իր սակավ էջերից մեկում շարադրում է արդի ֆիզիկայի, մյուսում՝ ֆիզիոլոգիայի այլ հարցեր։ Դեռ ավելին, մեկ էջ ևս հատկացված է նոր սերնդի դաստիարակության պրոբլեմներին։

Հեղինակը պետք է հաշվի առներ այն, որ այժմ քրիստոնեական կրոնի բազմաթիվ սպասավորներ ջանում են հարմարվել գիտության առաջընթացին, ճգնելով կրոնական դոգմաները համակերպել այդ նվաճումներին։ Սխալ կլիներ ենթադրել, թե բոլոր եկեղեցականներն առաջվա նման, առհասարակ, բացեիբաց ժխտում են կենսաբանության տվյալները կյանքի ծագման ու զարգացման վերաբերյալ։ Այս դեպքում տեղի ունի գիտության ավելի նուրբ ու քողարկված կեղծում։

Չնայած բրոշյուրի դրական կողմերին, կան լեզվական ու ոճական անհարթություններ և ոչ հստակ ձևակերպումներ։ Օրինակ, հեղինակը գրում է, թե կրոնական ուժերը մարդուն «խանգարում են իրականացնել իր բնական ցանկությունները ու իղձերը»։ Ի՞նչ հասկանալ բնական ցանկություններ ասելով՝ ֆիզիոլոգիական, թե՞ սոցիալական կարգի ցանկություններ. հեղինակը ո՞րը նկատի ունի։ Ընթերցողին դժվար է կռահել։ Դժվար թե հասկանալի լինի հեղինակի այն պնդումը, թե «ուր գիտությունն է իշխում, չեն կարող լինել սնոտիապաշտ մարդիկ, չեն կարող լինել կրոնական կեղծ պատկերացումներ» (էջ 4)։ Իրականում, երկար ժամանակ սնոտիապաշտ և կեղծ պատկերացումները կարող են մնալ և մնում են նույնիսկ այն դեպքում, երբ գիտությունն է իշխում։ Չէ՞ որ հեղինակն իր գրքույկի 16-րդ էջում նշում է, որ «Անվստահությունը դեպի իր ուժերը՝ բարենպաստ պայմաններ է ստեղծում նախապաշարմունքների համար, մանավանդ դպրոցական կամ բուհական քննությունների ժամանակ» (էջ 16)։ Նախապաշարմունքների այդ «աղբյուրը» երեք տող հետո հեղինակը ցամաքեցնում է, գրելով՝ «Եվ այսօր, երբ մարդը բնության տերն է, ինչ խոսք կարող է լինել նախապաշարմունքների, սնոտիապաշտությունների, կրոնական առասպելների մասին» (էջ 16)։ Ամբողջ խնդիրն այն է, որ դրանք գոյություն ունեն կողք-կողքի, որից էլ բխում է կրոնի դեմ պայքարելու անհրաժեշտությունը։

Հանրամատչելի գրքույկում դժվար հասկանալի է հետևյալ նախադասությունը. «Այժմ ատոմային միջուկի և նրա կառուցվածքի պրոբլեմը գտնվում է մարդկային մտքի հարձակման առաջավոր դիրքերում՝ բնության գաղտնի ուժերի դեմ պայքարելու ընթացքում» (էջ 7)։

Իր գրքույկում Ա. Կարապետյանը նշում է, որ նախնադարյան մարդու պատկերացմամբ հոգին նյութի որոշ տեսակն է, կամ կենդանի մարմնի որևէ մասը։ Վկայակոչում է ավստրալիացիներին, սեմիտացիներին (կարդալ սեմիտներին), որոնց համոզմամբ երիկամը տոգորված է կենսունակության ուժով, ուստի նրա մի կտորը կրել են որպես թալիսման։ Առարկություն չունենք, գուցե և այդպես է։ Սակայն, մեր կարծի-

ստրկատիրական հասարակարգի քայքայման և ֆեոդալիզմի ձևավորման «արագացման» մեջ քրիստոնեության խաղացած ակտիվ դերին, չի համապատասխանում իրականությանը, քանի որ քրիստոնեությունն ինքը, ինչպես գրել է Էնգելսը, հանդիսանում էր «միակ ուժը, որը դիմադրում էր քայքայման այդ պրոցեսին, որովհետև նա ինքը նրա սեփական անհրաժեշտ արդյունքն էր» (К. Маркс и Ф. Энгельс, соч., т. VII, стр. ч. II, стр. 414)։ Կ. Մարքսը Ֆր. Դաումերի Նոր դարի կրոնը գրքի գրախոսականում նշում է, որ քրիստոնեությունը հանդիսացել է անտիկ «համաշխարհային կարգերի» կործանման «պարզ արտահայտությունը», որ «ոչ թե նոր, համաշխարհային կարգերն են հարմարվել քրիստոնեությանը, այլ, ընդհակառակը, քրիստոնեությունն է փոխվել այդ «համաշխարհային կարգերի» յուրաքանչյուր նոր փուլի համեմատ» (К. Маркс и Ф. Энгельс, соч., т. VII, стр. 211)։ «Այն չափով, ինչ չափով ֆեոդալիզմն էր զարգանում,— գրում է Էնգելսը,— քրիստոնեությունն ընդունում էր նրան համապատասխանող կրոնի կերպարանք՝ համապատասխան ֆեոդալական հիերարխիայով» (Լյուդվիգ Ֆոյերբախ, էջ 97)։ Պատմական առաջընթացի աղբյուր հանդիսացող նյութական արտադրության ու նրա հետ սերտորեն կապված դասակարգերի քաղաքական պայքարի հողի վրա առաջացող գաղափարական վերնաշենքերն ունեն անդրադարձ ուժ՝ հասարակական կյանքի ընթացքն արագացնելու կամ դանդաղեցնելու մեջ։ Քրիստոնեությունը, որպես կրոնական և ռեակցիոն գաղափարախոսության ձև, հարմարվելով ֆեոդալական հասարակությանը և սրբագործելով այն՝ դանդաղեցրել է նրա զարգացումը։

Վ. Հարությունյանն անվերապահ հայտարարում է, թե՝ «Ինչպես բոլոր երկրներում, այնպես էլ Հայաստանում, քրիստոնեության մուտքը համընկավ ստրկական կարգերի քայքայման և վաղ ֆեոդալիզմի հիմնավորման հետ» (էջ 4)։ Չենք խոսում ուրիշ երկրների մասին, բայց Հայաստանի մասին Հարությունյանի պնդումը կարոտ է ճշգրտման։ Մեր պատմագրության մեջ մինչև այժմ էլ չկա միասնական կարծիք Հայաստանում ֆեոդալիզմի ձևավորման ժամանակաշրջանի մասին։ Բոլոր դեպքերում մի բան հավաստի է, որ քրիստոնեության մուտքը Հայաստան տեղի է ունենում ֆեոդալիզմի շրջանում։

Հեղինակը սուբյեկտիվ մոտեցում է ցուցաբերում մի այլ հարցի նկատմամբ։ Նա պատմում է, որ Գրիգորի տոհմը Աշտիշատում մեծ կալվածքներ է ունեցել, այդ տոհմին է պատկանել հեթանոսական կրոնի քրմապետի պաշտոնը՝ քրիստոնեության տարածմամբ նրա տոհմը կկորցներ իր արտոնյալ վիճակը, այդ գիտակցել է Գրիգորը, ծավալել եռանդուն գործունեություն՝ քրիստոնեության տարածման համար, որպեսզի չկորցնի իր տոհմական դիրքը, քրմապետի փոխարեն դառնա քրիստոնեական եկեղեցու կաթողիկոս։ «Այստեղից կարելի է եզրակացնել, որ Գրիգորին ոգեշնչել են ո՛չ միայն քրիստոնեական վարդապետության շահերը, այլև, դրա հետ ոչ պակաս, նրա եռանդուն գործունեությունը խրախուսող հանգամանքներից մեկը՝ իր տոհմի բարձր իշխանական դիրքը և տնտեսական ապահով կյանք ստեղծելու ձգտումը» (էջ 10)։ Պատմության կատարյալ սուբյեկտիվիզացիա է սա, պատմական մատերիալիզմի ոգուն անհարիր մի բան։

Ինքը՝ Հարությունյանը, իր գրքույկում պատմում է, թե ըստ մեր պատմիչների, Գրիգորը Կեսարիայում ստանում է քրիստոնեական կրթություն և դառնում քրիստոնյա, իսկ Տրդատ թագավորը հեթանոս էր և իմանալով Գրիգորի քրիստոնյա լինելու մասին, հրամայում է՝ «թողնել քրիստոնեությունը և վերադառնալ հեթանոսական կրոնին» (էջ 8)։ Ուրեմն, չկա մի այնպիսի իրադրություն, որն անմիջական վտանգի տակ դներ հեթանոսությունը և ստիպեր Գրիգորին իր տոհմական իրավունքը պաշտպանելու համար 180 աստիճանով շուռ գալ՝ քրմապետության փոխարեն կաթողիկոսություն ստանալու մտումով։

Մի՞թե Վ. Հարությունյանը, առհասարակ, այն տեսակետն ունի, որ պատմությունն առաջ է շարժվում առանձին անհատի նրա անձնական խորամանկ հաշիվներից ելնող ձգտումներով։ Չենք կարծում։

Այս մոտեցումը արդյունք է թերևս այն բանի, որ հեղինակը՝ ա). ավանդությունն ընդունում է որպես ռեալ ճշմարտություն. բ). Պատմական իրադարձությունը ձգտում է բացատրել Հայաստանում Քրիստոնեություն «հիմնողի» անձնական ցանկություններով ու ձգտումներով։

Հայաստանում քրիստոնեության տարածման, նրա պետական կրոն դառնալու պայմանները պետք է փնտրել՝ ա). հռոմեական կայսրության, հատկապես Փոքր Ասիայի հետ Հայաստանի ունեցած մերձավորության մեջ, որտեղ վաղուց լայնորեն տարածվել էին քրիստոնեական համայնքները։ Շատ հավանական է, որ եթե Հայաստանը գտնվեր Միջին Ասիայում և նույնպիսի հասարակական տնտեսական պայմաններում, քրիստոնեություն չընդուներ. բ). Հայաստանն ապրում էր ֆեոդալիզմի էպոխան, և քրիստոնեությունն այդ հասարակարգն արդարացնելու և ամրապնդելու համար հարմար մի դավանանք էր, այդ է գլխավորը. գ). Հայաստանը գտնվում էր հարևան հզոր պետության ասիմիլյատորական քաղաքականության մշտական սպառնալիքի



տակ և քրիստոնեության ընդունումը մի պատվար էր այդ հորձանքի առաջն առնելու, անկախությունը պաշտպանելու համար։

Առհասարակ քրիստոնեության տարածումը Հայաստանում և այն պետական կրոն դարձնելը կապել միայն Գրիգորի անվան ու նրա ցանկությունների հետ, դա պատմության սուբյեկտիվիզացիա է։ Քրիստոնեությունն, անկախ Գրիգորի և Տրդատի ցանկություններից, տարածված էր Հայաստանում և արքունիքում, իսկ մոլեռանդ հեթանոս և քրիստոնեությունը հալածող Տրդատը հարկադրված էր հաշվի նստել «կատարված փաստի» հետ, դավանել քրիստոնեություն, բայց միաժամանակ այն գաղափարական զենք դարձնել ու նույնպիսի մոլեռանդությամբ պաշտպանել քրիստոնեությունը, ինչպես մի ժամանակ պաշտպանում էր հեթանոսությունը։

Վ. Հարությունյանը սխալվում է նաև քրիստոնեության առաջացման վայրի հարցում։ Նրա ասելով «Քրիստոնեությունն սկիզբ առնելով Իսրայելում (Հրեաստանում), Քրիստոսի, այսպես կոչված, խաչելությունից հետո, տարածվեց դեպի (?) Փոքր Ասիա, Հունաստան, Հռոմ և այլ երկրներ, Փոքր Ասիայում քրիստոնեության կենտրոնը դարձավ Կապադովկիան» (էջ 3)։

Նախ և առաջ Իսրայելն ու Հրեաստանը միևնույն պետությունը չեն եղել և մեր թվարկությունից դեռ շատ առաջ (VIII—VI դդ.) դադարել են գոյություն ունենալուց։ Սրանք եղել են երկու տարբեր պետություններ։ Քրիստոնեությունն Իսրայելում կամ Հրեաստանում սկիզբ առնելու մասին ոչ մի տեղեկություն չկա հին ժամանակաշրջանի պատմիչների՝ Տաքիտոսի, Պլինիուսի, Սվետոնիսի և այլոց մոտ։ Այդ երկրներում քրիստոնեության մասին լռում է նաև Հովսեփ Ֆլավիոսը, չնայած որ նրա ուշադրությունից չի վրիպել այդ երկրների ոչ մի, նույնիսկ աննշան շարժում։

Խոսելով քրիստոնեության «հայրենիքի» մասին՝ Ֆրանսիայի խոշոր գիտնական մարքսիստ Շառլ Էնշլենն իր Կրոնի ծագումը աշխատության մեջ գրում է. «Շատ հավանական է, որ քրիստոնեության հայրենիքը Փոքր Ասիան և Սիրիա-Պաղեստինն են եղել» (էջ 255—256)։ Այն հարցին, թե որտեղից է սկիզբ առել քրիստոնեությունը, ամենահավանական պատասխանը կարելի է գտնել միայն Ֆ. Էնգելսի Վաղ Քրիստոնեության պատմության շուրջը աշխատությունում։ Ֆ. Էնգելսը քրիստոնեության առաջացման կոնկրետ վայրը համարում է Փոքր Ասիան և ոչ թե Իսրայելը կամ Հրեաստանը։

Ավելին, Էնգելսը քննադատում է այն տեսակետը, ըստ որի քրիստոնեությունը պատրաստի ձևով ծագել է հրեությունից. նա գրում է. «Քրիստոնեության մասին առասպելը, ըստ որի քրիստոնեությունը միանգամից և պատրաստի ձևով ծագել է հրեությունից և ելնելով Պաղեստինից, հաղթել է աշխարհը գլխավոր գծերով սահմանված դավանաբանությամբ և բարոյականությամբ, այդ առասպելը Բրունո Բաուէրից հետո արդեն անհնար է դարձել պաշտպանել։ Այն դեռևս կարող է իր գոյությունը քարշ տալ միայն աստվածաբանության ֆակուլտետներում և այն մարդկանց շրջանում, որոնք ուզում են «կրոնը պահպանել ժողովրդի համար, թեկուզ դա արվի նույնիսկ ի վնաս գիտության» (К. Маркс и Ф. Энгельс, соч., т. XVI, ч. II, стр. 415)։

Այսպիսով, այն հարցը, թե որտե՞ղ է ծագել քրիստոնեությունը, չի կարելի կապել ո՛չ Իսրայելի և ոչ էլ Հրեաստանի հետ։ Եթե քրիստոնեությունը ծագել է Փոքր Ասիայում, ապա այն առաջին հերթին պետք է տարածված լիներ արդեն իսկ Փոքր Ասիայում և ոչ թե «դեպի Փոքր Ասիա» շարժվեր, ինչպես նշում է հեղինակը։

Ե՞րբ է առաջ եկել քրիստոնեությունը։ Հեղինակը հայտարարում է, որ այն առաջացել է «Քրիստոսի, այսպես կոչված խաչելությունից հետո»։ Տարակուսանք չի ներկայացնում այն փաստը, որ քրիստոնեական համայնքներ գոյություն են ունեցել ավելի վաղ, քան կծնվեր ու կխաչվեր առասպելական Քրիստոսը։ Մինչքրիստոնեական քրիստոնեության մասին հետաքրքիր տեղեկություններ են մեզ տալիս Ռենդել Գարրիսի Սողոմոնի գովերգը հանրահայտ աշխատությունը, ինչպես նաև ուրիշ շատ նորագույն ուսումնասիրություններ։ Այլ խոսքով ասած՝ առասպելական Քրիստոսն իր «երկրային» կենսագրությամբ քրիստոնեական ուսմունքի հիմնադիրը չի հանդիսանում. այդ նրան են վերագրել ավետարանիչները նրա «կենսագրությունը» հորինելուց հետո։

Քրիստոնեությունը լայն տարածում գտավ նախ և առաջ Սիրիայում, ուր քրիստոնեության խոշոր կենտրոնը դարձավ Անտիոքը և ոչ թե Կապադովկիան, ինչպես նշում է հեղինակը։ Անտիոքը ժամանակի կուլտուրական, քաղաքական կենտրոններից մեկն էր, ուր քրիստոնեական եկեղեցին ճանաչում էր գտել որպես պաշտոնական գործող ինստիտուտ, որտեղ բազմիցս հրավիրվել էին եկեղեցական ժողովներ։

Առարկելի է հեղինակի մի այլ դրույթ ևս. նա գրում է. «Գրիգորը, լինելով շրջահայաց մարդ, հասկացել է, որ քրիստոնեությունը, որպես նոր կրոն չէր կարող հաղթանակել, եթե հեթանոսական կրոնի որոշ տարրերը, այսինքն ժողովրդական սովորությունները չընդուներ իր մեջ։ Այսպիսիք են՝ պաս պահելը, ծննդի, հարսանիքի, թաղման, մեռելոցի արարողություննե-

օգտագործվում են որպես արդյունաբերական աղբյուրներ։ Կարա-կումը աստիճանաբար կորցնում է բոլորի համար անհայտ, մեռյալ անապատի լուսապսակը։ Այն արագորեն դառնում է արդյունաբերության և ծաղկած գյուղատնտեսության օջախ։

Քաջ ծանոթ լինելով ասիական անապատների բնությանը, Ֆերսմանը գտնում էր, որ չկա երջանկություն առանց ջրի. «Օ՜հ, որքան մեծ է բնության մեջ ջրի ուժն ու հզորությունը։ Հանքարաններ և ճանապարհորդներ, հիշեցե՛ք, որ դա մեր երկրի ամենակարևոր միներալն է»։

Ուշադիր ընթերցողը կնկատի, որ մեր երկրի ընդերքի նվաճման գործի զարգացումը վառ կերպով արտացոլում է սովետական տեխնիկական առաջընթացը։ Ուղտերի կարավանից մինչև արդի սովետական օդանավերի հարմարավետ տեխնիկան սքանչելիորեն ի սպաս են դրվում հանքաբանության խոշոր նպատակներին։ Այս ամենը պարզ երևում է Ա. Ե. Ֆերսմանի աշխատության մեջ։ Առանց չափազանցության կարելի է ասել, որ Ֆերսմանի աշխատությունը ո՛չ միայն կարդացվում է հետաքրքրությամբ, այլև հանքաբանության և գեոֆիզիկայի մի հարուստ դասընթաց է այն։ Առանձնապես ընդգծելով միջինասիական ռեսպուբլիկաների ինդուստրացման անհրաժեշտությունը, Ֆերսմանը հանգամանորեն խոսում է քիմիայի զարգացման մասին։

Ֆերսմանի ղեկավարած էքսպեդիցիաները հսկայական գործ են կատարել սովետական քիմիայի զարգացման համար։

Իր խոր ուսումնասիրություններից ակադեմիկ Ֆերսմանը եկել է այն հետևության, որ արդյունաբերության զարգացումը Միջին Ասիայում հսկայական հեռանկարներ ունի։ Նավթ, ածուխ, ածխաջրածնային գազեր՝ ահա Միջին Ասիայի էներգետիկայի հիմքը՝ նրա փոթորկածուփ լեռնային գետերի էներգիայի հետ մեկտեղ։ Օգտակար հանածոների ցուցակում երկրորդ տեղը գըրավում են աղերը, կալիումի, քլորի, բրոմի, յոդի աղերը, ստրոնցիումի և բարիումի սուլֆատները և բազմաթիվ ոչ մետաղային հանածոներ, ինչպես՝ ծծումբը, գրաֆիտը։

Իր գրքում հեղինակը հանգամանորեն շարադրել է բնական բազմաթիվ հարստությունների տեղադրավայրերը և նրանց շահագործման ռեալ հնարավորությունները։ Նա համոզված էր, որ երբեմնի ագրարային — ինդուստրիալ միջինասիական ռեսպուբլիկաները մոտիկ ապագայում կդառնան հսկայական արդյունաբերական երկըրներ։ Ֆերսմանն իրավացի էր։ Նրա հետազոտած սովետական անծայրածիր տերիտորիաներում այսօր սոցիալիստական մեծ կյանքն է բաբախում։

Իմ մանկությունը և պատանեկությունը սեր հարուցեցին իմ հոգում քարի նկատմամբ, վառեցին այն հուրը, որով ես տոչորվում էի իմ ամբողջ կյանքի ընթացքում և որը լցնում էր կյանքը, ստեղծում նպատակի միասնություն, գրում է Ֆերսմանը։

Աշխատելով օրական 13—14 ժամ, իր ամբողջ կյանքի ընթացքում Ալեքսանդր Եվգենևիչ Ֆերսմանը (իր մահկանացուն նա կնքեց 1945 թվականին) իրավամբ կոչվեց «Քարի պոետ»։ Գիտության հանդեպ նրա տածած խոր սերը այնքան արգասաբեր եղավ, որ նրա բեղմնավոր կյանքը մեծապես նպաստեց սովետական հայրենիքի տնտեսական հզորությանը։

Ով մի անգամ սկսի Քարերի հետքերով գրքի ընթերցումը, նա պետք է ավարտի այդ սքանչելի երկը մեծ գոհունակությամբ։

Պետք է ընդգծել, որ թարգմանիչ Վ. Նազարյանը պատվով է կատարել իր չափազանց դըժվարին պարտականությունը։

Զ. ԱՍԱՏՐՅԱՆ



ԽՄԲԱԳՐԱԿԱՆ ԿՈԼԵԳԻԱ

ԱԴՈՅԱՆ Ա. Գ. (գլխավոր խմբագիր), ԱՎԵՏԻՍՅԱՆ Վ. Ա., ԱՂԱՅԱՆ Ծ. Պ., ԳԵՎՈՐԳՅԱՆ Վ. Հ., ԹԵԼՈՒՆՑ Ա. Մ., ԹՈՒՄԱՆՅԱՆ Հ. Ե., ԿԻՐԱԿՈՍՅԱՆ Ա. Մ., ՆԱԼԲԱՆԴՅԱՆ Ս. Ս., ՍԱՐԳՍՅԱՆ Վ. Հ.

Թողարկիչ՝ Ա. ՅԱՎՐՅԱՆ
Սրբագրիչ՝ Ջ. ԱՎԱԳՅԱՆ

Խմբագրության հասցեն՝ Երևան, ՀԿՊ Կենտկոմի շենք, հեռ. 2-02-24

Адрес редакции: Ереван, здание ЦК КП Армении тел. 2-02-24

ՎՖ 05259 Պատվեր 2540 Տիրաժ 9000 Գինը 25 կոպ.

Տպ. 7 մամուլ, մամուլում՝ 68840 նիշ։ Ստորագրված է տպագրության 27/IX 1963 թ.։

Հայկական ՍՍՌ Կուլտուրայի մինիստրության Հրատարակչությունների և պոլիգրաֆարդյունաբերության գլխավոր վարչության № 6 տպարան, Երևան։

# ԳԻՏՈՒԹՅԱՆ ԵՎ ՏԵԽՆԻԿԱՅԻ ՆՈՐՈՒԹՅՈՒՆՆԵՐ

## ՍԱՀԱՐԱՅԻՑ՝ ԵՎՐՈՊԱ

Միջերկրական ծովի ափից 50 կմ հեռավորության վրա հայտնագործել են Խասսի Ռմել գազի հանքավայրը, որի պաշարները համապատասխանում են Ֆրանսիայի 20 տարվա ընթացքում արտահանված քարածխի քանակին։ Սահարայում է գտնվում բնական գազի համաշխարհային պաշարների $^{1}/_{10}$-ը։ Ռեսմի ֆրանսիական գազային ընկերությունները որոշել են Միջերկրական ծովի վրայով Սահարայի գազը ուղարկել հեռավոր ճանապարհորդության՝ Եվրոպա։

Ստորերկրյա անցուղին որոշված է կառուցել Մոստագանեմի և Կարթագենի միջև, որտեղ ծովի լայնությունը հասնում է 200 կմ, իսկ խորությունը՝ ավելի քան 2500 մ.:

Ֆրանսիան, Անգլիան և Ավստրիան պատրաստվում են ընդունելու Սահարայի գազը։ Անգլիայում սկսվել է աշխարհում առաջին նավի շինարարությունը՝ մեծ քանակությամբ խտացված գազ տեղափոխելու համար։ Նրա երկարությունը մոտ 190 մետր է, լայնությունը 25, բարձրությունը 18 մ.: Բեռնատարողությունը մոտ 160 հազ. տոննա է։ Նավի հնոցներն առաջին անգամ պետք է աշխատեն գազով։ Սահարայի այդ մասը գտնվում է Ալժիրի տերիտորիայում և, հետևապես, նրա հարստությունը պետք է պատկանի Ալժիրի ժողովրդին։ Ահա թե ինչու ֆրանսիական շահագրգռված ֆիրմաները երկյուղով են ֆինանսավորում այդ աշխատանքները։

## ՋՈՒՆ ՊԼԱՍՏՄԱՍՍԱՅԻ ՓԱԹԵԹՈՒՄ

Անգլիայում սկսվել է հավի ձվի վաճառքը թափանցիկ պլաստմասսայի փաթեթով։ Այդպիսի ձվերը փոխադրելիս չեն ջարդվում։ Ձվերի թարմության աստիճանը որոշելու համար լույսի տակ նայելու հարկ չկա, որովհետև օդային միջավայրից մեկուսացված են պլաստմասսայի կեղևով։ Եփելու ժամանակ պլաստմասսայի կեղևը տաք ջրում լուծվում է։

## ԷԺԱՆ ԵՎ ԱՄՈՒՐ ՇԵՆՔ

Երկաթբետոնե շինվածքների Կլինի գործարանը կազմակերպել է մինչև 600 տոննա հացահատիկի տարողություն ունեցող շենքերի արտադրություն։ Մի շենքը կառուցվում է ընդամենը 20 օրվա ընթացքում։ Այդպիսի հավաքովի, առանց կարկասի, չտաքացվող շենքերը կարող են օգտագործվել կովանոցների, պահեստների, գարաժների, ծածկերի համար։ Շենքի կառուցվածքը ապահովում է ցածր ինքնարժեք և հնարավորություն է տալիս այն հավաքելու կարճ ժամկետում, ցանկացած կլիմայական պայմաններում։

## ՈՒԼՏՐԱՁԱՅՆԱՅԻՆ ԻՆՔՆԱՀՈՍ ԳՐԻՉ

ԱՄՆ-ում պատրաստվել է ինքնահոս գրիչ, որը գրում է ուլտրաձայնով։ Ինքնահոս գրչում տեղադրված է մանրաչափ ուլտրաձայնային գեներատոր։ Գրչածայրի փոխարեն օգտագործվում է գնդիկ, որը գրելու ժամանակ թղթի վրա հետք է թողնում։ Ուլտրագիրը հնարավոր չէ ջնջել և կարելի է ոչնչացնել միայն թղթի հետ միասին։ Նման գրչասարքերը պիտանի են մետեորոլոգիայի, տեխնիկայի և բժշկագիտության մեջ կիրառվող գրիչների համար։

## ԱԼՅՈՒՄԻՆԵ ԳՆԱՑՔ

Զագրեբում սկսվել է ալյումինե դիզելգնացքների թողարկումը։ Գնացքը կազմված է չորս վագոնից։ Գնացքի ամբողջ երկարությունը 81 մետր է։ 400 ձիաուժանոց երկու դիզելային շարժիչներից մեկը տեղադրված է առաջին վագոնում, իսկ մյուսը՝ վերջին։ Գնացքի քաշը, առանց ուղևորների և բագաժի, 100 տոննա է, առավելագույն արագությունը 120 կմ. ժամ։ Վագոնները բաժանված չեն կուպեների։ Նստարանները կարգավորվող են։ Միակերպությունից և մոնոտոնությունից խուսափելու համար վագոններում նստարանները ներկված են տարբեր գույներով՝ դեղին, կանաչ, երկնագույն, կարմիր և այլն։ Բագաժի համար նախատեսված է առանձին բաժանմունք (Հարավսլավիա)։

ԳԻՆԸ 25 Կ.

ИНДЕКС 77783

# ԳԻՏՈՒԹՅԱՆ ԵՎ ՏԵԽՆԻԿԱՅԻ ՆՈՐՈՒԹՅՈՒՆՆԵՐ

## ԿՈՆՏԱԿՏԱՅԻՆ ԷԼԵԿՏՐԱՔԱՐՇ

*Ստորերկրյա փորվածքներում, ինչպես և հանքահորերի մակերևույթին մարդկանց և բեռներ տեղափոխելու համար Ալեքսանդրովսկի մեքենաշինական գործարանի կոնստրուկտորական բյուրոն նախագծել է հանքի կոնտակտային «20КР—2» էլեկտրաքարշ։ Այն մինչև վերջերս թողարկվողների համեմատությամբ ունի մի շարք առավելություններ։*

*Կոնստրուկտորները գտել են խցիկը տեղադրելու առավել հարմար սխեմա։ Խցիկում տեղավորված է հսկողության և ղեկավարման ողջ ապարատուրան։ Այժմ մեքենավարը շատ ավելի լավ է տեսնում ցանկացած ուղղությամբ երթևեկելիս, քան նախկինում՝ խցիկի այլ տեղադրման պայմաններում, երբ մեքենավարը մեծ դժվարությամբ էր աշխատում հակառակ ուղղությամբ շարժվելիս։ Դրանով իսկ բարձրացել է երթևեկության անվտանգությունը։*

*Նոր կոնստրուկցիայի էլեկտրամագնիսային արգելակները 20—30 տոկոսով բարձրացրել են լոկոմոտիվի, այսպես կոչված՝ արգելակային ունակությունը։*

## ԱԼՄԱՍՏՆԵՐ՝ «ՎԱՅՐ ԸՆԿՆՈՂ ԱՍՏՂԵՐՈՒՄ»

*1872 թ. Հնդկաստանում ընկած երկնաքարի ռենտգենյան լուսահանումը հնարավորություն տվեց ալմաստներ գտնել «երկնաքարերի» մեջ։ Որոշ բյուրեղներ տեսանելի են անզեն աչքով, մյուսները՝ միայն մանրադիտակով։ Ենթադրվում է, որ մետեորիտի կազմի մեջ մտնող գրաֆիտը ալմաստի է վերածվել տիեզերական տարածության մեջ երկու մարմինների բախման պահին։ Դրանցից մեկի միկրոբն է այն մետեորիտը, որ ընկել է Հնդկաստանում։ Ալմաստներ են հայտնաբերվել նաև երեք այլ մետեորիտներում (ԱՄՆ)։*

## ՀՈՂԱԳՈՐԾՈՒԹՅՈՒՆ ԱՌԱՆՑ ՀՈՂԻ

*Այգեգործության և խաղողագործության Բուխարեստի գիտահետազոտական ինստիտուտում ջերմոցային պայմաններում մաքուր ավազից կամ մանրացված գրանիտից կազմված հանքանյութերի միջավայրում բանջարեղեն աճեցնելու հաջող փորձ է կատարվել։ Բույսերը սնվում են այն բույսերի լուծույթներից, որոնք մշտապես մտցվում են արմատային սիստեմի մեջ։ Ընդ որում յուրաքանչյուր քառակուսի մետրից ստանում են 24 կգ վարունգ կամ 3—4 կգ պատիճավոր պղպեղ։ Միաժամանակ պակասում են բույսերի հիվանդությունները, խնայվում է պարարտանյութը, կրճատվում են աշխատանքային ծախսումները (Ռումինիա)։*

## ԴԱՆՈՒԲԻ ՎՐԱՅԻ ՀԻԴՐՈԷԼԵԿՏՐԱԿԱՅԱՆԻ ՆԱԽԱԳԻԾ

*Հարավսլավիայի և Ռումինիայի համատեղ ջանքերով Դանուբի վրա Երկաթե դարբասների մոտ կկառուցվի հիդրոէլեկտըրակայան։*

*Նոր հիդրոէլեկտրակայանը տարեկան կարտադրի 10 միլիարդ կիլովատ ժամ էլեկտրաէներգիա։ Ամբարտակի երկարությունը կկազմի 120 մետր, իսկ բարձրությունը՝ 54։*

*Ամբարտակի կառուցման համար անհրաժեշտ է դուրս հանել 3,6 միլիոն խորանարդ մետր գրունտ և լցնել 2,5 միլիոն խորանարդ մետր բետոն։*

*Ամբարտակի վրայով կանցնի խճուղի, հավանաբար նաև երկաթուղի։ Հիդրոէլեկտրակայանի շինարարությունը կբարելավի նավարկությունը Դանուբի վրա։ Գետի մակարդակը Բելգիայի մոտ կբարձրանա 1 մետրով։ Երկաթե դարբասների շրջանում բոլոր խութերը կծածկվեն ջրով։ Ենթադրվում է, որ այդ հիդրոէլեկտրակայանի ագրեգատների մեծ մասը շարք կմտնի 1970 թ. երկրորդ կեսին։*